# ԳՐԱԳԻՏՈՒԹԻՒՆ

## ՏԵՍԱԿԱՆ ԵՒ ԳՈՐԾՆԱԿԱՆ

(ՆՈՐ ԴՐՈՒԹԻՒՆ)

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

# ՈՃ

ՀԱՆԴԵՐՁ ԲԱՌԱԳԻՏԱԿԱՆ ԵՒ ՄՏԱՄԱՐԶԱԿԱՆ ՎԱՐԺՈՒԹԵԱՄԲՔ

ՀԱՏՈՐ Բ.

ԶԵՒԱՒՈՐ ՈՃ. — ԶԵՒՔ ԲԱՌԻՑ ԵՒ ԻՄԱՍՏԻՑ

Յանձնարարեալ յՈւսումն. Խորհրդոյ Ազգ. Կեդր. Վարչութեան

ՅՕՐԻՆԵԱՑ

ՄԻՀՐԱՆ Պ. ԱՍՔԱՆԱԶԵԱՆ

Ուսուցիչ

ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵԶՈՒԻ ԵՒ ԳՐԱԳԻՏՈՒԹԵԱՆ

« Զգոյշ լեր հաւատալու զի իմաստն է ամէն ինչ եւ բառը սակաւ ինչ։ Ես կ'ըսեմ թէ, աւելի ոճովն է թերեւս քան իմաստով, զի մատեանք կ'ապրին, թէ յոռի գրուած մատեան մի երկ մի է որոյ ստոյգ է մահն։»

ՖԻՒՐԱՆԼՈՒ



Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Գ. ՊԱՂՏԱՏԼԵԱՆ

(ԱՐԱՄԵԱՆ)

188[illegible]

ԱՌ

# ՏԷՐ ՌԷԹԷՈՍ Յ. ՊԷՐՊԷՐԵԱՆ

ԲԱԶՄԵՐԱԽՏ ՈՒՍՈՒՑԻՉ ԻՒՐ

## ՁՕՆ

ԵՐԱԽՏԱԳԷՏ ՍՐՏԻ

ԶՈՐ

ՄԱՏՈՒՑԱՆԷ ՍԱՆ ԻՒՐ

Մ. Պ. Ա.

# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ

ԾԱՂԿԱՔԱՂ ՀԱՏՈՒԱԾՔ ՅԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԳՐԱՑ

# ՎՐԻՊԱԿՔ

| էջ | տող | սխալ | ուղիղ |
|---|---|---|---|
| 21 | 4 | արեւածաղիկ բա- րոյական դառնայ... | արեւածաղիկ բարոյական, դառնայ... |
| 37 | 4 | ... վերայ գրուած | ... վերայ դրուած |
| 38 | 21 | այլ օրէնքը տըր- ուած է, | այլ վճիռը տրուած է, |
| 187 | 11 | նկարագրեալ էին ի դէմս... | նկարեալ էին ի դէմս |
| 197 | 18 | պարածակեալ | պարածածկեալ |
| 204 | 5 | (Paralèlle) | (Parallèle) |
| 236 | 10 | առարկայք եւ էք | (աւելորդ է) |
| 236 | 29 | իւր | (աւելորդ է) |



# ԳՐԱԳԻՏՈՒԹԻՒՆ

## ՏԵՍԱԿԱՆ ԵՒ ԳՈՐԾՆԱԿԱՆ

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

## ՈՃ

## (STYLE)

### ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

### ՋԵՒԱՒՈՐ ՈՃ

**1**. Հ. Ի՞նչ են ոճոյ ձեւեր ըսուածներն.

Պ. Ոճոյ ձեւեր ըսուածները խօսելու կամ գրելու այնպիսի կերպեր են որք ոճոյն վերայ զօրութիւն, փայլ, շնորհ կամ ազնուութիւն կը յաւելուն. թէ բառերն իւրեանց յատուկ նշանակութենէն տարբեր, այլասացիկ մտօք, առնլով և թէ երեւակայութենէ, զգացումէ կամ ճարտարախօսական հնարագիտութենէ ազդեալ՝ դարձուածներ տալով խօսքին. զոր օրինակ,

« Մահը չարիք մի չէ » խօսքը ի՞նչ զօրութիւն չըստանար երբ զօրական մի կ'ըսէ «Մեռնելն մեծ չարիք մի է ուրեմն։»

Ֆենելոն փոխանակ ըսելու «Հովիւք երջանիկ եղան, եւ զուարճութիւն վայելեցին խուեանց խրճիթներուն մէջ» շնորհալից եւ ազնիւ բացատրութեամբ կ՚ըսէ.

«Հովիւք երջանիկ եղան, եւ խուեանց խրճիթները կը ծածկէին հոյլ ի հոյլ այն անխառն զուարճութիւնները որք խոյս կու տան ոսկեձեղուն պալատներէն։»

Պօալօ փոխանակ ըսելու «Մարդ ցնուկ վերջին վայրկեանն կը տանի յոյսեր որք երբեք չեն իրականանար» կորովի ոճով մը կ՚ըսէ.

«Մարդ կ՚երթայ դէպ ի շիրիմ, ընդ փառս ածելով իւր ետեւէն պատրեալ յոյսերուն երկայնաձիգ շղթայն։»

Զ. Հ. Ի՞նչ բանէ յառաջ կու գան այս ձեւերն և միթէ այս օրինակ բացատրութիւնք բնական զրուցուածնե՞ր են.

Պ. Այս ձեւերն յառաջ կու գան նոր և կենդանի օրինակաւ բացատրելու և ոճոյ մէջ զանազանութիւն դնելու պէտքէն։ Բայց մանաւանդ բնութիւնն է որ մեզ ձեւաւոր կերպով խօսիլ կու տայ. այնպէս որ կարեմք ըսել թէ աւելի անբնական է առանց ձեւի խօսիլ քան թէ ձեւաւոր խօսիլն։

Տիւմարսէ (քերական գաղիացի 1676-1756) կըսէ. վաճառանոցի մի մէջ աւելի շատ ձեւեր կը զրուցուին մէկ օրուան մէջ, քան թէ Ակադեմական ժողովոյ բազում նիստերուն մէջ։ Ձեւաւոր կամ այլասացիկ ոճն այնպէս բնական է զի վայրենին իւր թշնամւոյն հետ հաշտուելու համար չպիտի ըսէ «Խաղաղութեամբ ապրինք, թող միաբանութիւնը տիրէ մեր մէջ.» զի խաղաղութիւն եւ միաբանութիւն վերացեալ բառեր են իւր համար. այլ պիտի ըսէ. «Հանգչիմք միեւնոյն ծառին հովանւոյն տակ, ճաշիմք միեւնոյն փիափին վե-

ռայ. մինչեւոյն վտակին մեր ծառան անցունեմ։» Այսպէս մանաւանդ երբ կրքէ մի շարժուած կամ գրգռուած է ոամիկն կը յաճախէ ձեւեր, այլափոխ ասութիւններ, առանց զգալու իսկ թէ ձեւեր կ'ընէ։

3ր. Հ. Եթէ այս ձեւերն այսքան բնական են, հա՞րկ է ուրեմն զանոնք ուսանիլ.

Պ. Թէպէտ և բնութիւնն է ձևաւոր կամ այլասացիկ ոճոյ գլխաւոր աղբիւրն, սակայն և այնպէս ձևերու ծանօթութիւնն օգտակար և կարեւոր իսկ է նոցա համար որք կ'ուզեն լաւ գրել ուսանիլ։ Այսու կարեն ասացուածոց բուն իմաստն ըմբռնել, ոճոյն իմաստին հետ ունեցած՝ առընչութիւնները լաւ իմանալ, հեղինակաց գեղեցկութիւնները քաջ զգալ, և նոյն իսկ արուեստին ու բնութեան նմանելով եւ նոյն ձևերն ճարտար ու վայելչապէս ի կիր արկանելով իւրեանց լեզուին մէջ ճշդութիւն, կենդանութիւն եւ շնորհ մուծանել։



## ՅԱՏՈՒԿ ԵՒ ՁԵՒԱՒՈՐ ԻՄԱՍՏ ԲԱՌԻՑ

Մարդիկ, ինչ լեզուաւ որ խօսին, չեն կարող գտնել այնքան բառ, որքան ունին գաղափար, եւ յաճախ կ'ստիպուին գործածել այս ինչ գաղափարը բացատրելու յատկացեալ բառն, ուրիշ տարբեր գաղափար մի բացատրելու համար. զոր օրինակ,

| | |
| --- | --- |
| Ծաղիկ դաշտաց | Ծաղիկ հասակի մէջ մեռնիլ |
| Պաղ մարմարիոն | Պաղ ընդունելութիւն |
| Հացը կը սնուցանէ զմարմինն | Ընթերցումը կը սնուցանէ զմիտն։ |
| Ծանր քալել | Ծանր լսել . |

Այս երկու սիւնակներուն մէջ, գտնուած շեղագիր բառերը կրկին գործածութիւն մը ունին, բայց տարբեր նշանակութեամբ. դաշտաց ծաղիկ մը, մարմարինի մը պաղն, եւն այնպիսի գաղափարներ կը ներկայացունեն որ մեր զգայարանաց տակ կ'իյնան. կրնանք ծաղիկ մը տեսնել, պաղը զգալ, բայց երկրորդ սիւնակին մէջ նոյն բառերուն ներկայացուած գաղափարներն ոչ կ'զգամք եւ ոչ կը տեսնեմք։

Առաջին սիւնակին մէջ ծաղիկ, պաղ, կը սնուցանէ, ծանր բառերն գործածուած են ՅԱՏՈՒԿ իմաստով այսինքն այն իմաստով որոյ համար հնարուած են. իսկ երկրորդ սիւնակին մէջ ՁԵՒԱՒՈՐ իմաստով այսինքն դոյզն ինչ այլափոխեալ իմաստով։

Բառից կամ խօսից ձեւաւոր գործածութիւնը լեզուն կը հարստացունեն. եւ գրուածքի մը ազնուութիւն, սաստկութիւն եւ շնորհ կուտան։

Ձեւաւոր իմաստով կրնան գործածուիլ գոյականներն, ածականներն, բայերն եւ մակբայներն։

## ՀՐԱՀԱՆԳ 1.

Աշակերտը պարտի հետեւեալ պարբերութեանց մէջ շեղագիր բառերէն որն յատուկ եւ որը ձեւաւոր իմաստով գործածուած լինելը նշանակել,

| | |
|---|---|
| 1. Կերպասին գոյնը | 1. Ճշմարտութեան գոյները |
| 2. Կրից հեղեղը | 2. Կեղրոնի հեղեղը |
| 3. Նեղոսին ակը | 3. Չարութեան ակը |
| 4. Բեռան ծանրութիւնը | 4. Խօսքին ծանրութիւնը |
| 5. Արեգական ջերմութիւնը | 5. Զգացման ջերմութիւնը |
| 6. Հաստատուն առաքինութիւն | 6. Հաստատուն դուռն |
| 7. Ուղիղ գիծ | 7. Ուղիղ միտք |
| 8. Խոր վէրք | 8. Խոր թշուառութիւն |
| 9. Քաղցր բարք | 9. Քաղցր կեանք |
| 10. Անուշ գինի | 10. Անուշ պտուղ |
| 11. Քաղցր յիշատակ | 11. Քաղցր ըմպելիք |

12. Խղճին ձայնը
13. Նուրբ միտք
14. Ցաղքել թշնամույն
15. Վայրագ անասուն
16. Վաճառել տունը
17. Գեղածիծաղ մարգ
18. Համեստ մարդ
19. Հասուն պտուղ
20. Փառասիրութիւնը կը կորուսանէ զմարդն

12. Պետրոսին ձայնը
13. Նուրբ ասուի
14. Ցաղքել ծուլութեան
15. Վայրագ բնաւորութիւն
16. Վաճառել իւր հայրենիքն
17. Գեղածիծաղ դէմք
18. Համեստ ճաշ
19. Հասուն հասակ.
20. Քսակս կորուսի,

## ՀՐԱՀԱՆԳ Յ.

Շեղագիր բառերուն յատուկ կամ ձեւաւոր լինելն որոշել.

1. *Առողջ միտք*, *յառողջ մարմնի*։

2. *Ճշմարտութիւնը կը նմանի երկնից ցօղոյն*, *զայն մաքուր պահելու համար պէտք է մաքուր ամանի մէջ դնել*։

3. *Գարնան մէջ բնութիւնը կը զարթնու*։

4. *Պարապ գլուխներն*, *պարապ հասկերու պէս վեր կը կանգնին*

5. *Իւր քաջութիւնը վառեցաւ*, *աչուըներն կայծակեցան*, *իւր արիւնը եռալ սկսաւ*։

6. *Հուրը կը վառի*, *կը կայծակէ*, *ջուրը կ'եռայ*։

7. *Հողմը կ'ուռեցունէ օդալից փամփուշտն*։

8. *Հպարտութիւնը կ'ուռեցունէ զանմիտն*։

9. *Յիսուս չարչարանաց բաժակին մինչեւ յատակը խմեց*.

10. *Դիոգինէս փիլիսոփան իւր ափովը կը խմէր*։

11. *Արքշիան իւր որդւոց արիւնը կը խմէ*։

12. *Պէտք է չարը արմատախիլ ընել*։

13. *Երբ մէկը խօսի պէտք չէ անոր խօսքը կտրել*։

14. *Պետրոս մաղքոսին ականջը կտրեց*։

15. *Այս օրիորդին գլուխը հանճարով լի է*։

16. *Այս հիւանդանոցը հիւանդներով լի է։*

17. *Թշուառութիւնը կը խամրեցունէ զհոգին։*

18. *Ցուրտը կը խամրեցունէ զծաղիկն։*

19. *Բարիք սերմանողը չարիք չհնձեր, ինչպէս որ ցորեան սերմանողն, տատասկ չհնձեր։*

20. *Ժամանակը կը մաշեցունէ զվրէպն եւ կը փայլեցունէ զճշմարտութիւնն։*

21. *Մարմին մի փայլեցունելու համար, մաշեցունելու է։*

22. *Ջերմութիւնը սառը կը հալեցունէ։*

23. *Աստուծոյ զօրութեան առջեւ լերինք կը հալին։*

24. *Խղճին խայթը սիրտը կը պատռէ։*

25, *Չար տղայք իրենց գրքերը կը պատռեն։*

## ՀՐԱՀԱՆԳ 3.

Սոյն հրահանգին մէջ շեղագիր բառերն յատուկ իմաստով գործածուած են. աշակերտը զանոնք, իւրաքանչիւրն երիցս, ձեւաւոր իմաստով պարտի գործածել.

1. *Ծաղիկ դաշտաց.*
2. *Գետուղ ծառոյ.*
3. *Ճառագայթ արեգական*
4. *Քաղցրութիւն մեղրի*
5. *Դառնութիւն նշոյ*
6. *Հուր վառարանի*
7. *Տգեղութիւն դիմաց*
8. *Փափուկ անկողին*
9. *Խոր քարայր*
10. *Առողջ մարմին*
11. *Սեւ Թանաք*
12. *Տարածել հեղուկ մի*
13. *Անկանիլ փոսի մէջ*
14. *Խորասուզիլ ծովու մէջ*
15. *Բեկանել զաւաթը*
16 *Մշակել դաշտը*
17. *Ցղկել երկաթը*
18. *Սնանիլ պտղովք*
19. *Ցամաքութիւն ջրոյ*
20. *Ցած դուռն*
21. *Բանալ զգրոցը*
22. *Շարժել բազուկը*
23. *Ճանապարհ քաղաքի*
24. *Նիւթել կտաւը*
25. *Բեռն փայտի*
26. *Ծանրաբեռնել պտղովք*
27. *Սուր դանակ*
28. *Նետ զինուորի*

## ՀՐԱՀԱՆԳ 4.

Հետեւեալ պարբերութեանց մէջ շեղագիր բառերը ձեւաւոր իմաստով գործածուած են, աշակերտը պարտի զանոնք յատուկ իմաստով գործածել.

1. *Օգուտ քաղել*
2. *Կենաց ընթացքը*
3. *Լուծը թօթափել*
4. *Ժամանակը կը թռչի*
5. *Աւետարանին լոյսը*
6. *Կիրքերը սանձել*
7. *Ջեփիւռը կը փայփայէ ծաղիկներն*
8. *Ձայնը խեղդել*
9. *Տգիտութեան խաւար*
10. *Կատաղի պատերազմ*
11. *Թանձրութիւն մտաց*
12. *Հին առած մի կ'ըսէ*
13. *Գեղեցկութիւնը թառամեցաւ*
14. *Հայրենիքը վաճառել*
15. *Յաղթել կրից*
16. *Առաջնորդել մտաց*

## ՀՐԱՀԱՆԳ 5.

Աշակերտը պարտի խօսքեր շինել որոց մէջ հետեւեալ բառերն յատուկ եւ ձեւաւոր իմաստով գործածուած լինին:

1 *Գանձ*։ 2 *Կուրութիւն*։ 3. *Փայլիլ*։ 4. *Թագուհի*։ 5. *Թեւ*։ 6. *Ծաղկել*։ 7. *Յենուլ*։ 8. *Նեցուկ*։ 9. *Թանձրանալ*։ 10. *Քուն*։ 11. *Սեւ*։ 12. *Հարուած*։ 13. *Այրել*։ 14. *Աւարել*։ 15. *Լի*։

ՕՐԻՆԱԿ

*Գանձ. — Այս մարդը իւր արտին մէջ* գանձ (յտ.) *մի գտաւ*։ *Աշխատութիւնը* գանձ (ձեւ.) *մի է. կամ, Մօր մի սիրտը գորովանաց* գանձ (ձեւ.) *մի է*։

## ՀՐԱՀԱՆԳ 6.

Ինչպէս բառերը նոյնպէս ալ պարբերութիւնք կարեն յատուկ եւ ձեւաւոր իմաստ ունենալ : Հետեւեալ պարբերութիւնք ձեւաւոր իմաստ մի ունին, աշակերտն անոնց յատուկ իմաստը գտնէ.

1. *Աշխարհիս մէջ միակ անփուշ վարդ՝ բարեկամութիւնն է*։

2. Ծուլութիւնն այնքան յամրաքայլ կ'երթայ, զի քաղցն ընդ հուպ կը հասնի նմա։

3. Պէտք է զատել որոմը ցորենէն։

4. Սրատես աչքի համար խաբէութիւնը թափանցիկ է։

5. Չիք վարդ առանց փշոյ։

6. Հասուն եւ ազնիւ պտուղներն են զոր թռչունք կը կտցեն յառաջ։

7. Ձանձրութիւնն օր մի միօրինակութենէ ծնաւ։

8. Ամենէն բարձր հասկերն ամենէն լեցունները չեն։

9. Մեր ընկերին աչաց մէջի շիւղը կը տեսնեմք, ու մեր աչքի մէջի գերանը չեմք տեսներ։

10. Շիթ առ շիթ վազող ջուրը կրնայ քարը ծակել։

11. Զրպարտութիւնը զէնք մի է որոյ երկու ծայրերն ալ սրուած են. զայն գործածել ուզողը մէկ ծայրն իւր կուրծքին եւ միւսն ալ իւր թշնամւոյն կուրծքին վերայ կը դնէ։

12. Կենաց բաժակը անհամ քաղցրութիւն մի պիտի ունենար, եթէ մերթ ընդ մերթ դառն արտասուաց կաթիլք չիյնային հոն։

13. Անիրաւութեամբ ստացեալ հացը կոպճով կը լնու զբերանն։

14. Լացողներուն քով չերգենք բնաւ։

15. Յաճախ կը տեսնուի որ մորենեաց մէջ վարդ կը բուսնի։

16. Ծաղկայատակ ճանապարհէ ոչ ոք կրնայ փառաց հասնիլ։

17. Չար է այն թռչունն որ իւր բունին մէջ կը ծրտէ։

18. Շռայլ ծախքերը խոհանոցը կը ցրտացունեն։

19. Ծոյլը կուզէ ուտել զնուշն, սակայն չուզեր կուտը կոտրել։

20. Թեթեւսոլիկ մարդու մի եռանդը յարդի բոց մի է։

21. Շատ մարդիկ կը սիրեն պղտոր ջրոյ մէջ ձուկ որսալ։

22. Զարին բարձը լի է փշովք։

23. Մեծ պաշտօնները բարձր ժայռերու կը նմանին, արծիւք եւ սողունք եւեթ կրնան ժամանել անդր։

24. Բուռն մրրկէ յետոյ, դոյզն ալիք մի սարսափ կ'ազդէ։

25. Քաղաքագիտաց թանաքը դիւրաւ կը ջնջուի, եթէ վերան թնդանօթի քիչ մի վառօդ չցանեն։

26. Ճանդան ծառը կ'անուշահոտէ զինքն հարկանող տապարն։

27. Մազ մի որքան ալ նուրբ լինի, դարձեալ ստուեր կը ձգէ։

28. Ճանճի մի թեւին վերայ ընթեռնլի տառերով գրուած է Աստուծոյ անունը։

29. Շահը պատուոյ ճանապարհէն կը դարձնէ զմարդ։

30. Խարոյկներու լուսով միտքերը չեն լուսաւորուիր։

31. Եթէ թողուս որ ուսերուդ վերայ նստի ոք, ընդ հուպ գլխոյդ վերայ ալ պիտի նստի։

32. Մատաղ տունկը դիւրաւ կը շտկուի։

33. Իտալական առած մի կ'ըսէ խաղամոլի մի վերայ խօսելով· բուրդ առնլու եկաւ, եւ խուզեալ ետ դարձաւ։

34. Մորփէոս այս պալատին սեմն ոտք կոխած է։

35. Արդարութիւնը կաղ է կ'ըսեն։

36 Զուարճութիւնք ծաղկասփիւռ դալարեօք ծածկուած ճահճաց կը նմանին։

37. Ամէն անգամ որ ոսկեճամուկ զգեստներով մարդ մի կը տեսնէք, նորա քով ցնցոտիներով ծածկուած մարդ մի ալ կայ։

38. Մոլին եթէ կ՚ուզէ փոխել իւր ընթացքը, պարտի կտրել մանաւանդ իւր նաւին պարանը որ զինքն նաւահանգստին մէջ կը կապէ, քան թէ կենալ զայն քակելու համար։

39. Կենաց խնճոյքը մի թողուր՝ առանց քու ծախքդ վճարելու։

40. Նախատինքն աւազի վերայ եւ բարիքները պղնձի վերայ գրեցէք։

41. Ձանձրոյթը նախամեծար կը համարի պալատը քան թէ հիւղն։

42. Դրամը բարի ծառայ մի եւ չար տէր մի է։

43. Մի թողուք որ խոտեր բուսնին բարեկամութեան ճանապարհին վերայ։

Հ. Ոճոյ ձեւերը քանի՞ տեսակի կը բաժնուին.

Պ. Ոճոյ ձեւերն երկու գլխաւոր տեսակի կը բաժնուին. ՁԵՒՔ ԲԱՌԻՑ (Figures de mots) և ՁԵՒՔ ԻՄԱՍՏԻՑ (Figures de pensées)



# ԳԼՈՒԽ Բ.

## ԶԵՒՔ ԲԱՌԻՑ

1. Հ. Ո՞րք են բառից ձեւերն և ո՞րք իմաստից.

Պ. Բառից ձեւերն այնոքիկ են որք միմիայն բառերէ, նոցա գործածութենէն կամ շարքէն կախումն ունին. այնպէս որ եթէ բառերն կամ նոցա կարգը փոխուի, ձեւն ալ աներեւոյթ կը լինի. զոր օրինակ, երբ ըսեմ «հարիւր նաւ» փոխանակ ըսելու «հարիւր առագաստ» այլ եւս ձեւ չմնար:

Իսկ իմաստից ձեւերն այնոքիկ են որք անկախ են բառերէ և որք կը մնան միշտ եթէ բառերը փոխեմք, միայն թէ իմաստը չփոխուի զոր օրինակ եթէ ըսեմ «Ո՛վ հայր իմ, հակէ իմ վերայ երկնից բարձունքէն» կամ «յերկնից բարձունքէն, ուր դու կը հանգչիս, ով հայր իմ հակէ քու որդւոյդ վերայ» այս երկու պարբերութեանց ալ իմաստը նոյն է թէեւ բառերն փոխուած են:

2. Հ. Բառից ձեւերը քանի՞ տեսակ են.

Պ. Բառից ձեւերն երկու տեսակ են, 1. ՇԱՐԱԴԱՍՈՒԹԵԱՆ ԶԵՒՔ եւ 2. ՇՐՋԱՆՔ (Tropes). այս երկուքէն առաջնոյն մէջ բառերն իւրեանց յատուկ նշանակութիւնը կը պահեն. իսկ երբ իւրեանց նշանա-

*կուլթիւնէն տարբեր միօք առնուին յայնժամ ձեւը չրջան մի է.*

**3<sup>դ</sup>. Հ. Ո՞րք են շարադասութեան ձեւք.**

*Պ. Շարադասութեան ձեւերն են 1) **Զարտուղութիւն** կամ **Ցեղաշրջութիւն** (Inversion). 2) **Զեղչումն** (Ellipse). 3) **Աւելադրութիւն** (Pléonasme). 4) **Բակառութիւն** (Syllepse). 5) **Կրկնութիւն** (Répétition). 6) **Զատութիւն** (Disjonction) և 7) **Յաւելուած** (Apposition)։ Առաջին չորս ձեւերն աւելի քերականական են և քերականութեան մէջ բացատրուած. իսկ վերջին երեքը զուտ ճարտասանական են, զորոց պարտ է խօսել աստէն։*



## 1. ԿՐԿՆՈՒԹԻՒՆ

Կարդացէք հետեւեալ պարբերութիւնները շեղագիր բառերուն ուշադիր լինելով.

*Ո՛վ գեղանախ՜ օրեր, երջանկաւէտ օրեր. օրեր՝ որոց յարգն ըստ արժանւոյն չճանչցայ. օրեր՝ որք կարի փութով սահեցաք, դուք ոչ եւս պիտի դառնաք, եւ ոչ եւս պիտի տեսնեն աչերս զանոնք զորս արդ կը տեսնեն։*

**Ֆենելոն** (Տելեմաք)

*Այս թնդանօթը թող լուծէ վրէժն մարց, որբոց, այրեաց. թող լուծէ վրէժն որդւոց որք ոչ եւս ունին հայրեր, եւ հարց՝ որք ոչ եւս ունին որդիներ. թող լուծէ վրէժն քաղաքակրթութեան. թող լուծէ վրէժը տիեզերական պատուոյն. թող լուծէ վրէժը մարդկային խղճին որ կ'արհամարուի այս ամենաչար պատերազ-*

մաւ յորում բարբարոսութիւնն իմաստակութիւններ կը թոթովէ։ Թող այս Թնդանօթը լինի անողոք, փայլակնացայտ եւ ահընկէց, եւ, երբոր Բրուսիացիք լսելով նորա որոտընդոստ գոռումն, հարցունեն նմա. Ո՞վ ես դու. Թող պատասխանէ, Ես հարուածն եմ շանթի, եւ կը կոչուիմ Շաթոտէօն։

**Վ. Հիւկօ**

Զարկ նախ, զարկ, ըղձիւք, զարկ ի ծէնջ հայցեն բուսակք.

**Հ. Եղ. Հիւրմ** (Բուր. Գ. 16)

Բայց ոչ շունչ առաւօտին մինչդեռ ծագեալ ելանիցէ
Ուրախարար նըւագօք առաւօտեալ հաւուց պարուն,
Ոչ արեւ ի սփռելն ի փափկութեան դարաստանիս,
Ոչ դալարիք, ոչ պըտուղք եւ ոչ ծաղիկքըն ցօղափայլք,
Ոչ բուրումն յետ անձրեւաց, ոչ շնորհաշուք հանդարտ երեկ,
Ոչ գիշեր լըռասէր հըռչակաւոր իւրով թըռչնովն ,
Ոչ ճեմելիք ի լուսնակի կամ ի դողդոջ փայլս աստեղաց,
Զունին ամենեւին ինչ քաղցրութիւն . . . առանց քո ։

**Միլտոն** (Կորուստ դրախտին)

Ըզքեզ անտառք Անգիտեայ, եւ բիւրեղեայք ըզքեզ լացին
Ալիք փոկինեայք, լացին նամէտք ըզքեզ լիճք ։

**Վիրգ. Ենէ. Է.** 767

Ո՛վ միակդ իմոյս պատկեր Աստանակեայ. այսպէս նորա
էին աչկունք, այսպէս շըրթունք, այսպէս ձեռաց իւրոց դաստակք:

**Ի Ենին Գ.** 500

Ամենայն արք զօրութեան ի Խոռ եւ եթ ունէին ուշ ,
Ի մօտոյ եւ ի հեռուստ աստի անտի բնաւ նետք ի նա
Ի նա նիզակք, գեղարդունք, մըկունդք ի նա սըլանային :

**Հ. Ար. Բագ.** (Հ. Դիւց. Է. 570

Ի գիղ զայր ի գիղ սայլիկն ի գիղ
Ի մասեաց յաջ կողմանէն,
Սայլիկն ի գիղ զայր ի գիղ
Ճռնչալով զայր մտանէր յերուսաղէմ ։

**Նարեկ.** Երգ

Խզեցէք, խզեցէք ամբարշտաց դաշինքն .

**Ռասին**

*Բանակ այնպէս մեծ երեւեալ չէր երբէք,*
*Երբէք արեւ չէր ցոլացեալ յայնչափ զէնք,*
*Երբէք այնչափ նետ չէր զերկին մըթագնէր,*
*Երբէք այնչափ վահան չէին կուռ դոփեր։*

**Խ. Արքեպիս. Նար-Պէյ**

1. Հ. Ի՞նչ կը դիտէք վերոգրեալ պարբերութեանց մէջ.

Պ. Կը դիտեմ որ միեւնոյն բառը մի քանի անգամ կրկնուած է։

2ª. Հ. Ի՞նչ կը կոչուի այս ձեւն.

Պ. Այս ձեւը Կրկնութիւն կը կոչուի.

3ª. Հ. Ի՞նչ է ուրեմն կրկնութիւնն.

Պ. Կրկնութիւնը ձեւ մի է որով միեւնոյն բառը կամ բառերը մի քանի անգամ կը կրկնուին, գաղափարաց կամ զգացմանց աւելի սաստկութիւն տալու համար։

## ՀՐԱՀԱՆԳ 1.

Աշակերտը պարտի շեղագիր բառը կրկնութեամբ գործածել, պարբերութեան մէջ յարմար տեղ մի.

1. Անցեալը գրահով զինեալ՝ արեան ուղիներու մէջ կը դեգերի. քայլ մը յառաջ, քայլ մը ետեւ. այս էր հին դարուց յաւիտենական շարժումը։ Ներկայն՝ մամուլով զինեալ՝ յառաջ կը խիզախէ, ի խաղաղութիւն, ի սէր, ի լոյս, ի կատարելութիւն։ 2. Անձնասիրութիւնը կայ միշտ եւ պիտի մնայ այս ինչ կամ այն ինչ ձեւով. բայց ոչ ոք կարող է, առանց որոշ նպատակի, հասնիլ յառաջդիմութեան, որոյ ճանապարհը ընդմիջեալ է, եթէ. ամէն շահէ, անձէ, եւ ազգէ վեր չդասէ ընդհանուր մարդկութեան սրբա-

*ցան չափերն։ 3. Վա՜հ, հազար վահ, այժմ ո՞վ կը վարէ, կը ցանէ, կը հնձէ դոցա տեղ, դաշտերն ամայի մնացած են. Նոցա հողասէր վաստակաւոր մըշակներն ինչպէս կը տեսնաք օտարութեան մէջ մաշուելով՝ կ'սպառի եւ կը մեռնին՝ ընտանեաց, հողին, ջրին, քաղցր որդեկաց, սիրելեաց ու բարեկամաց կարօտով։ 4. Եղբայրներս, մի կշիռ կայ. Թշուառութիւնը, Տգիտութիւնը եւ Բռնութիւնը նորա մի նըժարը ծանրացուցած են. Ի՞նչ նետել պէտք է միւս թաթին մէջ, որ այդ չարեաց նժարը յօդս ցնդի։ Հոն նետէ ուղեղդ թէ հանճար ես. խանդդ թէ քերթող ես. դաշոյնդ թէ զինուոր ես. լեզուդ թէ պերճախօս ես. հոգիդ թէ մայր ես. թուիչդ թէ պատանի ես. գանձդ թէ հարուստ ես. նետէ նրբամտութիւնդ թէ քաղաքագէտ ես. հուրդ թէ յեղափոխական ես, գաղափարդ երբ իմաստասէր ես։ 5. Չիք ինչ ընտիր գեղեցիկ եւ սիրելի քան զառաքինութիւն։ 6. Ոչինչ կ'այլափոխէ զՍ. Գիրքն. նա միշտ ամբողջ, ամբիծ, սուրբ, ճշմարիտ կը մնայ։ 7. Փախիր, անապարէ փախչելու։ 8. Որդեակ իմ, ունկն դիր եւ հետեւէ խրատներուս։*

## 2. ՁԱՏՈՒԹԻՒՆ

Կարդացէք հետեւեալ պարբերութիւնները.

*Եկի, տեսի, յաղթեցի.* «Veni, vidi, vici)։

**Կեսար**

*Գաղիացիք, Անգղիացիք, Լօրէնցիք զօրս մոլեգնութիւնն ի մի վայր գումարած էր, կը յառաջանային, կը կռուէին, կը զարնէին, կը մեռնէին միահաղոյն։*

**Վօլթէր**

Ձուլին կոփին կռին զէնք գան ժողովին ի Հայկաշէն.
Հ. Դիւցազն Ա.

Խլէ արմատով կաղնիս, ջաղխէ առաթուր,
Թռչէ, քանդէ, դիզէ բլուրս ի բլուր։
Խ. Արեւելիս. Նար-Պէյ

Հուժկու արդ թի վարեցէք, ո՛վ դուռն ընտրեալ, առէք ածէք
Ընկղուատորմ, հարէք ցռուկօք հերձէք զերկիրըդ թշնամի
Վիրգ. Են. Ժ. 308

Ջինուորակիցք իմ որպիսի՛ սեաւ փոթորիկ մըրըրկեալ գայ.
Փութայք ելէք խարխալըս, զէն առէք, ածէք սուսեր.
Մերձ աւասիկ կայ թշնամին։...
Ի նմին Թ. 36

Նոյն ըզմանկտին առ հասարակ վառէ եռանդն. ա-ճապարեն,
Դիմեն, թողուն ըզծովեզերս, ծածկեն զալիս նաւք, թաւալէ
Փըրփուր նաւազն յեցեալ ի թի, եւ զկապուտակ ակօսէ ծով։
Ի նմին Դ. 576

1. Հ. Ի՞նչ կը դիտէք վերոգրեալ պարբերութեանց մէջ,

Պ. Կը դիտեմ որ բառից և նախադասութեանց մէջ գտնուած շաղկապները վերցուած են։

2դ. Հ. Ի՞նչ կը կոչուի այս ձեւն.

Պ. Այս ձեւը Զատութիւն կը կոչուի.

3դ. Ի՞նչ է ուրեմն Զատութիւնն.

Պ. Զատութիւնն է շաղկապական մասնիկները զեղչել, խօսքն աւելի արագընթաց եւ աշխոյժ ընելու համար։

## ՀՐԱՀԱՆԳ 1.

## ԾՈՎԻԿԻ ԿՂԶԻՆ

Աշակերտը պարտի հետեւեալ հատուածին մէջ Կրկնութեան, Զատութեան ձեւերն եւ Նմանաձայնութիւններն որոշել։

*Գիշերն անքուն անցուցինք, արշալոյսին նաւ նըստանք կղզին երթալու, աւա՜ղ աչերուս, սեւ ու սպիտակ քարեր ցիր ու ցան՝ խարխարեալ որմունք եւեթ կան։*

*Համբո՛յր քարերուն, համբո՛յր հողերուն. համբո՛յր փլատակաց վրայ բուսած խոտերուն։ Եւ ցողն, մեր երկրի հոգւոյն արցունքն, որ ամեն առաւօտ կ'իջնէր շաղախել կղզեկիս փոշիներն ու քարերուն խիճերէն ծլած թուփերը, լզեցի, կրծեցի, ճաշակեցի, իմ ալ ցողերս թափելով հոն։ «Դեռ յիսուն տարի յառաջ աստ կը բնակէինք ծովեցի Հայքս, եւ նախ թերակըղզի էր, մեզմէ շատերը այս աւազանը մկրտուած են» կ'ասէին իմ նաւիշներս։ Լուսատիպ մը պէտք էր ճիշդ այս պահուս, որ սոյն Աստուածաբնակ աւերակին եւ Աստուածարեալ ծովիկին տխուր ու վսեմ տեսիլն առնէր, պատկեր՝ զոր աւելի կը կենդանացնէր արեւուն ծաղման քնքոյշ ճառագայթն, եւ լեռանց ու ծառոց ստուերները կը կախէր երկնափայլ ծովուն բիւրեղեայ ծոցոյն մէջ, այս պահուս՝ երբ ձկունք երամով կը կայտռէին, երբ թռչունք թիռ թիռ կը թռէին։ Բայց ինչո՞ւ ամէնքն ալ անձայն էին։ Վա՜հ, երբ լռեր էր Ներսէսին քնարը «Զարթիք փառք իմ» երգելէն, զոր կը նուագէր Զուարթն հոգւով «Ընդ Զուարթունս նոր երգս տուեալ Նորոգողին», եւ կը կրկնէին այս թեւաւոր ալախօսիկ տիրացուք՝ «Ալէլուիա՛» այն օրէն ա՛լ լռած էին թռչնոց դայլայլիկք։*

*Ո՞վ կրնար բաժնուիլ ձենէ.ափ ու աւեր Ս. Նշանայ,*

*ո՞վ կրնայ թողուլ զձեզ, քարինք եւ ալիք ԾՈՎՔ — դղեկներ: Արդեօք ո՞րքան ողբոց աղբիւրք դուք կամ էք, տո՛ւր ինձ երկինք այն երջանիկ առիթն կրկնելու անյագ համբոյրս եւ անհատ արցունքս ի ձեզ:*

*Լերինք եւ եթերք ծովակներ, ձեզ՝ որ արձագանք տուած ու առած էք չնորհալի երգոց եւ մեղեդեաց Շնորհալւոյն, ջուրք եւ թռչունք, ձեզ, որ զուարթ խայտանօք աղդած ու շարժած էք երկնային Աշուղին զգացմանց քնարին հոգեղէն թելերը:*

*Աստղե՛ք եւ արեգ, ձեզ, որ պայծառ եւ շքեղ ճառագայթներով ոգեւորած էք պայծառ հոգին Հագենուաղին. «Առաւօտ լուսոյ, արեգակն արդար, առ իս լոյս ծագեա՛» գեղգեղողին:*

**Գար. Վրդ. Սրուանձտեանց.**



### 3. ՅԱՒԵԼՈՒԱԾ

Կարդացէք հետեւեալ պարբերութիւնները շեղագիր խօսքերուն ուշ դնելով.

*Աշնան երեկոյ մը յարեւմտից փչէր մեղմ հովիկն,* շունչ թեթեւ մրափեալ ծովուն, *եւ արեւն հորիզոնին վերայ գոլորշային թափանցիկ ալեաց մէջ կը լողայր:* *Կապուտակ ամպերն*, օդապար ծաղկունք, *պսակներ սփռելով հազար ձեւով հազար գունով ոսկեբուխ գետոյ մը մէջ կը խառնուէին:*

**Լամբէն**

*Եւ* ցօղն, մեր երկրի հագուստն արցունքն, *երբ ամեն առաւօտ կ'իջնէր շաղախել կղզեկիս փուշիններն ու քարերուն խիճերէն ծլած թուփերը, լզեցի, կրծեցի, հաշակեցի, իմ ալ ցօղերս թափելով հոն:*

**Գ. Վ. Սրուանձտեանց**

Գեղեցիկն, ո՜վ չզգայ զայն, երբ տեսնէ մի կոյս նրբահասակ ոսկեհեր եւ աստղաքիթ, մի սպիտակերեան դէմք կայտառ զոր կը շրջանակեն սեաւ գանգուրք եւ կը լուսաւորեն հանճարալիր աչկունք, մի մանկիկ, մօր քնոյն վերայ բուսած ծաղիկ, կամ մի ալեզարդ ծերունի վեհափառ։

Ռ. Ց. Պէրպէրեան

Երեք կարգ մարմարէ աւազաններ ջուրը կ՚ընդունին, եւ իւրեանց արուեստական ծերպերէն վիժելով զայն կը գլորեն ծոցէ ծոց. կիճէ փեղակներ, որք ամեն կողմէ՝ արծաթափառ հեղուկ կը ծորեն։

Մ. Չերազ

Ի նուաղել երկնի հնարից օժանդակէր նմա Եղեմ,
Առաջին մայր եւ դայեակ վըտանգաւոր երկանց մարդոյն։

Հ. Դիւց. Գ.

Վաղ Յունիսին արփին, անգութ մախաւոր,
Գայ խլել ի մէնջ մի առ մի
Հրապոյրքն համայն զոր փոխ երկին ետ երկրի.

Ե. Տէմիրճիպաշեան

Հանգոյն եւ նըռնենի, ծառոց արքայն ծիրանազգեաց,
Բարդ ի բարդ փոխան պըտղոց բերէ ծաղիկ յոստ սաղարթուն։

Թուր. Վր. Ռր. Ա. 184

Արեգակն, աչք եւ հոգի մեծամարմին տիեզերաց,
Եւ դու զնա մե՛ծ ծանիր քան զքեզ, եւ զզօրութիւնսըն բարձրացո՛...

Միլտոն. Կորուստ դրախտին

1. Հ. Ինչ կը դիտէք վերոգրեալ պարբերութեանց մէջ.

Պ. Կը դիտեմք զի գոյականներ իբր վերադիր գործածուած են, և ուրիշ գոյականի մի իբր մեկնութիւն կը ծառայեն։

Յ^դ. Հ. Ի՞նչ կը կոչուի այս ձեւն.

Պ. Այս ձեւն Յաւելուած կը կոչուի։

Յ^դ. Հ. Ի՞նչ է ուրեմն Յաւելուածն.

Պ. Յաւելուածն է գոյականներ իբր վերադիր գործածուած. սովորաբար նիւթէն ծնած կարճ խորհրդածութիւններ են զոր գրողը կը յարէ գլխաւոր գաղափարին իբր անոր մեկնիչ կամ ընդլայնիչ մասն մի։

### ՀՐԱՀԱՆԳ 1.

Աշակերտը պարտի ստորագծել Յաւելուածներն որք կը գտնուին հետեւեալ պարբերութեանց մէջ.

1. Ապերախտութիւնը, այս նողկալի մոլութիւնն, չպարտի երբեք կասեցունել զմեզ ի բարերարելոյ։ 2. Պէտք է որ ուսուցիչն գիտնայ, գիտնայ այնքան աւելի որքան կարելի է. պէտք է որ ինքն, մեղու ժրաջան, հազար ծաղկէ քաղելով կազմէ այն մեղրըն գիտութեան զոր մանուկն առ ձեռն պատրաստ կը գտնէ դասատուին շրթանց վերայ։ 3. Ամենայն ինչ կ'անցնի արագ արագ, եւ Մամուլը միայն, անմահութեան այն դռնակն երկաթի, այս անցումներու յիշատակն ապագայից կը կտակէ։ 4. Նրանի նման որ Թշուառութեան, Տգիտութեան եւ Բռնութեան, մարդկային ազգին այս երրեակ դահիճներուն դէմ, կռուելով կ'ննկնի. Անմահութիւն է նորա լուսապսակը։ 5. Ողջո՜յն ձեզ, բանաստեղծք ամէն աշխարհաց եւ ամէն ժամանակաց, ո՜ գեղեցկին սիրահարք, ո՜

գաղափարականին արուեստաւորք․․ ձեր քնարաց՝ սխրացմամբ ունկնդրած է մարդկութիւն եւ պիտի ունկընդրէ յաւէտ ցորչափ գեղեցիկն պաշտուի երկրի վըրայ, ցորչափ մարդն, արեւածաղիկ բարոյական դառնայ բնազդմամբ առ արեգակն կատարելութեան։ 6. Թշուառը, իւր շուրջը դիզուած խաւարին մէջ, լոյս չունի. որ զինքն առաջնորդէ, եւ թէ մի մենտոր ունի՝ մռայլ անյուսութիւնն է այն. եւ թէ սփոփի մի կայլակ գոյանայ իւր նուաղ աչաց խորը՝ կսկիծը, անյագ սպունգ, զայն իսկոյն կը լափէ։ 7. Նախախնամութիւնը, այն տիեզերական մայրը, որ չնչին թռչնիկին լերկ թեւերուն փետուր կը հայթայթէ զայն պահպանելու համար ցուրտէն, է՞ր գերեզմանին յաւիտենական ցրտութենէն չպահեց զքեզ, ո՛վ պատանի։ 9. Երբ աշխարհ դեռ եւ նոր բացուած ծաղկանց հետ արեւուն առաջին ճառագայթիցը կը ժպտէր, երբ իր կոյս դալարեաց վրայ գառներն եւ ուլիկները արձակ համարձակ կ՚արածէին, եւ երբ մարդուս միտքը իր նախնական պարզութեան մէջ ըլլալով՝ լեցուած չէր տակաւին բիւրաւոր խառնաշփոթ գաղափարներով՝ այն ատեն ծնաւ բանաստեղծութիւնը, մարդուս առաջին եւ ազնիւ դայլայլիկը, անմեղ հովուաց ներդաշնակաւոր սրինգներուն ձայնովը։ 9. Մեք Հայերս Ե՞րբ ունեցել եմք Միրիէլ եպիսկոպոս, խոնարհ պաշտօնեայ աղքատին։ 10. Ի՛նչ հեռաւորութիւն մեր մարմնապաշտ տիկիններէն ցեւրոպացի քոյրերն գթութեան, այն վսեմ աղջիկներն, անձնուիրութեան հրեշտակներն։ 11. Մի ատեն կար ուր Կրօնը անգամ, ազգաց այն գթառատ ծնօղը, Մինովացուլ դարձած էր։

## ՀՐԱՀԱՆԳ Ա.

Աշակերտը պարտի իւրաքանչիւր պարբերութեան իւր պատշաճ Յաւելուածը տալ։ Յաւելուածները խառն դրուած են հրահանգին վերջը շեղագիր բառերով.

1. *Աղօթքն, ..., կը թեթեւցունէ մեր վշտաց բեռն։* 2. *Ամէն գաղափար մարդուն մտաց մէջ կայ, բայց հիւանդութիւնն, աշխատութեան հարկն, առ տնին հոգերն, խորհրդածութեան պակասութիւնը եւ մանաւանդ ծուլութիւնը, ..., կ'արգելուն որ այդ գաղափարք ծլին եւ արդիւնաւորին։* 3. *Երախտագիտութիւնը, ..., չծանրանար երբէք բարի սրտից վերայ։* 4. *Պատմութիւնն, ...., կ'ուսուցանէ մեզ դատել զներկայն եւ կանխատեսել զապագայն։* 5. *Բարեկամ ոք, ..., իմաստնոյն ստոյգ բարիքն է։* 6. *Փըրանկներն, ..., բանջարով, միրգով, արմատներով եւ որսով միայն կ'ապրէին։* 7. *..., ծաղկունք՝ բնութեան գոհարներն են։* 8. *Կը ննջէ Ճեզայիր, ...։* 9. *Բարեբար է զօրութիւն հրոյ, երբ մարդ կը վարէ զնա եւ կը տիրէ նմա։ Այս երկնատուր ուժոյն շնորհիւ կը կերտէ, կ'ստեղծէ։ Բայց ահաւոր է նոյն այդ զօրութիւն, երբ չղթայազերծ, ...., կը հետեւի իւր ազատ մղման։* 10. *Ոչ եւս է Ճեզայիր, ...։* 11. *Արծիւն, ..., յայնժամ կ'ընտանենայ յորժամ կարի փոքրիկ բռնուի։* 12. *Արեգակն, ..., օր մի լոկ չ՞պիտի ծագէ մեզ որ լուսատու չլինի մահկանացուացս կտտանաց։* 13. *Լուսինը, ..., տակաւ առ տակաւ յերկինս կը բարձրանայ։* 14. *Ծիծեռնակն, ..., նոր եկաւ մեր երկիրն։* 15. *Ի՞նչ տագնապ տալ զգայ հոգիս այս աշխարհիս վերայ, հաւատքը, ..., միշտ աչացս առջեւ ունիմ։*

(1. Գիշերուան թագուհին։ 2. Արհաւիրքն ծովուց

եւ սարսափն Քրիստոնէութեան: 3. Մեաց այս ժանգն: 4. Թշուառաց այս սփոփանքն: 5. Գարնան այս աւե-տաբեր սուրհանդակն: 6. Վայրենի ժողովուրդ: 7. Ա-զատ դուստր բնութեան: 8. Հրաշակերտք փափկութեան եւ շնորհաց: 9. Հեշտութիւն բարի սրտից: 10. Ձիր երկնից: 11. Անցելոյն այս հաւատարիմ պատկերն: 12. Երկրիս աղետից հինաւուրց վկայն: 13. Ծովա-հէններու այս բոյնն լայնանիստ: 14. Օդոյ այս բա-զաւորն: 15. Դուստր երկնից:

## ՏՐՋԱՆՔ

Հ. Տրջան ըսուած ձեւերը քանի՞ են.

Պ. Հռետորք շատ տրջաններ կը հաշուեն, բայց գլխաւորները վեց են, այսինքն 1) Փոխաբերութիւն (Métaphore). 2) Այլաբանութիւն (Allégorie). 3) Պիտականունութիւն (Catachrèse). 4) Անուանափոխութիւն (Métonymie). 5) Խեղամտութիւն (Synecdoche ou Synecdoque). 6) Դերանունութիւն (Antonomase): Նոյն իսկ սոցա գլխաւորներն երկուքն են, այսինքն Փոխաբերութիւն որ կը պարունակէ Այլաբանութիւն և Պիտականութիւն, և Անուանափոխութիւն որ կը պարունակէ Խելամտութիւն և Դերանունութիւն:

### I. ՓՈԽԱԲԵՐՈՒԹԻՒՆ

1. Հ. Ի՞նչ է Փոխաբերութիւնն.

Պ. Փոխաբերութիւնը ձեւ մի է յորում բառ մի

իւր յատուկ իմաստէն տարբեր իմաստով կը գոր-ծածուի, նմանութեան մի համար զոր միայն յինքեան կը կատարէ և լեզուին արդիւնքը միայն կը բացատրէ. զոր օրինակ,

Երբ Հոմեր կ'ըսէ «Աքիլլէս կը դիմէ իբրեւ զառիւծ» նմանութիւն մի կ'ընէ. բայց երբ նոյն դիւցազնին համար կ'ըսէ «Այս առիւծը կը դիմէ» փոխաբերու-թեան ձեւ մի կ'ընէ:

2դ. Հ. Փոխաբերութեան առաւելութիւնք ո՞րք են.

Պ. Փոխաբերութիւնը չրջաններուն ամենէն ա-ւելի յաճախ գործածական ձեւն, ամենէն գե-ղեցիկն և ճոխն է. լեզուն նմա կը պարտի իւր մեծագոյն գեղեցկութիւններն. չկայ բան մի զոր չկարենայ բացատրել և այն՝ կենդանի և նկարա-գեղ կերպիւ. ամենէն իմացական և վերացեալ գաղափարները կը մարմնաւորէ, անշունչ առար-կայից կենդանութիւն կուտայ, և մանաւանդ չնորհալից և ազդու կ'ընէ ոճն:

3դ. Հ. Փոխաբերութեան աղբիւրներն որո՞նք են.

Պ. Փոխաբերութեան աղբիւրները բազում են. փոխաբերութիւն կրնամք յօրինել թէ աստուա-ծային ու երկնային իրերէն, թէ տարրերէն, թէ քարերէն, թէ մետաղներէն, թէ տունկերէն, թէ անասուններէն, և թէ մարդոցմէ ու նոցա գործե-րէն. այնպէս որ ինչպէս ամէն բանէ կարեմք նմա-նութիւն առնուլ, նոյնպէս ալ ամէն բանով կարեմք փոխաբերութիւն յօրինել: Ուստի կ'ըսուի. Հրեշ-

տակ անձնուիրութեան, հողմ անօրէնութեան, ցօղ բանից, ծաղիկ մանկութեան, արմատ առաքինութեան, բաժակ կենաց, եւն:

4ᵗ. Հ. Փոխաբերութեան աղբիւրք քանի՞ են.

Պ. Հռետորք հինգ գլխաւոր աղբիւրք կը թուեն փոխաբերութեանց. այսինքն,

Ա. Այս ինչ շնչաւորին յատկացեալ բառն ուրիշ շնչաւորի մի ալ յատկացունել. զոր օրինակ «Ցաշկերա մռնչելով կը բարբառէր» ուր մռնչել՝ որ անասնոց համար կ'ըսուի, մարդոյն համար ըսուած է:

Բ. Շնչաւոր եւ զգայուն իրի մի յատկացեալ բառն անշունչ եւ անզգայ իրի մի յատկացունել. զոր օրինակ, զուարթանալ երկնից, զայրանալ ցաւոց, ուտել սրոյ, ճարակել հրոյ:

Գ. Նիւթական իրի մի յատկացեալ բառն աննիւթական կամ վերացեալ իրի մի յատկացունել. զոր օրինակ, ծաղիկ տիոց, սառնամանիք ծերութեան, բեռն կենաց, թանձրութիւն մտաց, արբեցեալ ի փառաց, սառուցեալ յահէ, հեղեղ կրից:

Դ. Անշունչ իրի մի յատկացեալ բառն շնչաւորի մի յատկացունել. զոր օրինակ, ճրագ քաղաքին, տան կամ ազգատոհմին այսինքն թագաւորը կամ տանը ու տոհմին գլխաւորը:

Ե. Այս ինչ նիւթական իրի յատկացեալ բառն ուրիշ նիւթական իրի մի յատկացունել. հալիղ լերանց կամ բանակաց. խայխային բանակաց:

## ՀՐԱՀԱՆԳ 1.

Աշակերտը պարտի հետեւեալ պարբերութեանց մէջ փոխաբերութեամբ գործածուած բառերն ստորագծել.

1. Ներոն կայսրն անագորոյն ճիւաղ մի էր. այս ա-

ըիւնարբու վազքը խողխողել տուաւ զիւր մայրն։ 2.
Մահը կը յափշտակէ անպատկառ ամէն բան, մի օր
բովանդակ աշխարհ պիտի անհետանէ նորա հարստու-
թիւնը։ 3. Դիւրաւ յերեւան կ'ելնէ ստութիւնն որ
կեղծաւորութեան դիմակին տակ կը ծածկուի։ 4. Ա-
քիլլէս քաջագոյնն էր ի Յոյնս. երբ այս առիւծը կը
դիմէր ի մարտ, համայն Տրովադացիք երկչոտ ոչխար-
ներու պէս ի փախուստ կ'աճապարէին։ 5. Տգիտու-
թիւնը մարդկային ազգին մեծագոյն հիւանդութիւնն
է։ 6. Ծուլութեան հետեւանքներն սոսկալի են. նո-
րա առաջին պտուղն է թշուառութիւն, եւ թշուա-
ռութիւնը կը ծնի բազմաթիւ ոճիրներ։ 7. Առաքի-
նութիւնը որ այնքան քաղցրաբոյր հոտ մի կ'արձակէ
մարդոց յիշողութեան մէջ, չմեռնիր երբեք։ 8. Յեր-
ջանկութիւն երթալու ապահովագոյն ճանապարհն է՝ ա-
ռաքինութիւնն։ 9. Կենաց ճանապարհին կատարածն է
անդունդ մահու։ 10. Գիտութեան ջահը կը փարատէ
տգիտութեան եւ մոլորութեան աղջամուղջն։ 11.
Բնագէտք վերուցին այն քօղն որ կը ծածկէր բնու-
թեան գաղտնիքներն։ 12. Յուշ լիցի քեզ զի երի-
տասարդութիւնը ծաղիկ մի է որ ընդ փթթելն կը
թօռանայ։ 13. Այն գետն՝ որ կ'առնու կը տանի ըզ-
մարդկութիւնն, այնքան արագընթաց է զի հազիւ
ժամանակ կ'ունենանք հոն երեւելու։ 14. Ատտիլա
ինքզինքն աստուածային բարկութեան մի գործիքը կը
համարէր եւ հարուած Աստուծոյ կը կոչէր զիւր անձն։
15. Ոճրագործը իւր խղճին բեռան տակ ճնշուած է։
16. Ընտանիքն հաճոյից յորդաբուխ աղբիւր մի է։
17. Ամէն մարդ իւր խաչը կը կրէ այս աշխարհի մէջ։
18. Լաւ գրուածներ արտադրելու համար, լաւ հե-
ղինակներուն գործերովը սնէք։ 19. Ջանձրոյթն հի-
ւանդութիւն մի է որոյ դարմանն է աշխատութիւնն։

20. Զարը ծարաւի է վրէժխնդրութեան։ 21. Մահը կենաց արձագանգն է։ 22. Խաւարը կը բնակի չարին հոգւոյն մէջ։ 23. Լաւագոյն մատեաններ կարդալու եռանդը՝ աշակերտի մի բարոյական զգացման ջերմաչափն է։ 24. Շողոքորթը Գամէլէոն մի է որ կը փոխէ զիւր գոյնն ըստ առարկային որ զինքը կը շրջապատէ։ 25. Են մարդիկ զորոց մարթի ասել. առիւծ ի խօսս, նապաստակ ի բանս։ 26. Ժանտախտը կը տիրէ, գրեթէ բոլոր տարին, Գանգէսի ճահճաց մէջ։



## ԶԳՈՒՇՈՒԹԻՒՆՔ Ի ՓՈԽԱԲԵՐՈՒԹԵԱՆ

1. Հ. Փոխաբերութեան մէջ ի՞նչ կայ զգուշանալի.

Պ. Փոխաբերութեան մէջ զգուշանալի չորս բան կայ. այսինքն,

Ա. Փոխաբերութիւնք պարտին նիւթին յարմար լինել։ Ամէն փոխաբերութիւն անխտրաբար ամէն նիւթի մէջ չգործածուիր, այլ թէ ոչ ճաշակի դէմ լինելով՝ ծաղրելի կը լինի։ Նաեւս յաճախ եւ առանց կարեւորութեան փոխաբերութիւն գործածելն՝ իւր ոճը սեթեւեթել եւ արուեստակութեան մէջ լինել է. Նանրամտութիւն մի է որ փոխանակ գրուածքը ազնուացունելու կը նուաստացունէ զայն, զի շարագրութեան մի արժէքն իւր գաղափարաց եւ զգացմանց մէջ կը կայանայ եւ ոչ թէ իւր սնոտի եւ աւելորդ զարդուց մէջ։ Գրելու արուեստին ամենամեծ գաղտնիքներէն մին է, պարզ լինել գիտնալ ի դէպ ժամու եւ ի յարմար պարագայի։

Բ. Պէտք չէ անարգ, աղտեղի կամ տգեղ ու խոտան իրերէ առնուած լինի փոխաբերութիւնն. ինչպէս

Որատեայ սա խօսքն «Հեռմես սպիտակ ձիւն թխաւ բարձրադիտակ Ալպեայ լերան վերայ»։ Սոյն փոխաբերութիւնն լաւ չէ, քանզի թուքը զազիր բան մի է մինչդեռ ձիւնը մաքուր է. ուստի պէտք է որ գրողն աշխատի իւր փոխաբերութիւններն ազնիւ իրերէ առնուլ։

Գ. Պէտք չէ փոխաբերութիւնները բռնազբօսիկ, անբնական, խիստ հեռուէն եւ անմերձաւոր առարկաներէ առնուած լինին. ինչպէս բանաստեղծի մի «Դալարիքը» Դէմէտրի վարս կոչելն եւ Ռուսոյի սա տողերն.

«Նորեկ զեփիւռներն իրենց տաք շնչովն հալեցուցին ջուրց կեղեւները» այս խօսքին մէջ երկու իրարու հակառակ իմաստներ կան, կեղեւը չհալիր։

Այսպէս նաեւ Պ. Դուրեան բռնազբօսիկ փոխաբերութիւն մի կ'ընէ երբ կ'ըսէ իւր տաղերէն միոյն մէջ.

Անյուսութիւն, գերեզմանի
Այդ սեւ կաթը շատ ըմպեցինք,
Քեզ արբեցուց այդ ըմպելիք
Եղար երկնից տժգոյն որդի.

Կաթը՝ ոգելից ըմպելիք մի չէ որ արբեցունէ։

Դ. Փոխաբերական ասութեանց մէջ գործածուած բառերը պէտք չէ որ միմեանց անհամաձայն եւ անյարմար իմաստներ յայտնեն. ինչպէս Մալէրպի սա խօսքն «Առ քու շանթդ, Լուդովիկէ, դիմէ առիւծի մի պէս, ապստամբութեան վերջին գլխուն յետին հարուածը տալու համար» որուն մէջ Լուդովիկոս նախ Արամազդայ, ապա առիւծու եւ հուսկ յետոյ Հերակլէսի նմանցուցած կը տեսնուի։ Նոյնպէս Բօքի սա խօսքն Տէրութեան պաշտօնէի մը համար. «Տէրութեան ամենէն ամուր սիւնը մեկնեցաւ առանց մնաս բարեաւ ըսելու ինձ» որովհետեւ «մեկնեցաւ առանց մնաս

բարեաւ ընկերոյ ինձ » խօսքն՝ բնաւ յարաբերութիւն չունի միւս գաղափարին հետ ։

### ՀՐԱՀԱՆԳ 2.

Հետեւեալ խօսքերն առանց փոխաբերութեան բացատրել.

1. Երկինք կը խնդէ յինէն իմ անմեղ կեանքս ։
2. Այրն մոլորեալ թռաւ հոն՝ ուր լոյսը զինքն կը կոչէր ։
3. Իւր աչքերն պտըտցուց ծովուն ընդարձակ տարածութեան վերայ ։
4. Անզգայ Ստոյիկեանը կը թռչի գրկելու համար. զմահն ։
5. Մայր մի բարութեան եւ անձնուիրութեան հրեշտակ մի է ։
6. Յուսալ թէ այս աշխարհիս մէջ կարելի է երջանկութիւն գտնել, աւազի վերայ սերմանել կամ ալեաց վերայ հիմն արկանել է ։
7. Բանաստեղծք ամենուրեք ճշմարիտ քաղաքակրթութեան յառաջապահներն են ։
8. Ի՞նչ պիտի բերէ այն դարն որ պիտի ծնի ։
9. Կեանքը կարճատեւ ուղեւորութիւն մի է ։
10. Աղօթքը հոգւոյն հացն է ։
11. Օրերուս բաժակը, դեռ ծայրալիր, կոտրեցաւ ։

### ՀՐԱՀԱՆԳ 3.

Փոխաբերութեամբ բացատրել.

1. Մայրս զիս շատ կարօտցած է ։
2. Իւր կատաղութիւնը գրգռեցաւ ։
3. Օդը չարագուշակ հանդարտութեան մի մէջ է ։
4. Շատ հարստութիւններ կորսուած են խաղամոլութեան մէջ ։

5. *Վարդը ծաղկանց գեղեցկագոյնն է։*

6. *Մարդու մի հոգին աչքերէն կը ճանչցուի։*

7. *Բարկացած մարդը մեծամեծ վնասներ կը գործէ։*

8. *Աշխատասէր մարդն օգտակար է ընկերութեան. ծոյլը կ'ապրի ի վնաս այլոց։*

9. *Արդար հոգեվարն երջանիկ է։*

## ՀՐԱՀԱՆԳ 4.

Հետեւեալ փոխաբերեալ ասութեանց թերութիւնները ցուցունել.

1. *Ջրհեղեղը բնութեան թրջոցն եղաւ։*

2. *Ձեռներս պիտի լուամ մազերուդ ալեացը մէջ։*

3. *Արօրը դաշտին կեղեւը կը պատռէր։*

4. *Կառավարը սանձուց իշխանութեան տակ նուաճեց զերիվարսն։*

5. *Այս ճարտարախօսն հեղեղ մի է որ կը բորբոքի։*

6. *Կայծակը զմեզ կը պատէ, կայմերը կը փչէին։*

7. *Տիկին, երկինք քու գոյներդ մարգարիտներէ, աստղերէ եւ ծաղիկներէ յօրինեց։*

8. *Թշուառութեան աղբին մէջ կը լողայր։*

9. *Վարդուհի փղոսկրեայ ճակատ մի, շափիւղեայ աչքեր, եփենոսեայ յօնքեր եւ մազեր, վարդ այտեր, բուստէ բերան, մարգարտէ ատամունք եւ կարապի մի պարանոցն ունէր։*

10. *Նուաստութեան կոյանոցը ինկաւ։*

11. *Այս ճառը շրթանցս նաւուն մէջ նստուցի, անցնելու համար ձեր ունկնդրութեանց փոթորկալից ծովէն եւ հասնելու ձեր ականջաց բաղձալի նաւահանգիստն։*

12. *Արժանի է որ այս մարդն իրեն շիրիմ ունենայ բոլոր աշխարհ, երկինքն իբր մատուռ, եւ իբր արցունք բոլոր գետերն ու ծովերն։*

### ՀՐԱՀԱՆԳ Ե.

Նախադասութիւններ շինել յորս հետեւեալ բառերը մի ըստ միոջէ փոխաբերութեամբ պիտի գործածուին ։

1. Ծաղիկ
2. Երազ
3. Թագուհի
4. Գահ
5. Վարագոյր
6. Գանձ
7. Պահապան
8. Քոյր.
9. Աղբիւր
10. Հայելի
11. Արշալոյս
12. Վերջալոյս
13. Ջահ
14. Նշոյլ

## ՊԱՏԿԵՐ

(IMAGE)

*Հ. Ի՞նչ է Պատկերն.*

*Պ. Պատկերը փոխաբերութիւն մի է որ մի կամ մի քանի գոյներով կը նկարէ իրն մեր մտաց առջեւ և կամ կենդանութիւն կուտայ իրին և այսու շնորհալից և գեղեցիկ կ'ընէ ոճն. զոր օրինակ,*

*Սա խօսքն «Ընդունեն զաղքատն», եթէ բացատրել ուզեմք պատկեր յօրինելով կ'ըսեմք «Բաց դուռդ աղքատին». Նոյնպէս քանի՞ն կը կենդանանայ սա խօսքն «Ամեն բան կ'անցնի այս աշխարհի մէջ», երբ ըսեմք «Ժամանակին գետը կ'առնու կը տանի ամեն բան իր արագահոս ընթացից մէջ»։*

### ՀՐԱՀԱՆԳ Ա.

Հետեւեալ բացատրութեանց մէջ պատկերը ջնջել.

1. *Ահաւասիկ բեռնաւորեալ եմ քսան եւ հինգ տարիներով։*

2. *Քանի՜ն արագ կը սահին դասարանին ժամերն։*

3. *Արեւը կը դեղնեցունէ հունձքերը կամ կ'ոսկեզօծէ հասկերն։*

4. *Դարուց ովկէանոսին վերայ՝ ժամանակէն յափշտակուած՝ որ մի անգամ չենք կարող խարիսխ ընկենուլ։*

5. *Ձմեռը պարզեց իւր սպիտակ մեծ գորգն։*

6. *Ողկոյզներն աներեւոյթ կը լինէին աւարառու ճնճղուկներուն սայրասուր կտուցներուն տակ։*

7. *Հողմը կը ննջէ անշարժ ալեաց վերայ։*

8. *Ծովն անհուն դաշտ մի է. ձկունք անդ արծաթէ եւ ոսկիէ թեւեր ունին։*

9. *Կան մարդիկ որ իւրեանց ամբողջ կեանքը մէջ թշուառութեան տակ կորաքամակ կը քալեն։*

10. *Աշխատասէր մարդոյն դունէն կը նայի քաղցն եւ չհամարձակիր ներս մտնել։*

## ՀՐԱՀԱՆԳ Զ.

Աւելի պատկերաւոր կամ կենդանի ոճով բացատրել.

1. *Հողմը կը շարժէր ուռւոյն տերեւները։*
*Հողմը կը շարժէր իւր շնչովն հեռարձակ ուռին։*

2. *Տէրն ստեղծեց զաստեղս։*

3. *Օրը կ'սկսի։*

4. *Չիք ինչ առաւել գեղեցիկ քան առաքինի երիտասարդութիւնն։*

5. *Ճշմարտութիւնը կը լուսաւորէ մեր միտքն։*

6. *Կը սիրեմ թիթեռնիկը տերեւի մի վերայ։*

7. *Հայհոյիչը սատանայէն ներշնչուած է։*

8. *Օրը կը վերջանայ։*

9. *Գիշերը կ'սկսի։*

10. *Միշտ անմեղ մնացէք։*

## 2. ԱՅԼԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Կարդացէք հետեւեալներն.

**1**

*Կինը ծաղիկ մի է որ շուքի մէջ միայն անուշ կը բուրէ։*

**Լամընէ**

**2**

*Կեանքը տխուր ածու մ'է որ կը զուարթանայ երբեմն նարմենազան եւ գեղապաճոյճ ծաղկանց երամով. երբ հանդիպիս անոնց՝ վայելէ զանոնք առանց յիշելու թէ պիտի թարշամին ձեռացդ մէջ, զի կատարեալ երջանկութեան րոպէ մի յաւիտենականութիւն կ'արժէ։*

**Տն. Ս. Տիւսաբ. Մայստ**

**3**

*Կայ յերկինս աստուածային զօրութիւն մի, անմեկին ընկեր Կրօնի եւ Առաքինութեան։ Այդ զօրութիւնը կ'օգնէ մեզ տանելու համար կենաց, զոյգ ընդ մեզ կը նաւէ առ ի ցոյց տալ մեզ նաւահանգիստն ի մըրրկի. հաւասարապէս քաղցրահամբոյր է թէ՛ անուանի ուղեւորաց, թէ՛ անծանօթ նաւորդաց։ Թէպէտ իւր աչերը ծածկուած են պատանաւ, սակայն իւր հայեցուածքը կը թափանցեն յապագայն։ Մերթ կը բռնէ նա ի ձեռին ծաղիկներ նորափթիթ, մերթ բաժակ մի լի դիւթիչ ըմպելեաւ։ Նորա ձայնին հրապուրանաց՝ չիք ինչ բնաւ համեմատ, նորա ժպտին քաղցրութեան՝ չիք ինչ բնաւ հանգունակ. մինչ որքան յառաջանայ դէպ ի շիրիմ, նա այնքան առաւել ջինջ ու շողշողուն կ'երեւի սփոփեալ մահկանացուաց։ Հաւատք եւ Գթութիւն ՔՈՅՐ ԻՄ կը կոչեն զայն, եւ անուն նորա է ՅՈՅՍ։*

**Շաթոպրիան**

**4**

Արօրի մի խոփն ընդ երկար անգործ մնալով կը ժանգոտի։ Մի օր տեսնելով որ իւր ընկերն, համակ փայլուն, կը վերադառնայր աշխատութենէ, ըսաւ նըմա, «Մի եւ նոյն նիւթէ եւ մի եւ նոյն բազկէ եմք շինուած, այլ է՞ր սեւցած եմ ես, մինչ դու փայլուն ես եւ ողորկ. ո՞ւստի է քեզ այս փայլն, եղբայր իմ։ — Յաշխատութենէ։»

**5**

Մի՛ լինիր ուրագի պէս, միշտ դէպ ի քեզ դէպ ի քեզ,
Այլ եղիր սղոցի պէս, մէկ դէպ ի քեզ մէկ դէպ ի մեզ։

**Բազմավէպ**

**1**. Հ. Վերոգրեալ օրինակաց մէջ ի՞նչ կը դիտէք.

Պ. Կը դիտեմ որ բան մի ըսուած է, ուրիշ բան մի հասկցունելու համար։

**2**դ. Հ. Ի՞նչ կը կոչուի այս ձեւն

Պ. Այս ձեւն Այլաբանութիւն կը կոչուի։

**3**դ. Հ. Ի՞նչ է ուրեմն Այլաբանութիւնն.

Պ. Այլաբանութիւնն է երկարաձգեալ փոխաբերութիւն մի, և կը կայանայ այլասացիկ բացատրութեանց շարքի մի տակ իմաստից ուրիշ շարք մի ծածկելուն մէջ։

**4**դ. Հ. Այլաբանութիւն մի ի՞նչ յատկութիւններ պարտի ունենալ.

Պ. Այլաբանութիւն մի պարտի երեք գլխաւոր յատկութիւն ունենալ. 1) Պայծառութիւն, 2) Ճշդութիւն, և 3) Միաձեւութիւն։։

1. Այլաբանութիւնը պէտք է որ պայծառ լինի. այսինքն, յատուկ իմաստին մէջէն հեշտիւ նշմարուի ձեւաւոր իմաստն։ Այս սկզբունքը բացատրուած է հետեւեալ տողին մէջ որ միանգամայն օրինակ մի է այլաբանութեան։

« Այլաբանութիւնը թափանցիկ պալատի մի մէջ կը բնակի։ »

Լըմիէր

2. Այլաբանութիւնը պէտք է որ ճիշդ լինի. այսինքն, այլաբանութեան իւրաքանչիւր փոխաբերութիւնն համապատասխանէ այն գաղափարին զոր ներկայացունել կ'ուզեմք նոյն այլաբանութեամբ։ Այլաբանութեան մի ճիշդ լինելն հասկնալու համար, պէտք է յատուկ իմաստը բառ առ բառ ձեւաւոր իմաստի յեղուլ եւ դիտել թէ իւրաքանչիւր պատկերը կը համապատասխանէ՞ ծածկեալ գաղափարին. զոր օրինակ,

« Գարնան մէջ եմ կուզեմ հունձքը տեսնել »

այլաբանութիւնը եթէ յեղունք իւր ձեւաւոր իմաստին, կրնանք ըսել « Երիտասարդ եմ կուզեմ ծերանալ » ուստի նոյն այլաբանութիւնը ճիշդ է։

3. Այլաբանութիւնը պէտք է որ միաձեւ լինի. այսինքն, խօսքին բոլոր ընթացքին մէջ այլաբանութեան այլ եւ այլ մասերը միմեանց յարմար եւ յանկագոյն լինին եւ իրերաց հակառակ պատկերներ չպարունակեն. զոր օրինակ,

« Ժամանակին սայրասուր մանգաղին տակ սերունդք կ'իյնան եւ պետութիւնք կը կործանին։ »

Մանգաղին տակ կարէ բան մի իյնալ այլ ոչ կործանիլ։

Նաեւս պէտք է զգուշանալ զի խօսքն այլաբանութեամբ սկսելով՝ յատուկ բացատրութեան մէջ չ'իյնանք. զոր օրինակ. երբ ըսեմք

«*Ժամանակին թեւոց վերայ Տխրութիւնը կ'անցնի*» յատուկ բացատրութեան մէջ ինկած կը լինիմք, պէտք է ըսել,

«*Ժամանակին թեւոց վերայ Տխրութիւնը կը թռչի*»

## ՀՐԱՀԱՆԳ 1.

Այլաբանութիւնը ջնջել, փոխաբերութիւնները յատուկ բացատրութեան վերածելով.

1. *Կրօնքն orrեց զհաւատացեալն կենաց nrnrանին մէջ. իւր անուշ erգerն եւ մայրական ձեռնը պիտի fնացունեն զայն՝ նաեւ մահուան nrnrանին մէջ։*

2. *Ա՜հ, լաց դժբախտ աղջիկ, երիտասարդութիւնըդ պիsի թառամի, խիստ կանուխ ննձուելով իւր ծաղիկն։*

3. *Մարդիկ երբեք չեն fաղած երջանկութեան պղsուղն՝ անիրաւութեան ծառեն։*

4. *Խաղաղութեան հրեշտակն, իջնելով արդար օրհասականին քով, կը հպի իւր ոսկի մականաւն նորա խոնջ ակնողեացն, եւ զանոնք կը փակէ հեշտիւ ի լոյս։*

5. *Ողորմութիւնն հարստութեանց աղն է. առանց այս յառաջապահ դեղին կ'ապականին նոքա։*

6. *Անկեալ ժողովրդոց մէջ, դաշsն ազատ թողուած է վագerց եւ օձից։*

7. *Կեանքը ծով մի է կասաղի եւ աղksանջ ուր մեք անդադար խաղալիկ կը լինիմք ալեաց։*

8. *Ազօթքը բոց մի է որ կը փայլի երկրի վերայ եւ կը բarձrանայ դէպուղիղ յերկինս։*

9. *Անձնասիրութիւնը փfոցուռոյց օդազունղ մի է ուսկից մrrիկ դուրս կ'ելնէ, երբ վերան փոքրիկ խայթուած մի ընենք։*

## ՀՐԱՀԱՆԳ Զ.

Այլաբանութիւնը միաձեւ ընել, յատուկ բացատրութեանց տեղ արդէն գործածուած փոխաբերութեանց յարմար փոխաբերութիւններ գտնելով.

1. *Աղէտք ժայռ մի են կենաց ուղւոյն վերայ գըր-ուած. ոչ ոք կարէ նոցա «յաղթել». բայց Աստուած կշռած է նոցա «թիւը» այնպէս որ չկասին նոքա որք «կ'ապրին» ի միասին:*

2. *Իւրաքանչիւր մարդ, իւր սրտին խորն, ատեան մի ունի ուր կ'սկսի ինքզինքը դատել սպասելով որ «Անհունը» «Յաւիտենական Արեգակը» վճիռը հաստատէ:*

3. *Ոչինչ կարէ կասեցունել զժամանակն որ ընդ խաչ կը տանի իւր ետեւէն բոլոր ինչ որ «մշտնջենաւոր» լինել կը թուի:*

4. *Յուշ լիցի քեզ զի քո երիտասարդութիւնը ծաղիկ մի է որ «կը վերջանայ» գրեթէ «ընդ սկսանելն»:*

5. *Շողշողուն ծաղիկ իմ ցօղնոյս վերայ եւ պատիւ պարտիզին, տակաւին «երիտասարդ» եմ եւ կ'ուզեմ հանիլ «ծերութեան»*

6. *Զանձրոյթն հիւանդութիւն մի է զոր աշխատութիւնը «կը փարատէ»:*

7. *Վանքը «ովասիս» մի է ուր կ'ապաստանի ուխտաւորն խոնջ ի մրրկաց աշխարհիս, որ լի է նաւաբեկութեամբք:*

8. *Առաքինութեան ճանապարհին փուշերն՝ ծաղիկ կը թուին նմա որ «կը նաւէ» «նաւուղիղ» ունենալով զկրօնն:*

9. *Գեղեցկութիւնը կենաց գարնան ծաղիկն է. իւր փայլը կը շլացունէ, իւր բոյրը կ'արբեցունէ. այլ «կ'անցնի» նա ի «հասանել» կրից եւ «անհետ» կը լինի ժամանակին «ազդեցութեան» տակ:*

## ՀՐԱՀԱՆԳ Յ.

Փոխաբերութիւնը շարունակել եւ հետեւաբար այլաբանութիւն յօրինել.

1. *Երիտասարդութիւնը ծաղիկ մի է որ . . .*

*— Երիտասարդութիւնը ծաղիկ մի է « որ ընդ-փթթելն կը զօսանայ: »*

2. *Կեանքն արագ ուղեւորութիւն մի է որ . . .*
3. *Երջանկութիւնը ստուեր մի է որ . . . .*
4. *Յիսուս բարի հովիւ մի է որ. . .*
5. *Համբաւը փափուկ ծաղիկ մի է զոր. . .*
6. *Սնափառ մարդը կոյր մի է որ . . .*
7. *Երջանկութիւնը գնդակ մի է որ . . .*

**5.**[դ] *Հ. Այլաբանական շարադրութիւն* (Composition allégorique ) *որո՞ւ կ'ըսուի:*

*Պ. Եթէ այլաբանութիւնն ամբողջ հատուածի մի բոլոր ընթացքին մէջ երկարաձգւի, այն ատեն այլ եւս ձեւ մի չէ այն, այլ այլաբանական շարադրութիւն մի. զոր օրինակ, Նախընթաց օրինակներուն մէջ Յոյսն եւ հետեւեալն:*

### ԱՐԱԳԸՆԹԱՑՈՒԹԻՒՆ ԿԵՆԱՑ

*Մարդկային կեանքը կը նմանի ճանապարհի մի որոյ սպառուածն ահագին անդունդ մի կայ: Մեր առաջին քայլափոխին մեզ կ'իմացունեն զայն, այլ օրէնքը տրուած է, անդուլ յառաջ խաղալ հարկ է: Անդրէն յետս դառնալ կ'ուզեմք. «յառա՛ջ, յառա՛ջ.»: Անյաղթելի ծանրութիւն մի եւ անդիմադրելի զօրութիւն մի կ'առնուն կը տանին զմեզ. պէտք է միշտ յառաջանալ դէպ յանդունդն յայն: Բիւր խոչընդոտք, բիւր*

տագնապք կը պարտասեն զմեզ եւ կը տագնապեն յուղւոջ, Իցի՜ւ թէ հնար լինէր ճողոպրիլ այս աշխար-կու անդունդէն։ Ո՛չ, ո՛չ, պէտք է յառաջանալ, պէտք է ընթանալ. այսպէս սրավար են ամք։

Սակայն մերթ ընդ մերթ հեզասահ վտակաց եւ դիւրաթռաւ ու արագախամուր ծաղկանց պատահե-լով՝ կը մխիթարուիմք նոքօք. կ՚ուզեմք զկայ առնուլ. յառա՜ջ, յառա՜ջ։ Եւ սակայն կը տեսնեմք զի մեր ե-տեւ կը կործանին բոլոր այն բաներն ընդ որ անցանք. անկո՜ւմն ահեղ, կործանո՜ւմն անձողոպրելի։ Կը մխի-թարուինք զի կը տանիմք ընդ մեզ ծաղիկներ, զորս ընդ անցանելն եմք քաղած եւ զորոց թառամելն կը տեսնեմք մեր ձեռաց մէջ յայգուէ ցերեկոյ, եւ միրգեր զորս կ՚ըսպառեմք ճաշակմամբ։ Ցնորք, պատրանք. միշտ ընդ քարշ ածեալ կը մօտենամք այն վհին։

Արդէն ամէն ինչ կ՚սկսի եղծանիլ. պարտէզք նուազ ծաղկեալ են, ծաղկունք նուազ փայլուն, գոյնք նո-ցա նուազ կենդանի, մարգագետինք նուազ գեղածի-ծաղ, ջուրք նուազ ականակիտ. ամենայն ինչ կը նը-սեմանայ, ամենայն ինչ կը ջնջի կը խաթարի. մահուն ստուերը կը ներկայանայ. կ՚զգամք թէ մօտեցած եմք այն մահահամբոյր վհին։ Այլ անհրաժեշտ է գնալ ե-զերքն. քայլ մի եւս։ Քստմունք կ՚ընթանան մեր ան-դամոց մէջ, կը ցնորին միտք, կը մոլորին աչք, պէտք է յառաջանալ։ Կուզեմք դարձ ընդ կրունկս առնել, չիք միջոց. ամենայն ինչ կը կործանի, ամենայն ինչ անհետ կը լինի, ամենայն ինչ խոյս տալով ի բաց կը մեկնի։

Պոսիւէ

**6դ**. Հ. Ուրիշ ի՞նչ տեսակ գրուածներ այս սե-ռին կը վերաբերին.

Պ. Այս սեռին կը վերաբերին նաեւ Առասպելք

(Fable) և Առակք (Parabole), բարոյական էակնե-րու անձնաւորութիւնն, և նոյն իսկ խորհրդա-նշանական պատկերք և մեհենական պատկերա-տիպ ճառք այլաբանութիւնք են աչքի խօսող.

## ՀՐԱՀԱՆԳ 4.

Աշակերտը պարտի հետեւեալ առասպելաց բարոյականները գտնել

**1**. *Աշխատութենէ վերադարձող եզի մի եղջիւրին վրայ մրջիւն մի նստած էր. «Ո՞ւստի գաս, ըսաւ նմա, ուրիշ մրջիւն մի, եւ ինչ կ'ընես այդ բարձր տեղն։» — Է՛հ, ուստի՞ կ'ուգամ, չե՞ս գիտեր բարեկամ, արտը վարելէ կու գանք, պատասխանեց եղջերանստիկ մրջիւնը։*

**2**. *Հաւ մի ոսկի ձու կ'ածէր իւր տիրոջը։ Տէրն օր մի ինքնիրեն ըսաւ «Թերեւս փորին մէջ գանձ մի կայ» ուստի մորթեց հաւն. բայց ո՜վ վշտացս, ոչինչ գտաւ անդ։*

**3**. *Խոշոր հնդկահաւ մի կը հարցունէր օր մի Անծե-ղին. — Ի՞նչ կըսէին անցեալ օր գիւղին մէջ զինէն։ — Անմիտ մի է որ իրեն համար փետուրէն զատ բան մի չունի, կ'ըսէին, պատասխանեց Անծեղն։*

**4**. *Օր մի Ուռին ըսաւ Մորենւոյն. ինչո՞ւ անցորդնե-րուն կը կառչիս, ի՞նչ օգուտ կը քաղես այտի, խեղճ անմիտ. — Ոչինչ պատասխանեց նմա մորենին, միայն պատառել կուզեմ,*

**5**. *Հրանունկը օր մի Շահոքրամին հետ միեւնոյն փնջի մէջ կապուած էր. հետեւեալ օրն հրանունկը՝ առանձին՝ շահոքրամին հոտը կը բուրէր։*

**6**. *Օր մի Մուկը Կրայի մի պատահեցաւ ու ըսաւ նմա*

«Քու խցիկդ որ տխուր բանտի մի կը նմանի, յաճախ անիծել կու տայ քեզ զընութիւնն. տես աստի իմ հոյակապ պալատն, ես հոն կը բնակիմ թագաւորին հետ». Յայնժամ Կրայն պատասխանեց «Ես գոհ եմ իմ խըրճիթէն, զի իմս է այն»:

**7**. Ժամացոյց մի օր մի ըսաւ Հողմացուցին. «Ինչ թեթեւամիտ մարդ ես, դոյզն հողմէ մի կը շարժիս».

—Քե՞զ ինկաւ զիս յանդիմանել, եղբայր Ժամացոյց, պատասխանեց Հողմացոյցն. իմ միակ գործս է ցուցնել թէ ուստի՞ կը փչէ հողմն.

— Գործել առա՞նց գիտնալու.

— Դու եւս այդ վիճակին մէջ ես.

— Ի՞նչպէս

— Ցուցունել ժամն առանց զայն գիտնալու:

**8**. Սիրամարգ մի իւր բազմաճամուկ ու երփնագեղ տտունը պարզելով՝ հայեցուածներն յինքն կը ձգէր. կը զարմանային նորա սիգաճեմ քալուածքին եւ ցանկալի գեղեցկութեանը վերայ: Չորս քայլ անդին սոխակ մի սկսաւ երգել. իսկոյն սիրամարգն միայնակ մնաց:

**9**. Աղջիկս, ուղիղ քալէ, ըսաւ Խեցգետինն, ետ ետ մի երթար, լաւ չէ այդ.

— Մայրիկ, չեմ ուզեր քեզի դէմ խօսիլ, սակայն կուզեմ քեզ հետեւիլ, հաճեցէք նախ դուք այնպէս քալել:

**10**. Օր մի յոռի քնար մի իյնալով կը ջախջախի. յետոյ կը ժողվեն նորա բեկորները, եւ զանոնք սոսընձով կը փակցունեն. յոռի քնարն ընտիր քնար մի կը լինի:

## ՀՐԱՀԱՆԳ Ե.

### Ա.

Աշակերտը պարտի ըսել թէ ի՞նչ բանի խորհրդանշան է ·

1. *Վարդը*
2. *Շուշանը*
3. *Մանիշակը*
4. *Ձիթենին*
5. *Դափնին*
6. *Խաշխաշը*
7. *Կանաչ տերեւը*
8. *Կաղնին*
9. *Նոճին*
10. *Բաղեղը*
11. *Ծաղկունք*
12. *Եղէգնը*
13. *Անթառամն*
14. *Ցորենոյ հասկը*
15. *Օշինդրը*
16. *Նուռը*
17. *Փշենին*
18. *Բալասանը*
19. *Գօս տերեւը*
20. *Արմաւենին*
21. *Մրտենին*
22. *Կակաչը*

### Բ.

Ի՞նչ բանի խորհրդանշան է

1. *Մեղուն*
2. *Գառնուկը*
3. *Արծիւը*
4. *Էշը*
5. *Եղջերուն*
6. *Բուն*
7. *Առիւծը*
8. *Վագրը*
9. *Կատուն*
10. *Աղաւնին*
11. *Սփինքսը*
12. *Կրծող որդը*
13. *Աղուէսը*
14. *Օձը*
15. *Նապաստակը*
16. *Ուղտը*
17. *Թութակը*
18. *Տատրակը*
19. *Հաւալուսնը*
20. *Կապիկը*
21. *Կրայն*
22. *Իժը*

## Գ.

Գտնել այն անասունն որ խորհրդանշան է

1. *Սնափառութեան*
2. *Ծուլութեան կամ դանդաղութեան*
3. *Անհաստատութեան*
4. *Փութաջանութեան*
5. *Նախատեսութեան*
6. *Ապերախտութեան*
7. *Հաւատարմութեան*
8. *Չարախօսութեան*
9. *Խորամանկութեան*
10. *Արթնութեան*
11. *Յամառութեան*
12. *Հանճարոյ*
13. *Կուրութեան*

## Դ.

Ի՞նչ բանի խորհրդանշան է

1. *Սպիտակը*
2. *Կապոյտը*
3. *Դեղինը*
4. *Սեւը*
5. *Մանուշակագոյնը*
6. *Ծիրանին*
7. *Կարմիրը*
8. *Կանանչը*

## Ե.

Ի՞նչ բանի խորհրդանշան է

1. *Կշիռը եւ սուրը*
2. *Մանգաղը*
3. *Եղջիւրն հասկալից*
4. *Անուրը*
5. *Քնարը*
6. *Խարիսխը*
7. *Խաչը*
8. *Ծաղկեայ պսակը*
9. *Տաւիղը*
10. *Աճիւնը*
11. *Հողմացոյցը*
12. *Դիմակը*
13. *Ոսկին*
14. *Բոցավառ սիրտը*

## Զ.

Ի՞նչ բանի խորհրդանշան է

1. *Գետի մի ընթացքը*
2. *Ծիածանը*
3. *Հաւն իւր վառեակները թեւոցը տակ առած*
4. *Մատն իշրթունս*
5. *Երկու զիրար սեղմած ձեռներ*
6. *Փշեայ պսակը*
7. *Աստղեայ պսակը*
8. *Ծխուն բուրվառը*

## ՀՐԱՀԱՆԳ Ե.

Բան առ բան ձեւաւոր իմաստի վերածել.

### 1

ԽՈՒՆԿՆ. 1) *Հրաբորբոք բուրվառէն կը բարձրանայ ծուխ մի գեղաթոյր եւ քաղցրաբոյր, 2) որ կը զուարթացունէ զհոգին, 3) եւ որ կը ծառանայ մեծաշուք եւ հեզիկընթաց դէպ ի կամարն սրբավայրին։*

ԱՂՕԹՔ. 1) *Ջերմեռանդ սրտէ մի կը բարձրանայ աղօթքն....*

### 2

ԱՄՊՆ. 1) *Ամպ մի կ'սկսի ձեւանալ. ի սկզբան թեթեւ շոգի մի է միայն որում ուշադրութիւն իսկ չեն ըներ։ 2) Տակաւ առ տակաւ կը մեծնայ այս ամպն, կը տարածուի եւ յինքն կը ձգէ զհայեցուածս։ 3) Ընդհուպ կը ծածկէ երկնից երեսն իւր աղնձաթոյր գունովն, եւ արհաւիրք կ'ազդէ։ 4) Հուսկ ուրեմն շանթ կ'արձակէ եւ աւերիչ կարկուտ կը տեղայ այն տեղեաց վերայ ընդ որ կ'անցնի։*

ԱՇԽԱՐՀԱԿԱՆ. 1) *Մանուկ մի կը ծնի . . . .*

### 3

ՏԵՐԵՒՆ. 1) *Ցօղունէդ անջատուած, ո՜վ հէգ տերեւ ազազուն, ո՞ւր կ'երթաս։ 2)—Չգիտեմ զայն. մրրիկը խորտակեց զկաղնին որ իմ միակ ապաւէնն էր։ 3) Զեփիւռը կամ հիւսիսն, յօրէ յայնմանէ հետէ, իւր շնչովն թափառայած կը վարէ զիս անտառէն ի դաշտ, լեռնէն ի հովիտ։ 4) Անտրտունջ եւ անահ կ'երթամ անդր ուր կը վարեն զիս հողմունք. կ'երթամ անդր ուր ամենայն ինչ կ'երթայ, ուր վարդին կ'երթան թերթեր եւ սարդենւոյն տերեւներ։ (Առնոյ).*

ՈՐԲՆ. *Հեզ մանուկ, որ կորուսիր օրերուդ հեղինակներդ. . . ։*

## ՀՐԱՀԱՆԳ Դ.

Աշակերտը պարտի հետեւեալ հատուածներուն խորհրդաւոր կամ այլաբանական իմաստը բացատրել.

1. *Փիլիսոփայ մի՝ որուն հարցուցած էին աշխարհիս տարիքը, աւազին վերայ գծեց օձ մի որ կը խածնէր զիւր տուտն։ Ի՞նչ ըսել կ'ուզէր։*

2. *Օր մի Աթենացի մի տեսնելով Եզովբոսը որ կը խաղար մանկանց հետ, յանդիմանեց զայն ժամավաճառ լինելուն համար։ Փռիւգացին պատասխանեց ներկայացունելով նմա թուլցած աղեղն մի։*

3. *Երբ Դարեհ բազմամբոխ բանակի մը գլուխն անցած Սկիւթացւոց վրայ գնաց, նոքա յղեցին նմա թռչուն մի, գորտ մի, մուկ մի եւ հինգ նետ։ Դեսպանը իւր պարգեւն յանձնեց նմա եւ յետս դարձաւ առանց բան մի ըսելու։ Դարեհ այս ահաւոր յայտարարութիւնը լսելով, հապճեպ փութով Պարսկաստան վերադարձաւ։*

4. *Փիլիսոփայի մի աղաչեցին որ կենաց տեւողութիւնը բացատրէ. փիլիսոփայն սանկաւիկ մի կեցաւ, եւ ապա անձը թագոյց։*

5. *Իդոմէնէս Մանդուրիացւոց երկրին տիրած էր։ Նոքա յղեցին առ նա երկու իմաստուն ծերունիներ որք ներկայացան Իդոմէնեայ, ունենալով սուսեր մի ի միում ձեռին եւ ճիւղ մի ձիթենւոյ ի միւսումն։*

6. *Մարդ մի աշտարակի մէջ բանտարկուած էր եւ չէր գիտեր թէ թագաւորն ի՞նչ վճիռ պիտի տայ իւրեան համար։ Իւր կինը կ'առնու որդին իւր գիրկը, եւ կ'երթայ վայր մի ուր ամուսինը կրնար նշմարել զինքն աշտարակէն։ Հոն ընդ երկար կենալէ եւ բանտարկելոյն ուշադրութիւնը յինքն դարձունելէ յետոյ, ափ մի հող առաւ եւ, խաչաձեւ, թափեց զայն իւր որդւոյն մարմնոյն վերայ որ իւր ոտից տակ պառկած էր։*

## ԱՌԱԾՔ

(PROVERBE)

Հ. Ի՞նչ է Առածն.

Պ. Առածը տեսակ մի վճիռ է որ քիչ բառերով, եւ ընդհանրապէս այլաբանական ձեւի տակ, կը բացատրէ երկար իմաստ ունեցող ճշմարտութիւն մի։ Առածք այնքան հին են որքան աշխարհս. Սողոմոն եւ Կոնփիւկիոս գեղեցիկ առածներ յօրինած են. Նաեւ, իւրաքանչիւր ազգ իւր առածներն ունի, որոց մէջ իւր գաղափարները ու զգացումներն, ի մի բան, իւր նկարագիրը կ'երեւայ. ուստի իրաւամբ Առածներն «իմաստութիւն ազգաց» կոչուած են.

Ահա մի քանի օրինակներ,

1. «Կատուին բացակայութեան ժամանակ մուկերը կը պարեն» այս առածը կը նշանակէ թէ երբ տէրը բացակայ է, ծառայները կ'ընեն ինչ որ կուզեն;

2. «Ամէն հաչան շուն խածան չէ» այսինքն ամէն անոնք որ կ'սպառնան ահարկու չեն։

3. «Երկաթը տաք տաք կը ծեծեն» կը նշանակէ թէ երբոր մէկը գործի մը մէջ յաջողելու առիթը կը գտնայ պէտք չէ որ զայն փախցունէ։

### ՀՐԱՀԱՆԳ 8.

Աշակերտը պարտի հետեւեալ առածներուն մեկնութիւնը տալ.

1. Շունը շունին միսը չուտեր։
2. Գլորող քարը հիմ չբռներ։
3. Շուն ու կատու են իրարու հետ։
4. Մէկ քարով երկու թռչուն զարնել։

5. Օձը շապիկը կը փոխէ, բայց ոչ բնոյթը։
6. Կարկուտէն փախանք, անձրեւի բռնուեցանք։
7. Մէկուն քթէն բռնել։
8. Ամէն փայլուն բան ոսկի չէ։
9. Անցուկը մոռցուկ կ'ըլլայ։
10. Ինքը քուն, բախտը արթուն։
11. Դու քեզ օգնէ, Աստուած ալ քեզ կ'օգնէ։
12. Մարգարէ ոչ ունի պատիւ ի գաւառի իւրում։
13. Ջաւնիս փող, մոխիր հող։
14. Բենելորի կտաւն է։
15. Բաւական է որ մեղր ունենանք, ճանճերը իս-
    կոյն կը հասնին։
16. Ջուրի գող, ձիու գող։
17. Ինը չտուած, տասը ձեռք չիյնար։
18. Անկէ հաւկիթ առնողը մէջը դեղնուց չգտներ։
19. Անուշ լեզուն օձը ծակէն դուրս կը հանէ։
20. Անպտուղ ծառին քար նետող չըլլար։
21. Բարձր սարին բուքն ու քամին շատ կ'ըլլայ։
22. Ես գանձ կըսեմ, դու տանձ կը հասկնաս։
23. Բարէն կաթ կթել։
24. Տաշուած քարը գետինը չմնար։
25. Մի թքներ այն ջրհորը որուն ջուրը խմեր ես։
26. Հաց տուէք՝ ուտէ, ջուր տուէք՝ խմէ, ծած-
    կեցէք՝ ննջէ, հսկեցէք՝ որ հոգին չելնէ։
27. Մինչեւ աղը հասաւ. խնամաղը վերցաւ։
28. Վազող ձիուն գլխուն չեն զարներ։
29. Կատուն մսին չէ հասեր, փիւֆ հոտած է ըսեր։

### ԱՌ ԱՄՊ ՄԻ ՈՐ ՆՈՐ ԿԸ ԲԱՐՁՐԱՆԱՅ ՀՈՐԻԶՈՆԷՆ

(Այլաբանութիւն)

Ծրագիր. Այլաբանական ձեւի տակ, բացատրեցէք ինչ որ կրնայ լինիլ նորածին մանկան մի կեանքն։

Ձեր խօսքն ուղղեցէք ամպի մի որ, փոքրիկ, դեռ նոր կը բարձրանայ հորիզոնէն եւ այնպիսի ենթադրութիւններ ըրէք որ համապատասխանեն մարդկային կենաց գլխաւոր երեւոյթներուն եւ այն զանազան դիպաց որ սեպհական են կենաց։

## ԺԱՅՌՆ ԵՒ ՈՒՂԵՒՈՐՔ

Մարդ մի լերան մէջ կը ճանապարհորդէր, եւ հասաւ այնպիսի տեղ մի՝ ուր յաղթ ժայռ մի ճամբուն վերայ գլորած՝ զայն բոլորովին գոցած էր՝ եւ ճամբէն դուրս չկար այլ ելք ո՛չ յաջ եւ ո՛չ յահեակ։

Արդ, այս մարդը՝ տեսնելով զի ժայռն արգելք կը լինէր իւրեան՝ շարունակելու համար զիւր ճամբան, փորձ փորձեց զայն շարժելու իւրեան անցք մի բանալու համար, եւ շատ յոգնեցաւ, եւ անօգուտ ու ապարդիւն եղան իւր բոլոր ճգունք։

Զայս տեսնելով, նստաւ լի թաղծութեամբ, եւ ըսաւ. «Ի՞նչ պիտի ըլլայ ինձ՝ երբ գիշերը գայ հասնի այս միայնութեան մէջ, անսնունդ, անապաստան, անզէն, ի ժամուն՝ յորում վայրի գազանք իւրեանց որսը փնտռելու համար դուրս կ'ելնեն իւրեանց որջերէն։

Եւ երբ այս մտածման մէջ խորասուզեալ կայր, ահա ուրիշ ուղեւոր մի եւս եկաւ, եւ այս ալ առաջնոյն ըրածը ընելէ եւ ժայռը շարժելու անկարողութիւնը տեսնելէ յետոյ, նստաւ լռիկ եւ հակեց ճակատը։

Անկէ վերջը, շատ ուրիշներ ալ եկան, եւ ոչ մէկը կրցաւ շարժել զայն պարեխին. եւ ամենեցուն երկիւղն ու անձկութիւնը մեծ էին եւ սաստիկ։

Հուսկ ուրեմն, մին ի նոցանէ ըսաւ միւսներուն.

«Եղբարք իմ, աղօթենք մեր երկնաւոր Հօրը. թերեւս գթայ մեզ ու կարեկցի այս անձկութեան ժամուս մէջ։» Եւ այս խօսքը լսելի եղաւ, եւ աղաչեցին ի սրտէ երկնաւոր Հօրը։

Եւ յետ աղօթիցն, նա որ ըսած էր «Աղօթենք» ըսաւ նաեւ «Եղբարք իմ, ինչ որ ոչ ոք ի մէջ կրցաւ ընել միայնակ, ո՞ գիտէ թէ չպիտի կրնանք ընել ի միասին։»

Եւ յոտն ելան, եւ ամէնքը միահամուռ հրեցին ժայռը, եւ ժայռը տեղի տուաւ. եւ խաղաղութեամբ իւրեանց ճամբան շարունակեցին։

Ուղեւորը մարդն է, ուղեւորութիւնը՝ կեանքը. ժայռը՝ այն աղէտներն են, որոց կը պատահի իւր ճամբուն վերայ մէն մի քայլափոխին։

Ոչ ոք կարէ միայն առանձինն բառնալ այս պա-րեխը. բայց Աստուած նորա ծանրութիւնն այնպէս իմն կշռած է զի չկարենայ կասեցունել զանոնք՝ ոյք ի միասին կ՚ուղեւորին։



### 3. ՊԻՏԱԿԱՆՈՒՆՈՒԹԻՒՆ

Գիտէք թէ ինչ է ծառի մի ճիւղը։ Այս ճիւղ բառն հնարուած է ցուցունելու համար տունկի մի կամ ծառի մի այն մասը որ իրմէ դուրս արձակուած է. բայց եթէ գետի մի իրմէ բաժնուած այլեւայլ մասերը անուանել ուզենք, կը տեսնեմք որ Հայերէն լեզուի մէջ չկայ այդպիսի բառ մի, ուստի առ հարկի կը դիմեմք ճիւղ բառին եւ զայն գործածելով կ՚ըսեմք «ճիւղ գետոյ»։ այս գործածութեամբ ձեւ մի ըրած կը լինիմք.

1. Հ. Ինչ կ՚ըսուի այս ձեւին.

Պ. Այս ձևին Պիտականունութիւն կ'ըսուի։

Զ՞. Հ. Ինչ է ուրեմն Պիտականունութիւնն.

Պ. Պիտականունութիւնը տեսակ մի փոխաբերութիւն է զոր առհարկի կը գործածեմք, երբ լեզուին մէջ գաղափար մի բացատրելու յատուկ բառը կը պակսի. ինչպէս կ'ըսեմք Թերթ մի թուղթ, տախտակ լանջաց, Թեկն աթոռոյ ևն։

### ՀՐԱՀԱՆԳ Ա.

Հետեւեալ բառերն երիցս պիտականունաբար գործածել.

1. Գլուխ (մարդոյ),
2. Ճակատ (մարդոյ),
3. Բերան (մարդոյ),
4. Ատամունք (բերանոյ).
5. Մարմին (մարդոյ),
6. Բազուկ (մարդոյ),
7. Ոտք (մարդոյ),
8. Թերթ (ծաղկի),
9. Ճիւղ (ծառոյ),
10. Երես (մարդոյ),
11. Կող (մարդոյ),



## 4. ԱՆՈՒԱՆԱՓՈԽՈՒԹԻՒՆ

Դիցուք թէ սեղանի մի վերայ միատեղ կը ճաշենք. երբ ճաշի ժամանակ ձեզ ըսեմ «Այս պնակը ձեզ համար է» կամ «խմեցէք այս բաժակը» անշուշտ կը հասկնաք զի ոչ թէ նոյն իսկ պնակին կամ բա-

ժամկին համար կ'ըսեմ, այլ նոցա մէջ պարունակեալ կերակրոյն կամ ըմպելւոյն համար։

կամ երբ ըսենք « Յաճախ այս ծառոց հովանեաց տակ նստած Ալիշան կամ Պեշիկթաշլեան կը կարդայինք » անշուշտ կը հասկնաք զի ոչ թէ այն անձերն ըսել կ'ուզեմք՝ այլ այդ անձանց գործերը, եւ կամ երբ ըսենք « Շամբանիա՞ն խմել կ'ախորժիք թէ Պորտօյ » ոչ թէ քաղաքները կը հասկնամք այլ այդ քաղաքաց մէջ շինուած ըմպելիքը։

1. Հ. Այսպէս խօսելով ի՞նչ ըրած կը լինիմք.

Պ. Այսպէս խօսելով կը տեսնեմք որ իրի մի անունը ուրիշ իրի մի անուան տեղ կը գործածեմք։

2դ. Հ. Ի՞նչ կ'ըսուի այս ձեւին.

Պ. Անուանափոխութիւն.

3դ. Հ. Ի՞նչ է ուրեմն Անուանափոխութիւնն.

Պ. Անուանափոխութիւնը ձեւ մի է որով իրի մի անունն ուրիշ իրի մի անուան տեղ կը գործածեմք, երբ այս երկու իրաց մէջ այնպիսի կապակցութիւն մի լինի որ միտքը բնական կերպով մէկէն միւսոյն անցնի, գոգցես զանոնք իրերաց հետ շփոթելով։ Ուստի Անուանափոխութեան ձեւով կը գործածուի

1. ՊԱՏՃԱՌԸ՝ ԱՐԴԵԱՆՑ տեղ. զոր օրինակ,

« Ծանրաքայլ եւ մտախոհ, Լաֆոնթէն ի ձեռին, ծաղկանց եւ ծառոց մէջէն ճամբաս կը շարունակէի » այսինքն « Լաֆոնթէնի առակներն ի ձեռին »։

2. ԱՐԴԻՒՆՔԸ՝ ՊԱՏՃԱՌԻՆ տեղ. զոր օրինակ.

« Այս գործին շինութեան ժամանակ՝ քրտունք չխը-

նայուեցան » այսինքն աշխատութիւն, զի աշխատութենէ լինին քրտունք :

3. ՊԱՐՈՒՆԱԿՈՂԸ՝ ՊԱՐՈՒՆԱԿԵԼՈՑՆ *տեղ, զոր օրինակ.*
*« Երկիրը լռեց կեցաւ Աղեքսանդրի առջեւ » այսինքն երկրի ժողովուրդք.*

4. ՊԱՐՈՒՆԱԿԵԱԼԸ՝ ՊԱՐՈՒՆԱԿՈՂԻՆ *տեղ. զոր օրինակ*

*« Իլիոն ընկճեցաւ Յունաց հարուածոց տակ, Սիոն՝ Հռոմայեցւոց, եւ Կապիտոլ՝ Բարբարոսաց » : Իլիոն գրուած է փոխանակ Տրովադայի որուն միջնաբերդն էր. Սիոն փոխանակ Երուսաղեմի. Կապիտոլ փոխանակ Հռոմայ :*

5. ՆՇԱՆԸ՝ ՆՇԱՆԱԿԵԱԼ ԻՐԻՆ *տեղ. զոր օրինակ :*

*« Սաղաւարտը թողուց, կնգուղ առաւ » այսինքն զինուոր էր կրօնաւոր եղաւ : Նոյնպէս. կը գործածուի, Սուր՝ զինուորականութեան տեղ. Մական՝ թագաւորութեան տեղ, ցուպ՝ հովուական կենաց տեղ. խաչ՝ քրիստոնէութեան տեղ :*

6. ՏԵՂԻ ՄԻ ԱՆՈՒՆՆ՝ ՈՒՐ ԿԸ ՇԻՆՈՒԻ ԻՐ ՄԻ, ՆՈՅՆ ԻՐԻՆ *տեղ, զոր օրինակ.*

*« Իւր մառանը լի էր Շամբանեայով, Մագոնով եւ Քօնեաքով » այսինքն Շամբանիա ու Մաքոն քաղաքներուն մէջ շինուած գինւով, եւ Քոնեաք քաղաքին օղւովը »*

7. ՋԳԱՑՄԱՆ ՄԻ *տեղ՝* ՋԱՅՆ ՊԱՐՓԱԿՈՂ ԳՈՐԾԱՐԱՆՆ *կամ* ՄԱՐՄՆՈՅՆ ՄԱՍՆ ԿԸ ԴՐՈՒԻ. *զոր օրինակ Ռասինի մէջ Թէսէոս իւր որդւոյն կ'ըսէ.*

*« Կը սիրէի ես զքեզ, եւ կ'զգամ որ այժմէն աղիքս կը յուզուին քեզ համար, թէպէտ դու չարիք գործեցիր ինձ » :*

*Աղիք բառը գթոյ տեղ գործածուած է աստ :*

8. ԱԶԳԻ ՄԻ ՆԱԽԱՀԱՅՐԸ՝ ՆՈՅՆ ԱԶԳԻՆ *կամ* ԶՕՐԱՎԱՐ ՄԻ՝ ԻՒՐ ԲԱՆԱԿԻՆ *տեղ, զոր օրինակ.*

«Բենիամին հաստատուեցաւ Յուդայի հիւսիսային կողմը» այսինքն Բենիամինի ցեղն հաստատուեցաւ Յուդայի ցեղին հիւսիսային կողմը։

«Ղուկուղղոս Տիգրանակերտի տիրեց» այսինքն Ղուկուղղոսի բանակը։

### ՀՐԱՀԱՆԳ 1.

Նշանակել անուանափոխութիւնը եւ զայն ջնջել:

1. Նորա ճակատուն վերայ մահը կը տեսնուէր։
— Պատճառը՝ արդեանց տեղ, «... վերայ տժգունութիւն կը տեսնուէր։»
2. Թշուառը կարեկից սիրտ մը կը փնտրէ։
3. Ես Հոմերոս կը կարդամ, եղբայրս Վիրգիլիոս։
4. Քանի՜ն վսեմ է Դաւթի քնարն։
5. Թագը յոյժ վտանգալից ինչք մի է։
6. Ինչո՞ւ վարդերով կը պսակուիք դուք, մինչդեռ զրահ հագնիլ պէտք է։
7. Ներկայ պատահարաց մէջ զԱստուած կը տեսնեմ։
8. Լուսինը կը ննջէ անշարժ դալարեաց վերայ։
9. Այս երկիրը իմ քրտամբս ոռոգուեցաւ։
10. Թնդանօթը մահ կը ժայթքէ ամենուրեք։
11. Բարուք կարդացած էք, կ՚ըսէր Լաֆոնթէն։
12. Ես եմ, ըսաւ Յիսուս, յարութիւն եւ կեանք։
13. Արեւը աչքերուս մէջ կը մտնէր։
14. Կարդացէք Մովսէս, Դաւիթ եւ Եսայի։
15. Այն լերան վերայ հովանի չկայ։
16. Ատտիլա երկնից վճռոյն մի գործին կը համարէր ինքզինքն։
17. Բոլոր երկիրն անոր առջեւ կը սարսէր։
18. Այս մարդը, զոր Աստուած դրած է Իսրայէլի չուրջը իբրու պարիսպ պղնձի որոյ դէմ խորտակեցան

բազմիցս համայն զօրութիւնք Ասիոյ, կուգար ամի ամի նորոգել իւր յաղթական ձեռօք տաճարին աւերակներին։

## ՀՐԱՀԱՆԳ Ձ.

Անուանափոխութեամբ բացատրել.

1. Լուի ԺԴ. ուզեց անձամբ թագաւորել եւ ոչ թէ պաշտօնակալներով։

—Լուի ԺԴ. ուզեց ինքն մականը ձեռք առնուլ, եւ ոչ թէ թողուլ զայն իւր պաշտօնակալաց ձեռքը։ Նըշանը նշանակեալ իրին տեղ։

2. Դաւիթ Հրէից փառքն եղաւ։

3. Գթացէք մօր մի վշտաց վերայ։

4. Այն մարդը Քրիստոնէութեան թշնամի է։

5. Կին մի չկրնար թագաւորել Գաղիոյ մէջ։

6. Բոլոր Անգղիացիք խռովեցան։

7. Կրօնաւորները զինուորաց հետ խառն էին։

8. Լամարթինի երգուածները կարդացած էք։

9. Սոկրատ խմեց թունալից հեղուկը։

10. Զինուորները կը դիմէին թնդանօթաց առջեւ։

11. Յիսուս իմ կենաց հեղինակն է։

12. Հօր աշխատութիւնները որդւոց սնունդ կը հայթայթեն։

13. Այն հասակին մէջ դժուարին է նմա զինուոր լինել։



## 5. ԽԵԼԱՍՏՈՒԹԻՒՆ.

Երբ խօսելով հանճարեղ մարդու մի վրայ ըսենք «Հանճարեղ գլուխ մի է նա» կը հասկնանք զի ոչ թէ գլխոյն համար ըսել կ'ուզեմք այլ անձին համար։

Երբ ըսենք «Թշնամին քաղաքը պաշարեց» կամ «Բիւր անգամ ըսի ու չհասկցաւ» անշուշտ կը հասկցուի որ քաղաքը պաշարողը ոչ թէ մէկ թշնամի է այլ «թշնամիներ». նոյնպէս ոչ թէ ճիշդ բիւր անգամ ըսած եմ այլ «շատ անգամ» ըսել կ'ուզեմ։

Երբ ըսեմք «Ով Աստուած, ո՞ր մահկանացուն կարող է փառակից լինել քեզ». «անշուշտ կը հասկըցուի որ «մահկանացու» ըսելով «մարդ» ըսել կոչուի։

1. Հ, Վերոգրեալ օրինակներուն մէջ ինչ կը դիտէք,

Պ. Կը դիտեմք որ անձուկ նշանակութիւն ունեցող բառ մի ընդարձակ նշանակութեամբ, կամ ընդարձակ նշանակութիւն ունեցող բառ մի անձուկ նշանակութեամբ գործածուած է։

2դ. Հ. Այս ձևին ինչ կ'ըսուի.

Պ. **Խելամտութիւն**։

3դ. Հ. Ի՞նչ է ուրեմն խելամտութիւնն.

Պ. Խելամտութիւնը ձև մի է որով բառից նըշանակութիւնը կ'անձկացունեմք կամ կ'ընդլայնեմք. այսինքն, նուազագոյնը առաւելագունին կամ առաւելագոյնը նուազագունին տեղ կը գործածեմք։ Ուստի խելամտութեան ձևով կը գործածուի

1. ՄԱՍՆ՝ ԱՄԲՈՂՋԻՆ տեղ. զոր օրինակ,

«Ամեն բերան կը գովէ զինքն» այսինքն ամէն մարդ։

Այսպէս գետի մի անունը կը գործածուի այն ժողովրդեան տեղ զորոյ աշխարհը կը թանայ. զոր օրինակ,

«Սեն՝ Պուրպոններ ունեցաւ եւ Տիբերիս՝ Կեսարներ.» այսինքն Գաղիացիք.... եւ Հռոմայեցիք... ունեցան.

2. ԱՄԲՈՂՋԸ՝ ՄԱՍԻՆ տեղ. զոր օրինակ,

«Իսրայելացիք ջարդուեցան.» այսինքն մասն մի՝ յԻսրայելացւոց:

«Ասորիք ի փախուստ դարձան» այսինքն մասն մի յԱսորւոց

3. ՍԵՌԸ՝ ՏԵՍԱԿԻՆ տեղ, զոր օրինակ,

Բաղդատելով անհաւատարիմ մարդ մի հաւատարիմ շան մի հետ, երբ ըսենք

«Այս մարդը անասնոյ մի չափ հաւատարիմ չէ.»

Անասունը, որ սեռ կը ցուցունէ, գործածած կը լինինք շան տեղ որ տեսակ կը ցուցունէ:

4. ՏԵՍԱԿԸ՝ ՍԵՌԻՆ տեղ,

«Այս մարդը հացի կարօտ է» այսինքն կենաց կարեւոր բաներու:

«Ձիերու եւ ջորիներու պէս մի լինիք, որոնք իմաստութիւն չունին». այսինքն անբաններուն պէս մի...:

5. ՆԶԱԿԻՆ՝ ՅՈԳՆԱԿԻՆ տեղ. զոր օրինակ,

«Մահը կը հաւասարցունէ հովուին զթագաւորն:» Այսինքն հովիւներուն՝ թագաւորները:

«Ահա, թշնամին դէպ առ մեզ կը յառաջանայ» այսինքն, թշնամիք:

6. ՅՈԳՆԱԿԻՆ՝ ՆԶԱԿԻՆ տեղ,

Յաճախ առ քաղաքավարութեան «Հաճեցէք ձեր ներկայութեամբ պատուել մեր հանդէսն: Դուք հրամայեցէք ես պատրաստ եմ ձեզ հնազանդելու» փոխանակ ըսելու «Հաճէ, քո ներկայութեամբն պատուել մեր հանդէսն: Դու հրամայէ ես պատրաստ եմ քեզ հնազանդելու» կը առ մի ոք կը խօսիմք:
Պուալոյի սա խօսքին մէջ.

«Ու Նեղոսի եզերաց վերայ տխմար ազգեր խնկանոց ի ձեռին՝ կոկորդիլոսները կը խնդրէին» ազգեր բառը մէկ ազգի մի տեղ տրուած է հոս որովհետեւ խօսքը միայն եգիպտացւոց վերայ է։

7. ՈՐՈՇԵԱԼ ԹԻՒ ՄԻ՝ ԱՆՈՐՈՇ ԹՈՒՈՅ ՄԻ *տեղ*։

*Ուստի կ'ըսուի «տասն անգամ, քսան անգամ, հարիւր անգամ, հազար անգամ ըսի քեզ» փոխանակ ըսելու շատ անգամ ըսի քեզ։*

8. ՎԵՐԱՑԵԱԼԸ՝ ԹԱՆՁՐԱՑԵԼՈՅՆ *տեղ*,

*«Անդ կը տեսնուէր ճոխութիւնը աղքատութեան քով» այսինքն «Անդ կը տեսնուէր ճոխն աղքատին քով»։*

9. ՆԻՒԹՆ՝ ՅՈՐՄԷ ԻՐ ՄԻ ՇԻՆՈՒԱԾ Է, ՆՈՅՆ ԻՍԿ ԻՐԻՆ ՏԵՂ,

*Երկաթ փոխանակ սրոյ, չղթայի. պղինձ փոխանակ զանգակի, թնդանօթի։*

*«Պղինձն այս ահարկու լերանց վերայ կ'որոտար,» այսինքն թնդանօթը։*

## ՀՐԱՀԱՆԳ 1.

Նշանակել խելամտութիւնը եւ զայն ջնջել:

1. *Իմ ճակատն չխոնարհիր վատութեան առջեւ։*
*— Մասն ամբողջին տեղ. «Ես չեմ խոնարհիր վատութեան առջեւ»։*

2. *Ցափշտակեալ կը տարուէր իւր ձիերէն զորս իւր ձեռներն սնուցին։*

3. *Բանտարկեալ առաքեալն, ինքզինքը կը փառաւորէր իւր երկաթներուն համար։*

4. *Քան առագաստք նաւահանգիստ մտան։*

5. *Դրախտին մէջ Աստուած խօսեցաւ իւր արարածին։*

6. *Թշուառութիւնը կարեկցութիւն կը խնդրէ։*

7. Ամբարշտութիւնը կը հպարտանայ Աստուծոյ դէմ։

8. Ծերութիւնը կը տեսնուէր մանկութեան քով։

9. Հասկը կը հասուննայ արեւուն ջերմութեամբ։

10. Երկաթով եւ ծծմբով, մարդն ապառաժուտ լերանց մէջէն իրեան ուղի կը բանայ։

11. Երբ ծառերն բացին իրենց ծաղիկներն, թիւր թռչունք սկսան իրենց բոյներն շինել։

12. Հարաւահողմը կը շնչէր եւ կ'ուռուցանէր կտաւեղէնը։

13. Ծոյլը կ'ըսէ «Ձկարեմ, չգիտեմ»։

14. Ագահը միշտ աղքատ է։

## ՀՐԱՀԱՆԳ Զ.

Խելամտութեամբ բացատրել.

1. Հայր մը իր աշխատութեամբ կը հայթայթէ իր որդւոց սնունդը.

— «...... իր որդւոց հացը». տեսակը սեռին տեղ։

2. Ցիսուս միայն օրհնութիւն ունի աղքատաց համար։

3. Նախանձոտ մարդը ինքզինքը կը տանջէ։

4. Ծերերը կը դիզեն, երիտասարդները կը վատնեն։

5. Պատերազմի դաշտին վերայ թնդանօթը կ'որոտայ։

6. Կը վախնամ որ երկինք վերաս չիյնայ։

7. Զանգակն յեկեղեցի կը կոչէր զհաւատացեալս։

8. Բազմաթիւ զօրքեր կոխան կը լինին փղաց ոտիցը տակ։

9. Քեզի յաճախ ըսի թէ վտանգի պիտի պատահիս։

10. Եկֆանիկները կը խլեն բրդի ծուէնները զոր ոչխարները կը թողուն մորենեաց վերայ։

11. Ընդ երկար պիտի յիշեմ այս դուռ ու ամայի վայրերն։

12. Օրէնք շինեալ են ի պաշտպանել զտկարն ընդդէմ զօրաւորին, զմիամիտն ընդդէմ խորամանկին, զուղիղն ընդդէմ խարդախին։

13. Թող պարկեշտ մարդիկ միանան։

14. Անմեղին աղօթքը հաճելի է Աստուծոյ։

---

## 6. ԴԵՐԱՆՈՒՆՈՒԹԻՒՆ

Կարդացէք հետեւեալներն, ուշադիր լինելով շեղագիր բացատրութեանց.

### 1

*Ո՛հ, հարուստներ, միթէ երջանի՞կ էք դուք ձեր ճոխութեան ու հեշտութեանց մէջ... երբ Ղազարոս (լքեալ աղքատն) ձեր դրան առջեւ կը հեծէ նօթի, ի՞նչպէս ձեր կոկորդէն վար կ'երթայ հացն, եւ ինչպէ՞ս այդ պնակներն արիւնալից չերեւին ձեզ։ Տիկնայք փափկասունք, երբ մուշտակներու մէջ փաթթուած գեղեցիկ բոցին առջեւ որ վառարանին մէջ կը գոռայ եռանդուն՝ մի օրօրուն աթոռի մէջ կը ճօճիք հեշտիւ, չպարսամի՞ք յանկարծ մի ցուրտ սարսուռով երբ մտածէք թէ քանի՞ Քօզէթներ (անտէրունչ որբեր) դուրսն օդին մէջ կը զոփան իբրեւ հէք ծաղիկ ցրտահար։*

Ռ. Ց. Պէրպէրեան

### 2

*Բանաստեղծները կը քաղաքակրթեն մարդկութիւնը. աշխարհի առաջին դարերու վրայ մի քնար կայ որ լոյս կը սփռէ, վերջին դարերուն վրայ ալ մի քնար պիտի ծագի։ Սորա համար, մարդն պարտաւոր*

*է սուտ առնուլ երբ մի Հոմերի (մեծ քերթողի) հոգին կը դադրի թրթռալ։*

**Մ. Զերազ**

### 3

*Բանաստեղծք եւ մատենագիրք քաջալերուելու համար պէտք է որ այլին դպրութեանց պաշտպանի մի տակ (Օգոստոս կայսեր), անաչառ այլ արդար քննադատներ (Արիստարքոսներ) ունենալով եւ ոչ թէ նախանձոտ քննադատներ (Զոյիլներ)։*

### 4

*Որքա՜ն աղքատներ (Ղազարոսներ) պիտի բաւականանային այն փշրանքով որ կ'իյնան աշխարհիս հարուստներուն (Կրեսոսներուն) սեղանէն։*

### 5

*Արդար է որ ժողովուրդները նախամեծար համարեն Տիտոսները (բարի իշխանները) քան Ներոնները (չար իշխանները)։*

### 6

*Լատինք ունեցան Մանտուի կարապն (Վիրգիլիոս), Գաղղիացիք ալ ունին իւրեանց Կամպրէի կարապն (Ֆենելոն)։*

**1.** Հ. Ի՞նչ կը դիտէք վերոգրեալ օրինակաց մէջ.

Պ. Կը դիտեմք որ մերթ յատուկ անուններ գործածուած են հասարակ անուանց տեղ և մերթ հասարակ անուններ՝ յատուկ անուանց տեղ։

**2դ.** Հ. Ի՞նչ կը կոչուի այս ձեւն.

Պ. Դերանուանութիւն։

**3դ.** Հ. Ի՞նչ է ուրեմն Դերանուանութիւնն.

Պ. Դերանուանութիւնն է յատուկ անուն մի գործածել հասարակ անուան տեղ և հասարակ անուն մի՝ յատուկ անուան տեղ։

Ցոյնք՝ ճարտարախօսն կ'ըսէին Դեմոսթէնի համար. եւ Քերթողը՝ Հոմերոսի համար։ Նոյն անուամբ Լատինք կը հասկնային զԿիկերոն եւ զՎիրգիլիոս, եւ տակաւին կ'ըսեմք Հռովմ ճարտարախօսն, Յոյն ճարտարախօսն, փոխանակ ըսելու Կիկերոն եւ Դեմոսթենէս։ Աստի կ'ըսուի

| | | |
|---|---|---|
| Ճենովացի փիլիսոփայն | Ժան-Ժագ Ռուսոյի | համար։ |
| Փռիւգացի գերին | Եզովբոսի | » |
| Գաղիացի առակախօսը | Լաֆոնթէնի համար | » |
| Ֆերնէյի նահապետը | Վոլթէրի | » |
| Կարքեդոնի կործանիչը | Ափրիկեցի Բ. Սկիպիոնի | » |

Նոյնպէս կ'ըսուի

| | | | |
|---|---|---|---|
| Տիբեր | ոճն, | անգութ եւ խաբեբայ իշխանի մի | համար։ |
| Սարդանապաղ | » | հեշտասէր Թագաւորի | » |
| Ներոն | » | անգութ եւ վատ իշխանի | » |
| Մեկենաս | » | դպրութեանց պաշտպանի | » |
| Զոյիլ | » | նախանձոտ քննադատի | » |
| Արիստարքոս | » | անաչառ, այլ արդար քննադատի | » |

4. Հ. Ուրիշ ի՞նչ տեսակ բացատրութիւնք այս ձեւին կը վերաբերին.

Պ. Դերանուանութեան ձեւ մի ըրած կը լինիմք նաեւ

Ա. Երբ մասնաւոր տեղւոյ մի անունը պատշաճեցունելով ուրիշ տեղւոյ մի կամ իրի մի ըսեմք. Տեմպեան հովիտ, Իտալական երկինք, Ափրիկեան արեւ, Հեղվետեան տեսարան, Սիպերիական ցուրտ, Իդումական արմաւենի, Հիւպլեան մեղու, փոխանակ ըսելու հովասուն հովիտ, պարզ ու ջինջ երկինք, կիզիչ արեւ,

*գեղեցիկ տեսարան, սաստիկ ցուրտ, ընտիր արմաւենի, ազնիւ մեղր։*

*Բ. Տեղւոյ վերայ խօսելով կ'ըսուի նաեւ* գետն, լեառնըն սուրբ *փոխանակ ըսելու Տիբերիս եւ լեառնն Սինայ։ Հինք* քաղաքն *ըսելով կը հասկնային Աթէնք կամ Հռոմ։*

*Գ. Երբեմն խօսքին ընթացքին մէջ փոխանակ անձի մի յատուկ անունը գործածելու, կը դրուի անունն այն դասին որուն կը պատկանի նա. զոր օրինակ, փոխանակ ըսելու Աքիլլէս, Մենտոր, Կալքաս, կ'ըսուի* դիւցազնն, ծերն, քահանայն։

## ՀՐԱՀԱՆԳ 1.

Աշակերտը պարտի, դերանունութեան ձեւով, յատուկ անունները հասարակ անուամբք բացատրել։

1. *Ամէն ազգ չունի* Հոմերոս, Սոփոկլէս, Փիդիաս, Ապելլէս, Դեմոսթենէս, Միլդիատէս, Արիստոտէլ, Սողոն, Հիպոկրատ, *եւ* Արքիմեդէս։

2. *Միդասներու դարուն մէջ* Որփէոսներ *չեն գար ի լոյս։*

3. *Ժանտախտը, սովը եւ մանաւանդ պատերազմը անմխիթար* Նիոպէներ *յառաջ կը բերեն։*

4. *Ամէն քաղաքակրթեալ — կամ, լաւ եւս է ըսել ապականեալ — ժամանակներու մէջ* Մոնմորներ *տեսնուեցան* Ապիկիոսներու *սեղանը։*

5. Սոկրատները *միշտ իրենց ետեւ պիտի ունենան* Անիտոսներ *եւ* Մելիտոսներ։

6. *Ինքզինքս բոլորովին խոնարհ կ'զգամ երբ կը մտածեմ որ աւելի դիւրին է* Միւնիտոս *մի հասցունել քան* Հումպոլտ *մի։*

7. Թերսիտները *եւ* Սինոնները *միշտ անարգանաց*

առարկայ եղած են Պայարներու եւ Արիստիդեսներու։

8. Ի՛նչ խորհրդաւոր վայրկեան է այն. ուր մանկան մի շրթներն առաջին անգամ կ՚արտասանեն այբ եւ բեն․ կը թրթռայ դաստիարակին սիրտն, մի նոր հոգի կը մտնէ բարոյական աշխարհին մէջ, արտասանել այդ գրերն ազատիլ է. ո՛ւսափ. — խաւարէն, անդունդէն, մահէն. ո՜ գիտէ, ինչ պիտի լինի այդ հոգին. — Հոմեր, Սողոն, Կուբբեմպերկ, Գողոմպոս, գաղտնի՛ք, խորհո՜ւրդ։

9. Այն օրն յորում Տը սեն Բիեր Աբբաներու երազը պիտի իրականանայ, Թաչեռանները եւ Մեքեռնիկները պիտի պարտաւորին ուրիշ ասպարէզ մի փնտրել։

10. Այն հայրերը որք պիտի փորձուէին այսօր Ագամեմնոնի դերը կատարել իւրեանց ընտանեաց մէջ, հեշտաւ չպիտի գտնէին Իփիգենիաներ դիւրապատրաստ ի զոհ։

11. Կան մարդիկ որ իւրեանց բովանդակ կենաց մէջ ամէն Հոմերի դէմ Զոյիլ, ամէն Սոկրատի դէմ Անիտոս կամ Մելիտոս, ամէն Մոլիերի դէմ Վիզէ եւ ամէն Վոլթէրի դէմ Ֆրէրոն եղած են։

12. Եթէ Սպանիացի պատմագրաց հաւատանք, այն ժողովուրդք որ կը բնակէին յԱմերիկա, նախ քան զգիւտ այս աշխարհին, ունեցած էին իւրեանց Աղեքսանդրները եւ Կեսարները։

13. Ողիսեւս մի միշտ կը յաղթէ մի Պողիփեմի։

## ՀՐԱՀԱՆԳ Զ.

Աշակերտը պարտի, դերանունութեան ձեւով, շեղագիր հասարակ անունները յատուկ անուամբ բացատրել։ Յատուկ անուանք հրահանգին վերջը դրուած են.

Բ *1. Բարի իշխան մի թող չվախնայ որ բռնաւորի մի ճակատագիրը պիտի ունենայ։

2. Միլտոն իւր կուրութեան ժամանակ ունէր երեք դուստր որք իւրեան համար անձնուէր առաջնորդ եւ խնամակալ եղան։

3. Սակաւ մեծ բանաստեղծ կայ որ ունեցած չինի իւր աղարտիչը։

4. Տակաւ առ տակաւ հաւատարիմ եւ անձնուէր ծառայից թիւը կը նուազի։

5. Պուալոյ եւ Ժիլպէր իւրեանց դարուն երգիծաբան բանաստեղծներն եղան։

6. Փափկասուն մեծատունք, այս անտէրունչ աղքատներն ձեր սեղանէն ինկած փշրանքը կը խնդրեն. չա՞նց աւելի թէ նոցա տալ պիտի ուզէք։

7. Չէ պարտ տարակուսիլ թէ, կարի կանուխ հնութեան մէջ, եղած են երեւելի աշխարհակալներ, զորոց քաջութիւններն ի մոռացօնս ընկղմած է ժամանակն։

8. Ծիծառանց, աղաւնեաց, կորայից եւ ճնճղկաց իսկ պատմութիւնը լի է անմխիթար կանանց եւ մարց, որք կը մեռնին առ քաղցոյ կամ առ վշտի, իւրեանց ամուսնոյն կամ խողխողեալ որդւոց դիակին քով։

9. Մեր ներկայ դարուն դժբախտութիւնը այն է որ, սրամիտ եւ հանճարեղ մարդոյ համբաւն ստանալու համար, խորամանկ եւ խարդախ քաղաքագէտ լինել պէտք է։

(Հոմերոս։ Մաքիավէլ։ Ներոն։ Գալէպ եւ Եւմէս։ Տիտոս։ Անդիկոն : Զոյիլ : Ցոբնաղ : Արտեմիս : Աղեքսանդր : Նիոպէ: Ղազարոս։)

Հ. Նախընթաց վեց Շրջաններէն զատ ուրիշ շրջան ալ կա՞յ.

Պ. Այո, մի ուրիշ Շրջան ալ կայ որ Փոխակա՞րգութիւն (Métalepse) կը կոչուի. սա տեսակ մի

*Անուանափոխութիւն է որով Նախորդը* (antécédent) *փոխանակ Հետեւորդին* (conséquent) *կը դրուի, ինչպէս «ապրեցաւ նա» փոխանակ ըսելու «մեռաւ նա» կամ Հետեւորդը փոխանակ Նախորդին, ինչպէս «կուլցամf զայն» փոխանակ ըսելու «մեռաւ նա։»*



## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆ

*Հ. Տրջաններու գործածութեան մէջ ընդհանրապէս ի՞նչ պէտք է դիտել։*

*Պ. Թէպէտեւ Տրջանք խօսքին զարդերն են եւ ոճոյն գեղեցկութիւն կու տան, սակայն պէտք է գիտնալ որ երբ բնականաբար նիւթէն չեն ծնիր, երբ ի դէպ եւ ի պատշաճի չեն գործածուած, երբ ճգամբ բերուած կամ անհեռդեռ են, ոճոյն գեղեցկութեան կը վնասեն եւ մթին կամ արուեստակեալ կը գործեն զայն։ Զեն ինքնին ոչինչ է, երբ իմաստը կամ զգացումն կը պակասի, կամ յարմար չէ ձեւին։*

*Լեզուին սովորութեան ալ պէտք է միտ դնել. վասն զի կան այլափոխ ասութիւնք զորս լեզուն չներեր. ինչպէս չէ օրէն ըսել «Հարիւր խեչf» փոխանակ ըսելու «Հարիւր առագաստ». կամ «յաղթութեան կաղնին» փոխանակ ըսելու «յաղթութեան դափնին»։ Նոյնպէս փոխանակ «բանակի մի աջ թեւն ու ձախ թեւն» ըսելու չէ օրէն առ մեզ ըսել «բանակի մի աջ եղջիւրն ու ձախ եղջիւրն» որպէս կ՚ըսէին Լատինք։*

# ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

## ՁԵՒՔ ԻՄԱՍՏԻՑ



*Հ. Քանի՞ են իմաստից ձեւերն.*

*Պ. Իմաստից ձեւերը շատ են, բայց գլխաւորները կրնամք չորս դասերու բաժնել.* 1) ԶԳԱՑՈՒՄ ԲԱՑԱՏՐՈՂ ՁԵՒԵՐ. 2) ԿԵՂԾԻՔ ՊԱՐՈՒՆԱԿՈՂ ՁԵՒԵՐ. 3) ԻՄԱՍՏՆԵՐԸ ԶՕՐԱՑՈՒՆՈՂ ՁԵՒԵՐ. և 4) ԸՆԴԼԱՅՆՄԱՆ ՁԵՒԵՐ։



## I. ԶԳԱՑՈՒՄ ԲԱՑԱՏՐՈՂ ՁԵՒԵՐ

**1.** *Հ. Ո՞րք են զգացում բացատրող ձեւերն.*

*Պ. Զգացում բացատրող ձեւերն են. Ա. Աղերսանք* (Obsécration ou Déprécation). *Բ. Ըղձումն* (Optation). *Գ. Անէծք* (Imprécation). *Դ. Երդումն* (Serment). *Ե. Բացագանչութիւն* (Exclamation). *Զ. Բացադարձութիւն* (Apostrophe). *Է. Դիմառնութիւն* (Prosopopée)։

### Ա. ԱՂԵՐՍԱՆՔ

*Հ. Ի՞նչ է Աղերսանքն.*

*Պ. Աղերսանքն է պաղատանք մի ուղղեալ առ*

ոք, յիշելով նմա զոր ինչ ունի սիրելագոյն կամ նուիրական յերկրի, տեսանելու համար զոր ինչ կը փափաքիմք կամ ածելու համար զնա ի գութ կամ ի հաւան։

Տելեմաքայ մէջ, Փիլոկտետ կ՚աղաչէ զՆէոպտողեմոս զի առանձին չթողու զինքն ի Լեմնոս.

«Ո՛վ որդեակ իմ, կ՚երդմնեցունեմ զքեզ հօրդ ըստուերներուն եւ մօրդ արեւուն ու այն ամէն բաներուն վերայ որ սիրելի են քեզ ընդ արեգական, մի թողուր զիս միայնակ այս վշտաց մէջ...։ Միայն մեծ սիրտերը գիտեն թէ քանի՛ն փառաւոր բան է բարերարելն։ Մի լքաներ զիս այս անապատին մէջ, ուր մահկանացուի ոտից բնաւ եւ ոչ մի հետք չնշմարուիր. տար զիս քո հայրենիքն, կամ յԵւբիա որ չէ հեռի Եոտա լեռնէն, Տրաքինէէն ու Սպերք գետոյն բազմազուարճ ափերէն. դարձուր զիս առ հայր իմ։... Արդ կ՚աղաչեմ զքեզ, որդեակ իմ, յուշ լիցի քեզ մարդկային իրաց յեղյեղուկ վիճակը։ Նա որ երջանիկ է պարտի զգոյշ կալ զի չզեղծանի իւր երջանկութեամբն, եւ չարաբաստից ձեռնտու լինել։ (Գիրք ԺԵ)։

ԱՂԵՐՍԱՆԱՑ ԱՅԼ ՕՐԻՆԱԿՆԵՐ

1. Աղերս Թորգոմայ առ որդին իւր Հայկ.—Հ. Դիւց. Դր. Ե. 62—83
2. Աղերս Եւայի առ Ադամ. —Միլտոն Կոր. Դրխ. Ժ. 835—854
3. Աղերս Պրիամու առ Աքիլլէս. — Հոմ. Իլ. ԻԴ. 503.
4. Աղերս Անդրոմաքեայ առ ամուսին իւր Հեկտոր. — Հոմ. Իլ. Զ. 407-438

## Բ. ԸՂՁՈՒՄՆ

Հ. Ի՞նչ է Ըղձումը.

Պ. Ըղձումը ձեւ մի է որով փափագ մի կը յայտ-

նէ ոք բան մի ընելու կամ լինելու։ Այս ձեւն ընդհանրապէս **ո՞ տայր**, **ո՞ տացէ**, **իցիւ**, **իցիւ թէ**, **ո՜չ թէ**, **յանկարծ** են, Ըղձական մակբայներով կը բացատրուի. զոր օրինակ,

«Ոչ թողից զքեզ քարայրդ իմ, դու լիցիս ինձ գերեզման. տուն ցաւոց իմոց, եւ սովալլուկ եւ յուսահատ կորստեան. ո՞ տայր ինձ սուսեր, զի անձին առնէի, յանկարծ պատառէին զիս հաւք գիշախանձք, մի՛ եւս աղեղն իմ լարեսցի ի նոսա։»

**Տելեմաք**

«Ո՜հ, ո՞ տայր ինձ դառնալ իմ ծննդեան հովիտն, ո՞ տայր ինձ տեսնել այն ժայռերը, զառիվայրին վերայ բուսած ցիր ու ցան հսկայ սոճիներն, կանաչազեղ մարգերն՝ ուր ոլկուզաւէտ խոտոց ներքեւ ծածկուած ականակիտ պայծառ ջրոյ մէջ թանայի իմ ոտներն՝ երբ ձիւներն հալէին։

**Լամբնէ**

Ո՞ տայր ինձ զծուխ ծխանի եւ զառաւօտն նաւաստրդի
Զվազելն եզանց եւ զվազելն եղջերուաց.
Մեք փող հարուաք եւ թմբկի հարկանէաք։

**Մագիստ.** Երգ. վիպաս.

Ա՛ղէքսանդրէ, իցիւ թէ էիր դու իմ որդի, զի քեւ ազանց իշխէի։

**Պատմ. Աղէքսանդրի.**

## Գ. ԱՆԷԾՔ

Հ. Ի՞նչ է Անէծքն.

Պ. Անէծքն է ատելի առարկայի մի վերայ չարիք կամ պատուհաս մաղթել, առ պժգանաց

յոճրոյ կամ ի չար գործոյ. յաճախ նաև բարբառ-
է յուսահատութեան և ցասման։

Հ. Դիւցազնի Ը. Դրուագին մէջ Շուշանիկ՝ իւր խանդակաթ ամուսնոյն, Հայկակայ, դիակին քով հետեւեալ անէծքը կ'արձակէ.

«Ո՛հ, նզովք հասցեն ժամուն յորում իջերդ ի պատերազմ,
Նզո՛վք եւ ի դահիճդ, այսպէս եւ զնա լացցէ իւր կին։

Տելեմաքայ ԺԱ. գրքին մէջ Մենտոր հետեւեալ անէծքը կը կարդայ ուխտադրուժ գլխոյն վերայ.

«Ի տեսիլ Իդոմենեայ անդրէն սկսաւ արծարծիլ նիզակակցաց սրտմտութիւնը, բայց Մենտոր արգիլեց հրոյն բորբոքումը՝ ըսելով. «Է՞ր կը յապաղիմք հաստատելու այս սուրբ դաշինքն որում վկայ եւ պաշտպան պիտի լինին դիք։ Նոքա թող վրէժ խնդրեն այն ամպարշտէն որ պիտի ժպրհի ջնջել այդ դաշինքը. պատերազմի համայն սոսկալի աղէտներն, հեռի ուխտապահ եւ անմեղ ժողովուրդներէն, թափին ուխտադրուժ եւ եղեռնաւոր գլխոյն վերայ այն փառամոլին որ առ ոտն պիտի կոխէ սուրբ իրաւունքներն այս ուխտին. նզովեալ լինի ի դից եւ ի մարդկանէ. իւր ուխտազանցութեան պտուղը չվայելէ։ Կատաղիք դժոխոց, ժանտատեսիլ կերպարանօք, վրան յարձակելով կատաղութեան եւ յուսահատութեան մէջ ձգեն զինքն. դիտապաստ լինայ մեռնի, եւ թաղման յոյս չունենայ. իւր անթաղ դիակը շանց եւ անգեղց լինի կուր։ Իջնայ ի դժոխս եւ տարտարոսին անդնդախոր վհին մէջ տանջուի դառնակոտուտ քան զՏանտաղոս, քան զԻքսիոն եւ քան զԴանայեանս։»

Հետեւեալ նզովքն ի բերան ուսանիլ.

## ԵՐԳՉԻՆ ՆՋՈՎՔՆ

Նախնի դարուց մէջ հոյակապ կայր սպերճ դղեակ.
Տիրէր փայլէր դաշտաց վերայ ցըկապոյտ ծով.
Եւ հոտաւէտ բուրաստանաց պատէր զայն պսակ,
Ուր ցայտէին քաղցրամրմունջ աղբիւրներ զով։

Սա բազմայաղթ սէգ արքայի էր ապարան,
Բազմէր յիւր գահ մըռայլամած եւ դեղնագոյն,
Զի նայուածքն է մոլեգնութիւն, պատիժ իւր բան,
Ինչ որ գըրէ՝ արիւն է այն, խոհն՝ ահ եւ հոյն։

Օր մ'այդ դղեակ ազնիւ երգչաց երթայր մի զոյգ,
Ունէր խարտեաշ մին խոպոպիք, միւսն՝ ալեհեր,
Տաւիղ ի ձեռն՝ աշտանակած ի սօս նըժոյգ,
Եւ պատանին թեթեւաքայլ գնայր առ ընթեր։

Եւ ծերունին ըսաւ մանկան. Կա՛զմ լեր, որդի,
Մեր հոգեյոյզ երգերն յիշէ, երգէ հըզօր,
Ամփոփէ՛ ոյժդ, լե՛ր զգայուն ցաւի խնդի,
Մեզ արքային շարժել քար սիրտն հարկ է այսօր։

Ի սիւնազարդ կայ դահլըճին երգչացըն զոյգ,
Ի գահ բազմած են թագաւորն ու թագուհին.
Նա արիւնոտ պերճ հիւսիսայգ ահեղաշուք,
Սա մեղմանոյշ իբր ըղհեզիկ շող լուսնեկին։

Ահա տաւղին զարկաւ թելե՛րըն ծերունին,
Զարկաւ ճարտա՛ր, եւ թրթռային մեծաբարբառ,
Եւ պատանւոյն ցայտեց վըճիտ ձայնն երկնային,
Յոր խառնէր երգ ծերոյն՝ իբրու ոգեաց խուլ պար։

Երգեցին Սէր, Գարուն, Ոսկի դարն երջանիկ,
ԶԱզատութիւն, ըղփառս արանց եւ Սուրբ Հաւատ.
Զայն ամենայն զոր փափաքէ մարդոյն սրտիկ,
Զամէն որ տայ հոգւոյն վըսեմ թըռիչ մ'ազատ։

Լուրջ մտախոհ ազնուականն որեար դարձաւ,
Սէգ մարտիկներ խոնարհեցան էին առաջ,
Եւ թագուհին՝ ի հեշտութիւն լուծուած ու ի ցաւ՝
Երգչացն առջեւ հանեց նետեց վարդն իւր լանջաց։

«Ժողովուրդէս յետոյ կի՞նս այլ մոլորեցնէք»,
Յամառամբ ի դող մոլեգնաբար գոչեց արքայն,
Ընկէց իւր սուրն որ զսիրտ ճեղքեց պատանւոյն հէք,
Ուստ արեան գետ բղխեց ոսկի երգոց փոխան։

Եւ ցնդեցաւ իբր ի մրրկէ ունկնդրաց պար,
Ու վարպետին մանուկն ի թեւս փրչեց հոգին.
Նա վերարկուովն ըզնա պատեց, դրաւ յերիվար,
Կապեց պնդով, թողուց զամրոցն ի միասին։

Այլ նա կեցաւ դրանն առջեւ կամարաշէն,
Տաւիղն առաւ, քան զամենայն տաւիղս ընտիր,
Զա՛յլեց փշրեց զայն մի սեան դէմ մարմարեղէն,
Ահեղալուր գոչոց ձայնիւ որոտալիր։

«Վա՜յ քեզ, գոռոզ սէգ ապարան, մի՛, մի՛ եւս այլ
Ի քեզ, ի սրահսդ անոյշ երգոց լսուի հնչիւն.
Ո՛չ, այլ հեծմունք, եւ հառաչանք, եւ գերեաց քայլ,
Մինչեւ վրիժուց ոգին ըզքեզ լուծէ յաճիւն։

«Վա՜յ ձեզ, պարտէզք գարնանազարդ, անուշաբոյր,
Ցո՛յց ձեզ կուտամ մահահամբոյր այս դէմք սառած,
Որ չորանաք, ցամքի ի ձեզ ամէն աղբիւր,
Եւ յապագայս դընիք խոպան, ի ժա՛յռ դարձած։

«Վա՜յ անօրէն քեզ մարդասպան, երգոց նողկա՜նք.
Ջուր արիւնոտ փառքի պսակաց պնդիս ըզհետ.
Գիշերոյն մէջ թաղուի անունդ անարձագանգ,
Եւ զերդ հունդիւն վերջին յայերս ցնդի անհետ։»
Զայս ծերունին կարդաց ահեղ, լըսեց Երկին.
Անկան որմունք, անկան սըրահք չըքեղափայլ.

*Մի միակ սիւն մնայ վըկայ անցեալ փառքին,*
*Հերձուած արդէն՝ գուցէ գիշերն անկնի նա այլ։*

*Եւ հոտաւէտ բուրաստանաց փոխան՝ չորս դին*
*Կայ անապատ, ո՛չ ծառոյ շուք, ո՛չ աղբիւր զով.*
*Ո՛չ երգ, ո՛չ վէպ յիշէ զանուն թագաւորին,*
*Անդնդասո՛յզ, անյո՛ւշ։ Ա՛յս է երգչին նզով։*

**Լուտվիկ Ուլանտ. Թարգմ. ի Գերմանէ Ռ. Ց. Պ.**

ԱՆԻԾԻՑ ԱՅԼ ՕՐԻՆԱԿՆԵՐ

1. Յովբայ անէծք. —(Ս. Գիրք. Գիրք Յովբայ Գլ. Գ.)։
2. Յովիդայեայ անէծք. —(Գոթող. Ողբերգ. Ռասինի. Հանդ. Ա. 2)։
3. Անէծք ի ճանճս. —(Տաղք Հ. Ար. Բագրատունւոյ)։
4. Անէծք Կալիփսոյի ի Տելեմաք —(Արկածք Տելեմաքայ Գ. 7)։
5. Մասնիչն. —(Քնար Պանդխտին. Խորէն Արք. Նար-Պէյ. Տաղ. Թ.)։

## Դ. ԵՐԴՈՒՄՆ

*Հ. Ի՞նչ է Երդումը.*

*Պ. Երդումը ձեւ մի է որով ոք, հաստատելու համար իւր ըսածն, կը յաւելու այնպիսի տարատովոր պարագաներ որք աներկբայելի և անհակառակելի կ'ընեն զայն կամ գոնէ աւելի փաստաւոր։*

*Հետեւեալք Երդման օրինակներ են,*

*Ասէ Հռութ. մի պատահեսցէ ինձ թողուլ զքեզ եւ դառնալ ի քէն. զի ո՛ւր դու երթայցես՝ երթայց, եւ ուր հանգչիցիս՝ հանգեայց, ժողովուրդ քո՝ ժողովուրդ իմ, եւ Աստուած քո՝ Աստուած իմ. եւ ուր մեռանիցիս՝ մեռայց, եւ անդ թաղեցայց. օն եւ օն արասցէ ինձ Տէր եւ օն եւ օն յաւելցէ, բայց եթէ մահ մեկնեսցէ ընդ իս եւ ընդ քեզ։*

**Հռութ Ա. 16**

*Եթէ մոռացայց զքեզ Երուսաղէմ, մոռասցի զիս աջ իմ։ Կցեսցի լեզու իմ ի քիմս իմ թէ ոչ յիշեցից զքեզ, թէ ոչ նախ նուագեցից զքեզ Երուսաղէմ, սկիզբն ուրախութեան իմոյ։*

**Սաղմոս ՃԼԶ.**

## Ե. ԲԱՑԱԳԱՆՉՈՒԹԻՒՆ

*Հ. Ի՞նչ է Բացագանչութիւնն.*

*Պ. Երբ մարդկային հոգին յուզեալ է մի ցնծագին կամ ցաւագին զգացմամբ, չկարէ ինքզինքը բռնել և աղաղակ մի կ'արձակէ. հոգւոյն այս աղաղակը Բացագանչութիւն կը կոչուի. զոր օրինակ,*

*Ո՜վ մեծակառոյց քաղաքամարք աշխարհաց, հարիւրդռնեայքդ, բարձրաբերդունք եւ թանձրապարիսպք, Բաբելոն, Նինուէ, Պալմիրա, Պարսեպոլիս, Թեբք եւ Մեմփիս, Սլակ եւ Բալբաք, ելեւմուտք բիւրաւորաց եւ բազմալեզու որերոյ, զի՞արդ անմռունչ կայք, երբ անշարժ դնիք. ո՜վ մահարձանք մեծադիրք ազգաց մեծամեծաց։ Ո՜վ անոտի վաստակ ժողովրդոց եւ վիժածք ժամանակաց։ Ո՜վ ունայն երկունք սրտից եւ ծնունդք մտաց։*

**Հ. Ղ. Ալիշան. Խորհրդ. ընդ եղեւնեաւ.**

*Ո՛հ, ի՜նչ անուշ եւ ի՜նչպէս զով,*
*Առաւօտուց փըչես հովիկ.*
*Ծաղկանց վրայ գուրգուրալով,*
*Եւ մազերուն կուսին փափկիկ։*

**Մ. Պէշիկթաշլեան**

## Զ. ԲԱՑԱԴԱՐՁՈՒԹԻՒՆ

*Հ. Ի՞նչ է Բացադարձութիւնն.*

*Պ. Բացադարձութիւնն է խօսք ուղղել առ բացակայ ոք, կամ առ անձնաւորեալ իրս և նոյն իսկ առ անշունչ նիւթս ։ Բացադարձութիւնն ազդուութիւն և կենդանութիւն կուտայ ոճոյն ։*

*Հետևեալք բացադարձութեան օրինակներ են,*

*Զի՞ է քեզ, ծով. զո՞ տեսեր եւ փախեար. կամ դո՛ւ, Յորդանան, զի՞ դարձար անդրէն յետս ։*

**Սաղմոս**

*Երկի՛ր, մի՛ ծածկեր զարիւն մարմնոյ իմոյ ։*

**Յովբ**

*Ծածկեցէք զիս՝ դուք սօճի՛ք, դուք եղեւի՛նք՝ ստուերդ անթիւ,*
*Թաքուցէ՛ք, ուր ոչ զԱստուած, ոչ ըզհրեշտակ նորա տեսնից ։*

**Միլտոն. Կոր. Դրխտ. Երգ Թ.**

*Հետևեալ բացադարձութիւնը ի բերան ուսանիլ.*

### ՃԱԿԱՏԱԳԻՐ ԱԽԱԳ ԱՐԱՆՑ

*Ո՛ մեծահանճար մարդիկ, ո՛ր երկրի մէջ ալ ըլլիք, ահա ձեր վիճակը. Թշուառութիւնք, հալածանք, անիրաւութիւնք, արհամարհութիւն իշխանաց, ցրտութիւն ժողովրդեան, զրպարտութիւնք ձեր նախանձորդաց կամ նոցա որք զինքեանս նախանձորդ պիտի համարեն ձեզ, կարօտութիւն աղցաւոր պիտոյից, աքսոր եւ թերեւս անծանօթ մահ մի ձեր հայրենի-*

քէն հարիւրաւոր մղոն հեռի. այսոքիկ են ահա բաժինք ձեր վիճակին։ Այլ սորա համար պա՞րտ է ձեզ ձեռնթափ լինել հրահանգելէ զմարդիկ։ Ոչ, անշուշտ. եւ եթէ կամիք իսկ, ձեռնհա՞ս էք միթէ։ Կարո՞ղ էք սանձ դնել ձեր հանճարին, կամ դէմ դնել այն ուժգին եւ ահագին մղման որով կը մղէ զձեզ հանճարն։ Ո՞չ ապաքէն ծնած էք դուք ի խոսկալ, որպէս արեգն ի լուսաւորել. ո՞չ ապաքէն ձեր շարժումն ալ եկամուտ է ի ձեզ իբրեւ զնորայն։ Օ՛ն ուրեմն, հնազանդ կացէք այն օրինաց որ կը տիրէ ձեզ, եւ զգոյշ լերուք եղուկ համարել ձեր անձերը։ Ի՞նչ են ձեր համայն ոսոխները ճշմարտութեան առջեւ. ճշմարտութեան՝ որ յաւիտենական է եւ այլն ամենայն կը սահի կ'երթայ։ Ճշմարտութիւնն է վարձ ձեր վաստակոց. նա է ճարակ ձեր հանճարոյն, եւ նոյն՝ զօրավիգն ձեր աշխատութեանց։ Բազում մարդիկ, կամ ապառումք, կամ անզգայք, կամ բարբարոսք պիտի հալածեն զձեզ եւ անարգեն. այլ եւ շատք եւս հոգեկցորդ եւ համախորհուրդ պիտի լինին ձեզ ծագաց ի ծագս աշխարհի։ Զմտաւ ածէք զի եւ նոքա չարչարակից են ձեզ եւ խորհրդակից. յուշ լիցի ձեզ զի Սոկրատ եւ Պղատոն, երկու հազար ամօք յառաջ գրուեալք ի կենաց, ձեր բարեկամներն են. յուշ լիցի ձեզ զի ապագայ դարուց մէջ պիտի գտնուին այլ հոգիք որք խելամուտ պիտի լինին ձեր բանից, եւ ձեզ հանգոյն պիտի խորհին զամենայնէ։ Մի ազգ եւ մի տոհմ էք դուք եւ համօրէն այլ աւագ արք որք եղան եւ որք պիտի գան մի օր։ Ձեր ճակատագիրն չէ զետղ առնուլ կալ եւ մնալ այս ինչ վայրի կամ այն ինչ ժամանակի մէջ միայն. ապրեցէ՛ք դուք համայն աշխարհաց եւ համօրէն դարուց համար. ծաւալամիտ տարածեցէք ձեր կեանքը հանուր մարդկային ազգին կենաց

վերայ . ամբարձէք ձեր մտքերն ի բարձունս եւ եւս. չէ՞ք տեսներ այն նմանութիւնն զոր ունի ձեր հոգին ընդ Աստուծոյ։ Ի՛նչ, Աստուած կը տեսնէ զձեզ, ունկընդիր կը լինի ձեզ, կը հաճի ձեզ եւ դուք թշուառ պիտի լինիք։ Հուսկ յետոյ, եթէ մարդկան վկայութեան պէտք ունիք, կը համարձակիմ խոստանալ զայն. ոչ եթէ այն անզօր եւ անստոյգ վկայութիւնն այս վաղանցիկ եւ արագասահ կենաց, այլ այն՝ որ տիեզերական է եւ մշտատեւ ընդ դարս բազմահոլովս։ Դէտակն կացէք, տեսէք ի՛նչպէս յառաջ կը խաղայ ապագայ սերունդն եւ կ'ըսէ առ մէն մի ի ձէնջ. «Սրբէ արտասուքդ, կուգամ իրաւունս առնել քեզ, եւ վախճան տալ քո տառապանաց. ես եմ որ կենդանութիւն կուտամ աւագ արանց. ես եմ որ Տեքարդայ վրէժը լուծեցի ի Նոցանէ՝ որք չարաչար կը թշնամանէին զայն. ես եմ որ Նորա աճիւնն ապառաժուտ եւ ձիւնախաղաղ լեռներէն ի Փարիզ փոխադրեցի. ես եմ որ կը կափահարեմ բանսարկուներն եւ բնաջինջ բնաբարձ կ'ընեմ բռնակալներն. ես եմ որ անարգանօք կը նայիմ այն հոյակապ եւ գեղաշուք շիրմաց՝ որք կանգնուած են ի պատիւ իշխանաց աշխարհի, եւ կը պատուեմ կը մեծարեմ, իբր սրբազան, այն անտաշ, անկոփ եւ անողորկ վէմն՝ որ կը ծածկէ հանճարեղին աճիւնն։ Յուշ լիցի քեզ, զի անմահ է քո հոգին, անմահ պիտի լինի եւ անունդ։ Ժամանակը խոյս տալով կը սրանայ, վայրկեանք կը յաջորդեն միմեանց, եւ կենաց երազն կը սահի արագաթռիչ։ Սուղ ինչ սպասէ, եւ պիտի ապրիս դու. եւ պիտի ներես անիրաւութեանց քո դարուն, անգթութեան քո հարստահարչաց, եւ բնութեան՝ զի զքեզ ընտրեց հրահանգելու եւ խրատելու համար զմարդիկ։»

**Ա.Երուան-Լէոնար Թոմաս**

### ԲԱՑԱԴԱՐՁՈՒԹԵԱՆ ԱՅԼ ՕՐԻՆԱԿՆԵՐ

1. *Առ. գիշեր.* — (*Հայկ Դիւց. ԺԵ. 1*)։
2. *Առ. լոյս.* —(*Միլտոն. Կորս. Դրխ. Գիրք Գ. 1—26*)։
3. *Առ. Արամազդ, առ. արեգակն եւն.* —(*Հոմ. Իլի. Գ.*)։
4. *Առ. ծով.* — (*Լ. Պայրն. յԻտալիա ՃՀԹ. Թարգ. Հ. Ղ. Ալիշան*)։
5. *Առ. Նիզակն.* —(*Վիրգ. Ենէ. ԺԲ. 95*)։
6. *Առ. բանաստեղծս.* — (*Ռ. Ց. Պէրպէրեան. տես Ա. հատոր յ Վսեմի օրինակաց մէջ*)։

## Է. ԴԻՄԱՌՆՈՒԹԻՒՆ

*Հ. Ի՞նչ է Դիմառնութիւնն.*

*Պ. Դիմառնութիւնը գործել և խօսել կուտայ իրական և մտացածին էակաց, բացակայից, անշունչ իրաց և մեռելոց իսկ՝ կեանք և զգացում տալով նոցա։ Այս ձեւին գործածութիւնը դըժուարին է, միջակութիւն չընդունիր նա, պէտք է որ միշտ զօրաւոր ազդեցութիւն մի յառաջ բերէ, ապա թէ ոչ ցուրտ ու սառուցիկ կ'երեւի. զոր օրինակ,*

*Ցերկնից ճակատեցան աստեղք, յիւրաքանչիւր յօրինուածոց եւոուն պատերազմ ընդ Սիսարայ. Հեղեղատն Կիսոնի մերժեաց զնոսա։*

**Դեբովրա**

*Մինչեւ յե՞րբ կոտորեսցես սուրդ Տեառն, դարձիր ի պատեանս քո, դադարեա եւ վերացիր։*

**Երեմ. Գլ. ԽԵ.**

*Աշակերտք հետեւեալ Դիմառնութեան օրինակն ի բերան ուսանին։*

## ՖԱԲՐԻԿԻՈՍ ԱՌ ՀՌՈՎՄԱՑԵՑԻՍ

*Ո՛վ Ֆաբրիկիոս, ի՞նչ պիտի խորհէր ձեր վեհ հոգին, եթէ, ի թշուառութիւն ձեր, վերակոչուելով ի կեանս, տեսնէիք այն պերճաշուք Հռոմն զոր ձեր բազուկն ազատեց, եւ զոր ձեր պատկառելի անունն հոյակապ ըրած էր իւր նուաճած բոլոր երկիրներէն աւելի, «Ո՛վ դիք, պիտի ըսէիք, ի՞նչ եղան այն յարդածածուկ հիւղերն եւ գեղջկական տնակներն յորս երբեմն զգաստութիւն եւ առաքինութիւն կը բնակէին։ Ի՛նչ աղիտաբեր պերճութիւն յաջորդած է Հռոմէական պարզութեան։ Ի՛նչ է այս օտար բարբառն. ի՛նչ են այս կանացի եւ խենէշ բարք. ի՛նչ կը նշանակեն այս արձաններն, այս նկարներն, այս շէնքերն։ Պանդո՛յրք, ի՛նչ ըրիք։ Դուք, տէարք ազգաց, գերի ըրած էք ձեր անձերն այն նանրախորհուրդ մարդոց զորս երբեմն ընդ բռամբ նուաճեցիք։ Արդ ճոռոմախօս ճամարտակներ կը կառավարեն զձեզ. ճարտարապետներ, նկարիչներ, քանդակագործներ եւ հտպիտներ հարըստացունելու համար ոռոգեցիք ձեր արեամբ զՅունաստան եւ զԱսիա։ Կարքեդոնի կողոպուտներն սրնգահարի մի որսն եղած են։*

*Հռովմայեցի՛ք, աճապարեցէք կործանելու այդ անփիթատրները. խորտակեցէք այդ մարմարիոնները, հրձիգ ըրէք այդ նկարներն, վանեցէք այդ գերիներն որք կը տիրեն ձեզ եւ որոց եղծագործ աղէտաբեր արուեստներն զձեզ կ'ապականեն։ Թող այլ ձեռքեր երեւելի լինին ունայն տաղանդներով. Հռովմայեցւոց արժանի միակ տաղանդն է, տիրել աշխարհի եւ զառաքինութիւնը թագաւորեցունել անդ։ Երբոր Կինէաս մեր ծերակոյտը թագաւորաց ժողով կարծեց, ոչ սնոտի պերճութեամբ եւ ոչ սեթեւեթեալ վայելչու-*

*թեամբ շլացած էր, ՙնա չլսեց անդ բնաւ այն սնոտի պերճախօսութիւնն, ունայնամիտ մարդոց այս ուսումն։ Ուրեմն Կինէաս ի՞նչ չքեղ բան տեսաւ անդ. ո՛վ քաղաքացիք, տեսաւ նա անդ տեսարան մի զոր չպիտի ընծայեն երբեք ոչ ձեր ճոխութիւնք եւ ոչ ձեր համայն արուեստք, չքնաղագոյն տեսարանն էր այն որ երբեք երեւեցաւ ընդ արեգակամբ։ Ժողովն էր երկերիւր առաքինի մարդկան որք արժանի էին հրամայելու Հռովմայ եւ կառավարելու զերկիր։*

**Ժան-Ժագ Ռուսոյ**



## 2. ԿԵՂԾԻՔ ՊԱՐՈՒՆԱԿՈՂ ՁԵՒԵՐ

*Հ. Ո՞րք են կեղծիք պարունակող ձեւերն.*

*Պ. Կեղծիք պարունակող ձեւերն այնոքիկ են յորս միտքը տեսակ մի խորամանկութիւն կամ արուեստ ի գործ կը դնէ, կէս մի պատրուակելով խօսքը, կամ կէս մի կամաւ մութ ձգելով, կամ թողլով որ այլք գուշակեն զայն և կամ ուրիշ ազգի ազգի դարձուածներ տալով նմա։ Այս ձեւոց գլխաւորներն են.* Ա. ***Հարցումն*** (Interrogation). Բ. ***Տարակուսութիւն*** (Dubitation) Գ. ***Զանցառութիւն*** (Prétérition ou Prétermission). Դ. ***Լռութիւն*** (Réticence). Ե. ***Ուղղութիւն*** (Correction). Զ. ***Կախումն*** (Suspension). Է. ***Ենթադրութիւն*** (Hypothèse ou Supposition). Ը. ***Չափազանցութիւն*** (Hyperbole). Թ. ***Հեգնութիւն***

(Ironie). Ժ. Հաղորդակցութիւն (Communication) ԺԱ. Շնորհումն (Concession). ԺԲ. Թոյլտուութիւն (Permission). ԺԳ. Կանխումն (Prolepse)։

### Ա. ՀԱՐՑՈՒՄՆ

*Հ. Ի՞նչ է Հարցումն.*

*Պ. Հարցումն հարցական եղանակաւ խօսելու ձեւ մի է, ոչ թէ սակայն իրական տարակոյս մի յայտնելու և հետեւաբար պատասխան մի ընդունելու համար, զի յայնժամ պարզապէս հարցական ձեւ մի կը լինէր նախադասութեան, այլ ընդհակառակն աւելի խոր համոզում մի ցուցնելու համար։ Այս ձեւով՝ որ յատուկ է կիրք բացատրելու, ճարտարախօսն, հոգի, կրակ, արագութիւն և ուժգնութիւն կուտայ իւր խօսից և այսու՝ հզօր ներգործութիւն մի կ'ընէ ունկնդրին սրտին ու մտքին վերայ։ Զոր օրինակ,*

*Ո՞վ ըսաւ արփւոյն. «Ել յոչընչէն եւ առաջնորդ լեր տուընջեան,» եւ լուսնին. «Երեւցիր եւ լեր ջահ գիշերոյ։» Ո՞վ գոյութիւն եւ անուն տուաւ այն յոգնահոյլ աստեղաց որք նշուլագեղ պայծառութեամբ կը զարդարեն երկնից հաստատութիւնն, եւ որք մէն մի արեգակունք են լուսատու՝ այլ աշխարհներու։ Ո՞վ է այն ճարտարապետն. ոյր ամենակարող զօրութիւնը գործեց այն զարմանակերտ յօրինուածներն յորս մարդկային բանին հպարտութիւնը յապուշ կը կրթի եւ կը կորնչի մոլորահետ։ Ո՞վ, բաց ի Տիեզերաց ամենիշխան արարչէն, կրնար գործել զայն ամենայն։ Մարթ էր նոցա լինել արգասիք դիպուածոյ կամ ինքնածին*

*ի չգոյէ։ Եւ ամպարիշտն այնքան պիտի յուսահատի՞ որ չէին եւ չգոյին տայ այն ամենակարող զօրութիւնը զոր կը ժպրհի զլանալ Էին եւ Գոյին, որով ամէն ինչ եկն ի լինել եւ ի գոյանալ։*

**Մասիլեօն**

## Բ. ՏԱՐԱԿՈՒՍՈՒԹԻՒՆ

*Հ. Ի՞նչ է Տարակուսութիւնն.*

*Պ. Տարակուսութիւնը ձեւ մի է որով ճարտարախօսն ինչ ըսելիքը կամ ընելիքը չգիտեր կամ՝ չը գիտնալ կը կեղծէ, վարանայոյզ կը տագնապի, և այսու ունկնդրաց ուշադրութիւնն և միանգամայն հետաքրքրութիւնը կը զարթուցանէ. զոր օրինակ,*

*Եւ արդ ո՞ւստի հաւանեցուցից զձեզ, ոչ գիտեմ. զա՞յն ասացից՝ թէ որդն նոցա ոչ վախճանի եւ հուրն ոչ շիջանի, թէ զմիւսն որ ասիցէ՝ թէ երթիցեն ի հուրն յաւիտենից։ Եթէ զմեծատունն ածեալ կացուցից առաջի, եւ տակաւին ասիցէք թէ՝ վասն սպառնալեաց ասացեալ է։ Եւ արդ ո՞ւստի հաւանեցուցից զձեզ։ Սատանայի միտք են այդ, անօգուտ շնորհ շնորհեալ՝ որ ամենեւին ծոյլս կազմէ. եւ արդ ո՞ւստի բառնայցեմք զայն ի միջոյ. որչափ եւ ասիցեմք ի գրոց, ասէք՝ վասն սպառնալեաց է։ Այլ զայլոց զհանդերձելոցն թերեւս մարթիցէ ոք ասել. զանցելոցն եւ ի գլուխ ելելոցն՝ ոչ եւս։ Լուարուք զՋրհեղեղէն, միթէ այն վասն սպառնալեա՞ց ինչ ասացաւ, եւ չեղե՞ւ եւ չե՞լ ի գլուխ։*

**Ոսկեբերան**

Տես նաեւ յԵնէականին Վիրգիլեայ (Գիրք Դ. 529—548) Դիդէի տարակոյսն ու վարանումը յետ փախստեան Ենէասայ:

## Գ. ՋԱՆՑԱՌՈՒԹԻՒՆ

*Հ. Ի՞նչ է Զանցառութիւնն.*

*Պ. Զանցառութիւնը ձեւ մի է որով կը կեղծէ ոք լռութեամբ կամ հարեւանցի անցնիլ ինչ ինչ կէտեր զորս սակայն ոչ նուազ ուժգնութեամբ և մեկնապէս կը յայտնէ ։ Զոր օրինակ,*

### ՄԱԹԱՆ ԱՌ ՆԱԲԱԼ

*Զի՞նչ հարկ. ո՛ Նաբալ, քեզ յանդիման առնել յուշ*
*Զանձին եւ զՅովիդայեայ կագ եւ կըռիւ մեծամեծս,*
*Յորժամ ես մըրցել ընդ իւր ըզբուրվառէն իշխեցի ,*
*Ըզհնարս իմ եւ զպայքար, զօղբ եւ զանյոյսն իմ*
*տագնապ ։*

**Ռասին.** Ողբերգ. Գործ. Գ. 3

*Այլ օրինակ.*

*«Զպիտի մանրապատում ընեմ իւր (Կալիգուլայի) խըժդըժութիւնները. չպիտի խօսիմ իւր խօլ եւ յիմարական ծախուց վերայ, իւր մոլեկան սիրոյն վերայ զոր ունեցաւ ձիու մի համար զոր կ'սպառնար հիւպատոս ընել. իւր տաճարներուն վերայ զորս իւր անձին կը կանգնէր, որոց ինքն էր քուրմն եւ որոց քրմապետութիւնը մեծագնի կը վաճառէր մեծափարթամ քաղաքացւոց. իւր պաշտօնատար լինելուն վերայ մերթ Արամազդայ, մերթ Հերմէսի, մերթ Հերայի, այլովքն հանդերձ։ Այս բաները ճշմարտանման չպիտի թուէին եթէ չգիտցուէր որ չամբուշ բնակալ մի ամէն բանի յանդգնելու համար եղած է եւ սորուկ ժողովուրդ մի ամէն բան կրելու։*

**Ռոնեսիյեազ**

### Դ. ԼՌՈՒԹԻՒՆ

Հ. Ի՞նչ է Լռութիւնն.

Պ. Լռութիւնը ձեւ մի է որով յանկարծ կ'ընդհատեմք մեր խօսքը յայլ ինչ անցնելու համար. այնպէս, սակայն, զի արդէն ըսուածն ըստ բաւականին իմացունէ ինչ որ լռել կը կեղծուի: Այս կեղծ և խորհրդաւոր լռութիւնն յաճախ աւելի պերճախօս է քան խօսքն, զի ոչ միայն կ'իմացունէ ինչ որ մարդ կը վարանի ըսել, այլ և աւելին քան զոր պիտի ըսէր: Զոր օրինակ,

Ո՜վ Ոդիսեւս, պատճառ վշտաց իմոց, իցիւ զքեզ դիք... այլ չլսեն ինձ դիք:

**Ֆենելոն.** Տելեմաք

ԳՈԹՈՂԻԱ ԱՌ ՑՈՎԻԴԱՑԷ

Ինձ արժան էր ի սեղան անդր ուր քո ձեռըն զենու,
Ըզքեզ... այլ չատանալ հարկ է զընովքըն զոր տաս:

**Ռասին.** Գոթող. Ե. 5

### Ե. ՈՒՂՂՈՒԹԻՒՆ

Հ. Ի՞նչ է Ուղղութիւնն.

Պ. Ուղղութիւնն է յետս դառնալ իւր ըսածին վերայ իբր ուզելով ըսել այլազգ կամ լաւագոյն և ազդողագոյն ևս քան զոր յառաջ բացատրած էր: Այս ձեւն ընդհանրապէս կ'սկսի Ո՛չ կ'ըսեմ, կը սխալիմ, մանաւանդ Թէ և ուրիշ ասոնց նման բացատրութեամբք:

Հիւկոյի Անճէլօ անուն բանագործութեան մէջ

Դիզպէ իւր մանկութիւնը կը պատմէ Անճէլօյի, Բատուայի բռնաւորին.

«Գիտէ՞ք ինչ է մայր մի ունենալն. դուք եւս ունեցած էք. գիտէ՞ք ինչ է տղայ լինելն. հէք մանուկ, տկար, մերկ, չուառ, նօթի, միայնակ յերկրի, եւ զգալ թէ ունիս քո քով, քո շուրջն, քո վերեւն քայլող երբ դու կը քայլես, կեցող երբ դու կը կենաս, ժպտող երբ դու կ'արտասուես, կին մի...— ոչ, դեռ չգիտցուիր թէ կին մի է այն, — հրեշտակ մի որ հոն է, որ քեզ կը նայի, որ քեզ խօսիլ կ'ուսուցանէ, որ քեզ խնդալ կ'ուսուցանէ, որ քեզ սիրել կ'ուսուցանէ. որ մատներդ կը ջեռուցանէ իւր ձեռաց մէջ, մարմինդ՝ իւր ծնգաց մէջ, հոգիդ՝ իւր սրտին մէջ. որ քեզ կուտայ իւր կաթն՝ երբ փոքր ես, իւր հացն երբ մեծ ես, իւր կեանքն միշտ եւ հանապազ, առ որ դու մայր իմ, կ'ըսես, եւ որ կ'ըսէ քեզ, որդեակ իմ, այնքան անուշ կերպիւ, զի սոյն երկու բառերն կ'ուրախացունեն զԱստուած։

Պօսիւէ Հենրիկ. Աննայի վերայ խօսած դամբանական ճառին մէջ հետեւեալ Ուղղութեան ձեւը կը գործածէ։

Ո՛չ. յետ գամ մի զայս տեսանելոյ մեր, առողջութիւն չէ ինչ՝ բայց անուն եւ եթ, կեանքն՝ երազ, փառքն՝ երեւոյթ, շնորհքն եւ հաճոյք՝ վտանգաւոր զբօսանք. ամենայն ինչ սնոտի է ի մեզ՝ բաց յանկեղծ խոստովանութենէ ընդունայնութեանցս առաջի Աստուծոյ, եւ ի հաստատուն խորհրդոց արհամարհելոյ զամենայն որ ինչ եւ եմքս։

Այլ միթէ զճշմարտութի՞ւն խօսեցիմ. զոր ի պատկեր իւր արար Աստուած զմարդն՝ միթէ ստուե՞ր եւ-

եթ իցէ. զոր յե՛րկնից յերկիր եկն խնդրել Յիսուս Քրիստոս, զոր ոչ անարգութիւն համարեցաւ գնել բոլորով իւրով արեամբն, զի՞նչ եւ եթ իցէ։ Աղէ, ի միտս եկեսցուք ի մոլորութենէս. ապաքէն պատրէ զմեզ այս տխուր տեսիլ մարդկային ունայնութեանց. եւ յոյս աշխարհիս ի դերեւ ելեալ յանկարծոյն մահուամբ տիկնոջս՝ անդրագոյնս վարէ զմեզ։ Ոչ ներելի է մարդոյս խոտել բոլորովին զանձն, զուցէ ընդ ամբարիշտսն խաղ լինի ի ձեռս դիպուածոյ վարկուցեալ զկեանս, ստերիւր եւ ստահակ գնայցէ ըստ կամս դաչացու յօժարութեանցն։

## Զ. ԿԱԽՈՒՄՆ

Հ. Ի՞նչ է Կախումն.

Պ. Կախումը ձեւ մի է որով յերկբայս կը թողումք ունկնդրին միտքը, այլեւայլ դարձուածներով ուշացունելով մեր ըսելիքը. այսու աւելի կը զարթուցանեմք նորա միտքը, և աւելի ազդեցիկ՝ կ'ընեմք մեր խօսքը ներկայացունելով նմա ապա մտածում մի բնաւին հակառակ այնմ որում կ'սպասէր։ Կախումը անազդեցիկ և ծաղրելի իսկ կը լինի եթէ յառաջ բերուած մտածումը չէ բաւական զօրեղ և արժանի այն հետաքրքրութեան զոր ուզեցինք շարժել. ի բաց առեալ այն պարագայն յորում առ զուարճութեան սովորական մտածում մի յառաջ կը բերեմք։ Զոր օրինակ,

Բազում ամօք յառաջ, դուստր իմ, յաշխարհ եկաւ արարած մի որ սահմանուած էր սիրել զքեզ առաւել քան զամենայն ինչ։ Կ'աղաչեմ զի երեւակայութիւնդ

*ոչ յաջ եւ ոչ ի ձախ յածի. այս ծրարածը ... ես խակ էի։*

**Տն. տը Սէվինէ**

*Քանի՛ անգամ նա (Հէնրիկէ դշխոյն Բրիտանիոյ) շնորհակալ եղաւ սաստ խոնարհաբար Աստուծոյ՝ երկու մեծամեծ շնորհաց համար, մին՝ զի Քրիստոնեայ ստեղծեց զինքը, եւ միւսն .. ի՞նչ կը յուսաք, Տեարք, թերեւս զի իւր թագաւոր որդւոյն իրե՞րը պատրաստեց։ Ո՛չ, այլ զի թշուառ դշխոյ մի ըրաւ զինքն։*

**Պոսիւէ**

Տես նաեւ ի Կորուսց դրախտին Միլտոնի, Գիրք. Դ. 299—606։

## Է. ԵՆԹԱԴՐՈՒԹԻՒՆ

*Հ. Ի՞նչ է ենթադրութիւնն.*

*Պ. Ենթադրութիւնը ձեւ մի է որով կ՚ենթադրեմք իր մի կարելի, և մերթ անկարելի իսկ, և յետոյ հետեւութիւն մի կը հանեմք յայնմանէ։ Այս ձեւը շատ ազդու կ՚ըլնէ. գրուածոյն եթէ նոր և ճարտարութեամբ գործածուած լինի։ Զոր օրինակ,*

*Ա՛րք Կէրնզէցիք, ես չեմ որ կը խօսիմ ձեզ այս պահուն. ես, որ չեմ այլ ինչ բայց միայն հիւլէ մի յափշտակուած եւ տարուած, չէ ինչ փոյթ յոր գիծեր, ի շնչոյ աղէտից։ Նա որ կը խօսի ձեզ այսօր, ըսի ձեզ զայն, բովանդակ քաղաքակրթութիւնն է. նա է որ իւր պատկառելի ձեռներն առ ձեզ կը կարկառէ։ Եթէ տարագրեալն Պէգգարիա լինէր ձեր մէջն, պիտի ըսէր ձեզ, Մահապարտութիւնն հակառակ է Աստուծոյ. եթէ աքսորեալն Ֆրանգլին ապրէր ձեր յարկաց տակ, ձեզ պիտի ըսէր. այն 'օրէնքն*

որ կ՚սպանեն, մի օրէնք է աղիտաբեր. եթէ փախստա-
կանն Ֆիլանճիէրի, եթէ վտարանդեալն Վիքօ, եթէ
վտարեալն Թիւռկօ, եթէ վանեալն Մոնթէսքիէօ, ձեր
յարկաց տակ բնակէին, ձեզ պիտի ըսէին. Կառափ-
նարանը զարշելի է. եթէ Յիսուս Քրիստոս, փախչե-
լով Կայիափայի առջեւէն, ձեր կղզին ելնէր, ձեզ պի-
տի ըսէր. մի հարկաներ սրով. — Եւ Մոնթէսքիէօի,
Թիւռկօյի, Վիքօյի, Ֆիլանճիէրիի, Պէքքարիայի որք
առ ձեզ պիտի գոչէին, Ներո՛ւմ, Յիսուսի Քրիստոսի
որ առ ձեզ պիտի գոչէր, Ներո՛ւմ. պիտի պատաս-
խանէի՞ք, ո՛չ։

Վ. Հիւկօ

Հետաքրքրական բան պիտի լինէր ու շատ զարմա-
նալի՝ եթէ յանկարծ Յիսուս երեւէր մեր մէջ եւ ընտ-
րութիւն ընէր իւր ճշմարիտ հետեւողաց. — Ի՞նչ
դայթակղութիւն. քանի՛ Աստուծոյ տաճարէն դուրս
չելնող ու անոր պատկերին առջեւ ամէն օր մոմ վա-
ռող մարդիկ, քանի՛ Յիսուսի անունը բերնէ չձգող ու
Աւետարանի տուները բերնուց գիտցող անձինք, քանի՛
քանի՛ կրօնի վարդապետք եւ եկեղեցւոյ իշխանք դուրս
պիտի մնային այն ճշմարիտ հաւատացելոց խումբէն
զոր նա պիտի կազմէր։ «Սակայն, ո՛վ Տէր, ո՞չ ապա-
քէն քո սուրբ տաճարիդ պատերն երկիւղածութեամբ
կը համբուրէի ամէն օր ու նուիրական սալաքարերու
փոշւոյն խոնարհութեամբ կը կցէի ճակատս։ — Ի բա՛ց
պիտի գոչէր Յիսուս այն զայրոյթով որով կը գոռար
նա փարիսեցւոց դէմ, ի բաց, կեղծաւոր, տաճարին
մէջ կը խոնարհէիր առջեւս ու դուրսը աղքատին՝ այր-
ւոյն ու որբին անձին վրայ ոտնակոխ կ՚ընէիր զիս։»
«Ո՞չ ապաքէն, պիտի ըսէր մի ուրիշն, ոչ մի պահոց
օր կը պղծէի ու սրբութեամբ մերձենալու համար
քեզ ապաշխարութեան եօթն սաղմոսներն. անվրէպ

կը քաղէի. — Գնա՛, պիտի որոտար Նազովրեցին, գնա՛, խիղճ չըրիր սակայն ճշմարտութիւնը պղծել եւ սուտ ի բերան մատչիլ հանապազ շահու սեղանին։» «Տէ՛ր, միթէ բանիցդ քարոզը չէ՞ր եւ անուանդ օրհներգութիւն։ — Հեռի, բարկացայտ պիտի գոռար Տէրը, հեռի՛, ո՞րն իմ խօսքերէս կատարեցիր դու եւ անունս չըրի՞ր միջոց անարգ շահախնդրութեան։» Եւ իւր աստուածային ժպիտովը պիտի ժպտէր անոնց որք Ապելարներու, Միշէլ Սէրվէներու, Ժօրտանօ Պրիւնօներու յաջորդներն են ու թէպէտ ոչ եւս նոցա նման աքսորանաց մէջ կը հիւծին, բանտերու խորն կը մաշին, խարոյկներու վրայ կը մրկին՝ բայց ոչ նուազ՝ կը բամբասուին ու կը հալածուին թարթիւֆներէ ու նոր թորքուէմատաներէ։

Հրաչեայ. յԵրկրագունդ. Մարդիկ եւ իրք

## Ը. ՉԱՓԱԶԱՆՑՈՒԹԻՒՆ

**1.** Հ. Ի՞նչ է Չափազանցութիւնն.

Պ. Չափազանցութիւնն է իրերն աւուելուլ կամ նուազեցունել քան զչափն. բայց թէ երբ ճշմարտութենէն ի վեր ելնէ եւ թէ երբ ի խոնարհ մնայ, նպատակն է միշտ քաջ եւս ճանչցունել զայն։

Լամընէ ժողովրդեան կրած չարչարանաց թիւը այսպէս կը ներկայացունէ.

«Եթէ համրենք այսքան դարերէ ի վեր ժողովրդեան երկրիս վերայ կրած չարչարանքն որ ոչ բնական օրինաց այլ ընկերութեան ախտից հետեւանքն են, այս չարչարանաց թիւը կը հաւասարի երկրիս ծած-

կող խոտոց թելերուն որ ժողովրդեան արտասուօք ողողեալ են։

Հետեւեալք եւս Չափազանցութեան օրինակներ են.

Լերինք բարձունք Թրակիոյ, որք պճինախաղաղ զսառնապատ գագաթունսն յաւերժականս ծրարեն յամպս, տապալեցին յանդնդալիր ի հիմանցն ի միջակէտ երկրի կայկայելոց, եւ մի երբէք սիրտ արդարոցն այնոցիկ սասանեսցի։

Ֆենելոն (Տելեմաք)

Գոյ հնար թուել զխիճս հեղեղատի, եւ զաւազ ծովու, եւ զշիթս անձրեւի, եւ ոչ զստեղծեալն առ ի քէն նորագիւտ բանս եւ իրս։

Յովհ. Իմաստասէր

Արդարեւ իսկ բազում աշխարանաց արժանի եմք, բազում ողբոց. եթէ ամենայն աշխարհս ձայն առնուցու, զողբս հարկանիցէ, եւ քարինք եւ փայտք եւ ծառք եւ երէք եւ թռչունք եւ ձկունք, եւ ամենեւին ամենայն տիեզերք համօրէն ի ձայն աղի եւ ողորմ աշխարանաց աշխարիցեն, ոչ ինչ արժանի աշխարելոյն աշխարիցեն։

Ոսկեբերան

Գայլն այս կ'ըսէ կը փախչի եւ տակաւին կը վազէ։

Լաֆոնթէն (Առակք)

Հեգնական չափազանցութիւն մի կ'ընեմք երբ ըսենք «Կրայի նման դանդաղաքայլ կ'երթայ» կամ «Հողմէ աւելի արագ կը վազէ» որք բառական նշանակութեամբ չեն առնուիր, բայց միոյն դանդաղութիւնը ու միւսին երագութիւնը ճշդիւ նկարելու ազդողագոյն բացատրութիւնք են։

*Զդ. Հ. Ի՞նչպէս պէտք է գործածել չափազանցութիւնը.*

*Պ. Չափազանցութիւնը պէտք է շատ զգուշութեամբ գործածել. հարկ է որ երեւակայութիւնը եւ մանաւանդ կրից բորբոքումը ստուարացունեն իրերն խօսողին աչքին. այնպէս որ խօսողին բնական թուի տեսնել կամ զգալ զայնս այն չափազանցեալ կերպարանաց տակ և ձեւն աւելի լսողին համար ձև մի լինի։ Այսպէս երբ չափազանցութիւնն աւելի է քան որչափ խօսողը բընականաբար պարտի կամ կարէ մտածել, ձեւնյոռի է, անբնական, տարապայման որ զմեզ ճոռոմաբանութեան կը տանի և ծաղրելի կ'ընէ։*

*Միլտոնի յետագայ տողից մէջ Սատանի խօսքերն՝ թէպէտ սաստկագոյն կամ առաւելազանց՝ յոյժ պատշաճ են սակայն եւ բնական զի մոլեգին եւ յուսահատ հոգւոյ մի պատկերը կ'ընծայեցունեն.*

Վա՜յ ինձ թըշուառիս, ընդ ո՞ր գըտից փախըստի հետս
Ցանըսպառ բարկութենէն եւ յանըսպառ անյուսութեանց ։
Ամենայն ճանապարհ յոր փախնուցում դըժոխք են այն.
Ես ինքնին իսկ եմ դըժոխք, ուր ի խորին անդունդս անդ
Խորագոյն անդունդք են լայն բերանացեալ, սպառնացեալ ցանգ
Կըլանել զիս, առ որ դըժոխքն յորում լըլկիմս՝ երկինք թուին:

*Բայց կնոջ մի վիշտը նկարագրելու առեն ըսել, Անգղիացի թատերգակ հեղինակի մի (Լի). հետ։*

*«Ջայն՝ տախտակամածին վերայ տարածուած գըտայ, վշտաց մրրկին մէջ, այլ միշտ գեղեցիկ։ Այնպէս յորդահոս արտասուք կը թափէր զի եթէ համօրէն աշխարհ. բոցաճարակ հրձիգ լինէր, նորա աչերէն թափած արտասուաց հեղեղը բաւական էր հեղձուցա-*

նել երկնից ցասումը եւ չիջուցանել երկրի հրդեհը։»

Ուսուցիկ եւ ծաղրելի է այս. զի ներելի կը լինէր նոյն իսկ վշտահար անձին սաստիկ չափազանցութիւններ ի կիր արկանել. բայց նմա՝ որ հեռուէն կը դիտէ եւ որ անշուշտ չկարէ տառապելոյն չափ զգածուած լինել, չէ համարձակ խօսիլ միեւնոյն ուժգնութեամբ։

Տես նաեւ ի Հ. Դիւցազն Բագրատունեաց. ԺԹ. 655—665. եւ յԵնէ. Վիրգիլեայ. Է. 814—822։

## Թ. ՀԵԳՆՈՒԹԻՒՆ

**1.** Հ. Ի՞նչ է Հեգնութիւնն.

Պ. Հեգնութիւնը ձեւ մի է որով մարդ իւր խորհածին կամ այլոց իմացունել ուզածին հակառակը կ՚ըսէ. ուստի այս ձեւը, յորում խօսքերն իւրեանց բառական իմաստովը չեն առնուիր, կը ներկայացունէ մերթ դառն պարսաւներ՝ գովեստից պատիր երեւոյթին տակ և մերթ ողոքիչ պատուասիրական խօսքեր՝ պարսաւանաց քօղոյն տակ։ Զոր օրինակ,

Ցոբնաղ հեգնելով Եգիպտացիներն որ ամբարիշտ և անիմաստ կրօնքով ոչ միայն չորքոտանիներ այլ պրասն ու սոխը կը պաշտէին, կ՚ըսէ,

«Ամէն քաղաքաց մէջ շունը կը մեծարեն, իսկ զԱնահիտ ոչ ոք. պրասն ու սոխը կտրել կամ խածնել մեղք է. ո՜վ սուրբ ազգեր, որոց պարտէզներուն մէջ այսպիսի աստուածներ կը բուսնին։»

Եղիա մարգարէն տեսնելով Բահաղու մարգարէներն երբ ողջակէզ կը մատուցանէին նոքա, կ՚այպանէ ու կ՚ըսէ,

«Մեծաձայն կարդացէք, զի Աստուած է. թերեւս զբօսանք ինչ իցեն նմա, եւ միանգամայն թերեւս տանիցէ հրաման, կամ թէ ի քուն իցէ եւ յառնիցէ։»

Ձ՞. Հ. Հեգնութիւնն ի՞նչ պարագայի մէջ նաեւ կը գործածուի.

Պ. Երբեմն հեգնութիւնը կը գործածուի նաեւ բացատրելու համար ցասումն, արհամարհանք, կատաղութիւն և յուսահատութիւն։

«Երբ յետին թշուառութեան կը հասնի ոք, կ'ըսէ Լահարբ, եւ չկարէ գտնել բառ մի որով հնար լինի նմա բացատրել իւր բովանդակ խեղճութիւնը, կը դիմէ հեգնութեան գրեթէ, ինչպէս որ երբ սաստիկ ցաւով մի տանջուի ոք, վայրկեան մի խելքը կը կորուսանէ, եւ չկարենալով արցունք թափել, ահաւոր ծիծաղ մի կը յաջորդէ նմա։»

Սորա մի օրինակը կայ Ռասինի ԱՆՏՐՈՄԱԳ ողբերգութեան մէջ։ Ովրէստ, յետ սպանանելոյ զՊիւռոս զրդմամբ Հերմիոնի զոր կը սիրէ, կ'իմանայ որ սա (Հերմիոն) ինքզինքն սպաններ է նոյն իշխանին դիակին վերայ. իւր յուսահատութիւնը կը յայտնէ սա խօսքերով.

«Շնորհ ունիմ դից. թշուառացայ քան որչափ ոչ ակն ունէի,
Գովեալ լիցիս, ով երկին, զի ոչ երբէք դադարեցար,
Գուն մեծաջան եղեալ անդուլ վասըն իմոյ պատուհասի,
Ի դառնաղէտ թշուառութիւն անդր տարեալ հասուցեր զիս.

Եւ կը վերջացունէ հետեւեալ սոսկալի տողով,

Բաց է ուրեմն, զոհ մեռանիմ, ճակատագիր իմ լըցաւ արդ։»

*Այս, զոհ մեռանիմ, խօսքը՝ Ովրէստի վիճակին մէջ, կատաղութեան վսեմն է։*

ՀԵՏՆՈՒԹԵԱՆ ԱՅԼ ՕՐԻՆԱԿՆԵՐ

**Տես յԻլի. Հոմեր. Թ. 344—351 եւ ԺԶ. 744—749։**
**Տես յՆնէ. Վիրգ. ԺԲ. 366—373։**

## Ժ. ՀԱՂՈՐԴԱԿՑՈՒԹԻՒՆ

*Հ. Ի՞նչ է Հաղորդակցութիւնն.*

*Պ. Հաղորդակցութիւնը ձեւ մի է որով ճարտարախօսն, վստահ իւր իրաւանց վերայ, կը հաղորդէ զայնս ընտանեբար իւր ունկնդրաց, իւր դատաւորաց, իւր հակառակորդին իսկ, վճիռն ինոցանէ սպասելով։ Զոր օրինակ,*

*Զիա՞րդ պաշտիցեմք զարեգակն, որ մերթ կոչի իբրեւ զծառայ առ ի սպասն յոր կարգեցաւ, հասանելոյ. եւ մերթ երթայ զօղէ իբրեւ զարհուրեալ, եւ տայ տեղի խաւարին լնուլ զմիջոց ի մեծի տանս։ Կամ զլուսին որ ամսոյ ամսոյ հիւծանի, գրեթէ եւ մեռանի, եւ ապա սկիզբն առնու կենդանանալոյ, զի քեզ զյարութեան օրինակն նկարիցէ։ Կամ զօդ որ մերթ գոչիցէ վարազացեալ՝ հրամանաւ, եւ մերթ սարսէ ի գոչելոյն սաստիւ։ Եւ կամ զհուր որում եւ զքեզ իսկ երկրորդ արարիչ կազմեաց յօրինիչն, զի յորժամ կամիցիս վառիցես, եւ յորժամ կամիցիս խափուցանիցես։*

**Եզնիկ**

Տես յԻփիգենիին Ռասինի Ա. 2 — Աքիլ. առ Ողիս. «Ո՛հ, մի արդ սեղծցուք... իբր զնոցայն ընթացուք։»

## ԺԱ. ՇՆՈՐՀՈՒՄՆ

*Հ. Ի՞նչ է Շնորհումն.*

*Պ. Շնորհումը ձեւ մի է որով ճարտարախօսը կը շնորհէ կամ կը կեղծէ շնորհել իւր հակառակորդին բան մի զոր կրնար ժխտել, որպէս զի այլուստ զայն աւելի տագնապէ կամ նոյն իսկ այն շնորհումէն նորա դէմ նոր առարկութիւններ հանէ։ Այս ձեւն ընդհանրապէս կը վկայեմ, կը խոստովանիմ, կ'ընդունիմ, կը հաւանիմ, կ'ուզեմ, կը փափաքիմ, ճշմարիտ է որ և ուրիշ ասոնց նման բացատրութեամբք կ'սկսի և յետոյ կուգայ բայց կամ սակայն, և կամ այլ շաղկապով խօսք մի։*

*Պուալոյ արժանիքէ զուրկ եւ միայն իւրեանց նախնեօքը պարծող ազնուականաց վերայ խօսելով կ'ըսէ.*

*Կը հաւանիմ զի իւր նախնեաց մեծ մեծ գործեր*
*Հին տարեգրոց մէջ գրուած են յոյժ գեր ի վեր.*
*Եւ Կապետեան մ'ալ, ի պատիւ նոցա անուան,*
*Ցերիս շուշանս պճնազարդեց նոցա վահան.*
*Այլ ի՞նչ օգուտ ունայն փառաց այս դէզ սնոտի*
*Եթէ, այնքան դիւցազներումն մեծ անուանի,*
*Տիեզերաց առջեւ չկարէ այլ ինչ դնել,*
*Բայց որդերէ խընայուած հին մագաղաթներ.*
*Եթէ, թէպէտ աստուածազարմ լինի ցեղէ,*
*Իւր վատ սրտովն այդ վեհ ծագումն ի սուտ հանէ.*
*Եւ սոսկ անմիտ զօռօզութեամբ մեծ երեւցած՝*
*Անհոգ նընջէ անգործութեան մէջ մեղկացած։*

Տես յԻփիգենիին Ռասինի. Ա. 5. Ողիս. առ Ագամ. «Հայր եմ եւ ես... դարուց ի դուրս ապառնեաց.»

## ԺԲ. ԹՈՅԼՏՈՒՈՒԹԻՒՆ

*Հ. Ի՞նչ է Թոյլտուութիւնն.*

*Պ. Թոյլտուութիւնը ձև մի է զոր կը գործածեմք մերթ թողլու համար զոք գործել ըստ կամաց իւրոց երբ կը տեսնեմք զի չէ հնար յետս դարձունել զնա իւր խորհրդէն, մերթ հրաւիրելու համար զինքն դիմել ի ծայրայեղութիւն որպէս զի այսու ի գութ շարժեմք զնա եւ ներշնչեմք ի նա ըրած կամ ընելիք բանին գարշութիւնն։*

*Բայց Իդոմենէս, գլուխն ի վայր խոնարհած, անմռունչ կը կենար. իւր աչաց մէջ կատաղութիւնը կը բորբոքէր, մահատիպ դէմքին գոյնը արագ արագ կը փոխուէր, եւ անդամները կը դողդոջէին։ Իսկ որդին կ՚ըսէր. Ահաւասիկ կեցեր եմ, հայր, ահաւասիկ որդեակդ պատրաստ է ի մահ՝ հաշտեցունելու համար զդիս, աստուածոց բարկութիւնը վրադ մի՛ ձգեր. սիրով կը մեռնիմ ես, զի դու մահուընէ ազատիս. զա՛րկ, հայր իմ, զա՛րկ, մի վախնար վատասիրտ չեմ եւ առաջինի հօրդ անարժան որդի։*

**ՖԵՆԵԼՈՆ** (Տելեմաք)

*Դառնագոյն քան զմահ թուէր ինձ կենցաղն այն, եւ ձայն բարձեալ գոչէի. Սպան զմեզ, տէր արքայ, եւ մի ի դժպատեհդ յայդ վարեր ի կեանս. գիտուն լիցի քեզ զի հանձարեղին Ոդիսեայ որդի եմ Տելեմաք արքային Իթակայ, թափառական ծովէ ի ծով ի խնդիր հօր իմոյ ելեալ. եթէ չիցէ ինձ հնար գտանել զնա, կամ դառնալ ի հայրենիս իմ ազատ ի ծառայութենէ, բարձ յինէն զանտանելի զկեանս զայս։*

**ՆՈՅՆ. Ի ՆՄԻՆ**

*Տես Ա. հատորոյ, ոճոյ փափկութեան օրինակներուն մէջ, Իփիգենիի առ Հայր իւր Ագամեմնոն:*

## ԺԳ. ԿԱՆԽՈՒՄՆ

*Հ. Ի՞նչ է կանխումն.*

*Պ. Կանխումն է ինքնին ի մէջ բերել եւ հերքել յառաջագոյն այն առարկութիւններն զորս կարէ ընել ընդդիմախօսն։ Ճարտար ձեւ մի է այս որ կը տկարացունէ հակառակորդին փաստերն, զէնընկէց կ՚ընէ զնա չեւ ի կիր արկած իւր զէնքերն եւ միանգամայն առիթ կ՚ընծայէ նորանոր նետեր արձակելու ի նա։ Զոր օրինակ,*

*Հարկ է հպարտացելոյն թշնամանիչ լինել եւ հարկանող եւ բարկացող եւ դառն եւ անհամբոյր, գազան մանաւանդ եւ ոչ մարդ։ Ուժգին իցես, եւ յայն սակս մեծամտիցես. թէ այսպէս իցէ, վասն այնորիկ առաւել պարտիս խոնարհիլ։ Զի՞ չնչին իրօքն մեծամտիցես. քանզի եւ առիւծ գազանագոյն քան զքեզ է, եւ վարազ՝ ուժգնագոյն, եւ իբրեւ զմժիս մի ես դու առ նոքօք։ Այլ թերեւս գեղեցիկ իցես եւ բարենշան ոք. եւ այն աղջկանց նազանք են. բայց սակայն քան զսիրամարգ գեղեցիկ չիցես, եւ ոչ այնպէս ծաղկալից համապայծառ թեւս ունիցիս իբրեւ զայն թռչուն, որ վարսիւքն եւ գիսակօքն խրձնացեալ եւ խոզանեալ կարակնեալ բազմաճամուկ տոնոցն յաղթէ քեզ։ Նաեւ փորն կարի իսկ գեղեցիկ է, եւ այլք եւս բազումք ի թռչնոց, ընդ որս թէ կամիցիս անցանել ի հանդիսի՝ ոչ ինչ ամենեւին տեսանիցես զանձն։ Թերեւս զի մեծատուն իցես՝ հպարտանայցես. ուստի՞ իցէ զոր ունիս եւ կամ զինչ ունիցիս. ոսկի, արծաթ, ականս պատուականս. այն եւ աւազակաց եւ սպանողաց պարծանք են եւ ոսկեհանաց*

եւ որ ի քրէական մետաղսն խոնջիցին։ Թերեւս զարդո՞ւք ինչ եւ պատմուճանօք հպարտանայցես. զայն եւ ի ձիան է տեսանել. Պարսիկք եւ զշառաւունսն եւս նկարեն եւ պաճուճեն։ Զամաչե՞ս, չթրջի՞ս այնպիսի իրօք հպարտանալ։

Այլ ի տո՞ւնս ինչ գեղեցիկս պարծիցիս. բազում թռչունք եւս ի գեղեցիկ տունս բնակին. մանաւանդ ճայք եւս առաւել պայծառագոյն քան զքո տունսն ունին բնակութիւնս։ Այլ թերեւս ձայնի՞ւ ինչ հպարտանայցես. քան զփողն եւ զսոխակ եւ զասպուճակ չկարիցես երբեք ձայն ինչ քաղցր եւ հեշտական մրմնջել։ Այլ թերեւս պէս պէս արուեստի՞ւք. եւ ո՞վ ոք յայնմ զմեղուօք զճարտարիկօք անցանիցէ. ո՞ր դրօշող, ո՞ր նկարիչ, ո՞ր գետնաչափ գտանիցի քան զնոսա իմաստուն։ Այլ թերեւս բարա՞կ ինչ հանդերձիւք. այնու սարդք իսկ անցանեն զանցանեն զքեւ։ Այլ թերեւս ոտի՞ց արագութեամբ. եւ այնու եւս անասունք գլեն, մանաւանդ նապաստակքն եւ այծեմունք։ Այլ թերեւս ի տար աշխա՞րհ ինչ երթալով. եւ այնու եւս թռչունք անցանեն զքեւ. մանաւանդ խորդք եւ ծիծառունք, որ դիւրաւ հարկանեն զտարաշխարհական ճանապարհս. ոչ պաշար բառնան եւ ոչ դրաստու կորօսանան։ Այլ թերեւս քաջատեսութեա՞մբ ինչ հպարտանայցես. այլ ոչինչ ժամանես այծեման եւ արծուոյ։ Թերեւս զի արա՞գ լսիցես. այլ չիցես սուր ականջօք քան զէշ։ Եւ թերեւս հո՞տ քաջ առնուցուս. այլ չկարես անցանել զշամբ։ Եւ թերեւս զի գործօն եւ համբերո՞ղ իցես. այլ չես ձեռնհաս լինել անդադար իբրեւ զմրջիւն։ Եւ թերեւս զի ոսկի բազո՞ւմ յանձին ունիցիս. այլ ոչ որպէս զհնդիկ մրջիւնն։ Իսկ առողջութեամբ եւ երագահալութեամբ յոյժ իսկ առաւել են քան զմեզ անասունք։

Ոսկ. Մեկն. Պաւղ. թղթոց

## 3. ԻՄԱՍՏՆԵՐԸ ԶՕՐԱՑՈՒՆՈՂ ՁԵՒԵՐ

*Հ. Ո՞րք են իմաստները զօրացուցող ձեւերն.*

*Պ. Իմաստները զօրացուցող ձեւերն են. Ա. Վճիռ* (Sentence). *Բ. Մակազանչութիւն* (Epiphonème). *Գ. Աստիճանում* (Gradation). *Դ. Նմանութիւն կամ Բաղդատութիւն* (Comparaison). *Ե. Հակադրութիւն* (Antithèse). *Զ. Ետաշրջութիւն* (Régression). *Է. Ակնարկութիւն* (Allusion)։

### Ա. ՎՃԻՌ

*Հ. Ի՞նչ է վճիռն.*

*Պ. Վճիռը գեղեցիկ մտածում մի կամ կարճ ու ազդու խորհրդածութիւն մի է սովորաբար նիւթէն բղխած։ Զոր օրինակ,*

*Ոմանք միայն ձեր պարտքերը կ'ուսուցանեն ձեզ, այլք ձեր իրաւունքները եւեթ կը մեկնեն. Ինչ որ ըստ ինքեան անբաժանելի է, բաժանելը վտանգաւոր է։ Պէտք է որ ճանչնաք թէ՛ ձեր պարտքերը թէ՛ ձեր իրաւունքներն, որպէս զի առաջինները կատարէք եւ վերջինները պաշտպանէք. ուրիշ միջոց չունիք ձեր թշուառութենէն դուրս ելլելու։*

**Լամբնէ**

*Կ'ընդունիմ չափաւոր զարդասիրութիւնը, այլ կը դատապարտեմ պճնամոլութիւնը։ Ազգի մը ընկերական իրաց վտանգաւորներուն մին շռայլութիւնն է։ Դրամ շահիլն ոչ այնքան քաջութիւն մ'է որքան պահելը, եւ պահելու առաջին թէութիւնն է խնայասիրութիւնը։ Պերճանքն ոսկիին ցեցն է։*

**Դր. Զիլինկիրեան**

## Բ. ՄԱԿԱԳԱՆՁՈՒԹԻՒՆ

*Հ. Ի՞նչ է Մակագանչութիւնն.*

*Պ. Մակագանչութիւնը տեսակ մի վճիռ է որ բացագանչական ձեւով կը բացատրուի. և այսու կը տարբերի բուն վճռէն զի մինչդեռ բուն վճիռն կարէ անխտրաբար ամենուրեք դրուիլ, և առանց բացագանչութեան, սա՝ խօսքին վերջը կը դրուի ընդհանրապէս։ Զոր օրինակ,*

*Ամենեքեան կը ցանկան ծերութեան հասնիլ. բայց երբոր հասնին կ'սկսին դարձվել. այնչափ տկար, անմիտ եւ կամակոր են մարդիկ։*

**Կիկերոն**

*Այլ ո՞վ ոչ զարմասցի ընդ անողորմ բախտ դշխոյիս։ Յետ միանգամ ապրելոյ յալեաց, միւս եւս մրրիկ՝ գրեթէ մահահրաւէր եղեւ նմա. հարիւր անօթք ռըմբաձիգք որոտացին ի վերայ նորա ի հասանելն իւր, եւ տունն յոր եմուտ՝ ծակոտեցաւ ի գնդակաց նոցին. մեծ եղեւ արութիւն նորա յահագին վտանգին, բայց մեծ եղեւ եւ գթութիւն նորա առ առաջնորդ դժոխային վիրագութեանն։ Սուղ ինչ յետոյ գերի վարեալ ածաւ այրն, ներեաց նա նմա զոճիրն, եւ փոխանակ ամենայն պատուհասի՝ մատնեաց զնա խղճին իւրում եւ ամօթոյ ձեռս արկանելոյն յարեւ այնպիսի բարւոյ եւ մեծանձն բամբշանն. այնչափ զեր ի վերոյ կայր նա վրէժխնդրութեան, որպէս եւ երկիւղի։*

**Պոսիւէ**

*«Այսօր, այն բազմամբոխ յոգնաշառաչ բազմութեան որ այս կամարակապ գաւթաց տակ կը դիզուէին, մահուան անդորրութիւն մի յաջորդած է եւ գե-*

րեզմանաց լռութիւնն՝ հասարակաց հրապարակներուն աղմկին. վաճառաշահ քաղաքի մի ճոխութիւնն փոխուած է քստմնելի աղքատութեան։ Արքայից պալատները վայրի գազանաց դադար եղած են. ոչխարաց հօտերն տաճարաց սեմոց քով կը մակաղին, եւ զազրաթորմի զեռունք աստուածոց մեհեաններուն սըրբարանին մէջ կը բնակին։... Այսպէս ուրեմն կը կորնչին ձեռակերտք մարդկան։ Այսպէս կը կործանին անհետ կը լինին պետութիւնք, ազգ եւ ազինք։

Վոլնէյ. Աւերակք

Արտաքին գեղեցկութիւնն այնքան կից է ներքին գեղոյն զի շատ անգամ ամենէն չքնաղագեղ դէմքն գծուծ եւ անարգ զգացման մի ներքեւ կը տգեղի եւ կ'այլանդակի, մինչդեռ, ընդհակառակն, բնութենէն անօժիտ դէմք մի վսեմ եւ ազնուական զգացմանց ճառագայթմամբն կը քաղցրանայ, կը գեղերփնի եւ կը յափշտակէ. ա՛յնքան անբաժին է արտաքին իրական գեղեցկութիւնն ներքին շնորհներէն։

Ռ. Ց. Պէրպէրեան

## Գ. ԱՍՏԻՃԱՆՈՒՄՆ

Կարդացէք .հետեւեալներն.

1. Բարեկամներս նախամեծար կը համարիմ քան զիս, ծնողքս՝ քան զբարեկամս, հայրենիքս՝ քան զծնողս, մարդկութիւնը՝ քան զհայրենիս։

Ֆենելոն

2. Եւ ոչ մէկ ժողովրդականութիւն, այս դարուն մէջ, գերազանցեց Աղէքսանդր Տիւմայինը. իւր յաջողութիւնք գերազանց են քան զյաջողութիւնս, յաղթութիւնք են նոքա։ Աղէքսանդր Տիւմայի անունը

*գաղիականէ աւելի է, Եւրոպական է. Եւրոպականէ աւելի է, տիեզերական է։*

**Վ. Հիւկոյ**

3. *Խորհողք առաւել օգտակար են քան զինուորք. որով կը հրահանգուին մարդիկ, բայց գաղափարով կը քաղաքակրթուին։ Թէմիստոկլեսէն մեծ մէկը կայ, Սոկրատն է այն. Կեսարէն մեծ մէկը կայ, Վիրգիլիոսն է այն. Նաբոլէոնէն մեծ մէկը կայ, Վոլթէռն է այն։*

**Նոյն**

4. *Հռովմայեցին կապելն յանցանք է, գանակոծելն ոճիր, խողխողելն գրեթէ հայրասպանութիւն ուրեմն ի խաչ հանելն ի՞նչ է։*

**Կիկերոն**

5. *Սեսոստրի մահն բովանդակ Եգիպտոսը տրտմեցուց. իւրաքանչիւր ընտանիք կը թուէր կորուսած լինել իւր պաշտպանը, իւր ջերմագոյն բարեկամը, իւր հայրը։*

**Ֆէնէլոն. Տելեմաք**

6. *Մեծ ճգունք պէտք չեն իշխանի մի յինքն ձգելու համար սրտերը. խօսք մի միայն, ժպիտ մի լոկ շնորհալից, ակնարկ մի եւեթ բաւական է։*

**Մասիյեօն**

7. *Հարուստներու ճոխութիւնն, դիւցազանց փառքն եւ արքայից մեծվայելչութիւնն՝ այս ամենայն կը վերջանայ* աստ *հանգչի ով։*

**Եունկ**

8. *Կատաղութիւն այնքան երկչոտ է կի որտուման թնդիւնը հրազէնի մի բոմբիւնը, անասնոց մունչիւնը, հողմոց շնչումը, սաղարթուց խարշափիւնը, մթութիւնը, լռութիւնն իսկ կը զարհուրեցունէ զայն։*

**Բ. Լարուս**

1. Հ. Ի՞նչ կը դիտէք վերոգրեալ պարբերութեանց մէջ.

Պ. Կը դիտեմք որ բառից կամ իմաստից մէջ յառաջխաղացութիւն մի կայ՝ իւրեանց զօրութեան կամ տկարութեան աստիճանին համեմատ դասաւորուած։

2դ. Հ. Ի՞նչ կը կոչուի այս ձեւն.

Պ. Աստիճանումն։

3դ. Հ. Ի՞նչ է ուրեմն Աստիճանումն.

Պ. Աստիճանումը ձեւ մի է որով կը ներկայացունեմք շար մի գաղափարաց, պատկերաց կամ զգացմանց որք երթալով կ'աւելնան կամ կը նուազին. ուստի երկու տեսակ Աստիճանումն կայ. Վերելակ Աստիճանումն (Gradation ascendante) և Վայրիջակ Աստիճանումն (Gradation descendante)։

### ՀՐԱՀԱՆԳ 1.

Փակագծեալ շեղագիր բառերով աստիճանում մի կազմել.

1. —, —, — այս զոհը կը պահանջեն ի քէն (իր որդւոց կեանքն. իր շահն. իր պատիւն)։

2. Անձնահաճ կամքը կը տանի զմեզ յանհամբերութիւն, անհամբերութիւնը ի —, — ի —, — ի —, — ի —. եւ, այս աստիճանումով, մարդ աթոռէն կ'երթայ ի կառափնարան (ցասումն, ոճիր. արտմրտութիւն. բռնութիւն)։

3. Յիսուսի Քրիստոսի բարոյականին համեմատ, երանութիւն մի է ժուժել — եւ ներել. աշխարհի

*բարոյականին համեմատ, վատութիւն մի է տանիլ դոյզն* — (նախատանաց · զրկանաց)։

4. *Նա որ կը վախնայ —, ամենուրեք — կը տեսնէ* (խոչընդոտն · դժուարութիւն)։

5. *Գուլիէլմոս Բ. ի գործողութիւնք, ի Պելճիգա, այնչափ — էին կի հետզհետէ — կը գտնային* (համարձակ · յանդուգն)։

6. *Ինչ ինչ չաղղակեր կենդանիք, գայլք, աղուէսք, որ զօրաւոր ճիրաններ չունին, — են եւ նոյն իսկ* — (վատ · երկչոտ)։

7. *Ընտրելոց փոքր թուոյն գաղափարը կարէ — եւ նոյն իսկ — երբ գէշ հասկցուի* (վնասեցուցեալ · յուսահատեցուցեալ)։

8. *Նա որ — այնքան յանցաւոր է որչափ նա որ* — (կը թագուցանէ · կը գողանայ)։

9. *Խելքով, դաստիարակութեամբ, ուղղամտութեամբ եւ բարեհամբոյր վարուք մարդ կարէ ունենալ —. բայց — ունենալու համար պէտք է որ մի հզօր հոգի եւ վեհ նկարագիր ունենայ* (առաքինութիւն · բարեմասնութիւն)։

10. *Մարդը բնութեան խոհուն հայելին է. մի հայելի յորում ամէն ինչ —, ամէն ինչ —, ամէն ինչ* — (կ՚ոգեւորի · կը նկարուի · կը կենդանանայ)։

11. *Կարի բարձր մեծութեանց գագաթէն մարդ* —, — (չիջնէր · կ՚անկնի)։

12. *Մեր հարք բարի վարձակալներ էին եւ կը բնակէին — մէջ. մեք զմեզ վաճառականի կամ արուեստագէտ կոչեցինք, եւ մեզ կանգնեցին —։ Այսօր մեծ սեպուհներ եմք եւ կը կործանենք բոլոր տուները — կառուցանելու համար մեզ. մեր որդիք, խնդալով իւրեանց կարգին մեր պարզմտութեան վերայ, իշխան պիտի կոչեն զինքեանս, եւ նոցա համար պիտի չլինեն* — (ապարանք · դարպասներ · հիւղեր · տուներ)։

13. Թեթեւ — կը խօսին. մեծ — կը պահեն մի տխուր լռութիւն (հոգեր. վիշտեր)։

14. Ով որ չունի — սէր, չպիտի ունենայ երբեք — սէր (ընտանեաց. հայրենեաց)։

15. —, — կամ — մարդոյն իրաւանց՝ են միակ պատճառք հասարակաց թշուառութեանց եւ կառավարութեանց պղծման (մոռացումն. տգիտութիւն. արհամարհանք)։

16. Եթէ — կ՚ապրեցունէ մի երկ, — միայն կ՚արգելու զայն մեռնելէ (հանճարը. խելքը)։

17. Մարդ ոչինչ կարէ ընել իւր —, սակայն ինչ կ՚ընէ իւր —, ամէն ինչ կ՚ընէ իւր — (խելքով. տաղանդով. նկարագրով)։

18. Տեսնել եւ զգալ, — է. խորհիլ, — է (գոյանալ. ապրիլ)։

19. Մարդ մտօք —, սրտով —(կը յարի, կը հաճի)։

20. Խրատը —, օրինակը — (կը համոզէ. ընդ քարշ կը տանի)։

21. Պատուաւոր մարդոյ համար — հաւասարազօր է — (խոստումն, երդումն)։

22. Բան չէ —, պէտք է նաեւ — (տեսնել. կանխատեսնել)։

23. Ցոփի հակամիտութիւնը նախ — է, յետոյ —, յետոյ — (մեր հիւրն. մեր տէրն. անցորդ մի)։

24. Մարդ երբ —, —, — Լա Պրիւյէրի նկարագիրն եւ — նորա վերայ, հիացմամբ կը տեսնէ այն սքանչելի արուեստն եւ անթիւ գեղեցկութիւններն որք զայս գործը գաղղիական լեզուին կատարելագոյն երկոց կարգը կը դասեն (ընթեռնու. խորհրդածէ. ուսումնասիրէ. վերընթեռնու)։

25. Կարճառօտ եղիք, կ՚ըսէ Ովրատիոս, որպէս զի մտքերը շուտով — եւ հաւատարմութեամբ — ինչ որ կ՚ըսէք (ըմբռնեն. պահեն)։

26. *Ապերախտ մարդուն սիրտը նման է անապատի աւազին որ անյագաբար — յերկնից տեղացած անձրեւն, — զայն եւ ոչինչ կ'արտադրէ* (կը կլնէ. կը խմէ)։

27. *Միջին դարու մէջ ամէն —, ամէն —, ամէն — ամրացած էին* (աւանք. գիւղք. քաղաքք)։

28. *Լեզուաց կազմութեան մէջ երեք շրջաններ եղած են։ Ա. — լեզու. Բ. — լեզու. Գ. — լեզու* (գրաւոր. մնչկատակ. խօսեալ)։

29. *Խոհականութիւնը կը նախաճաշէ — հետ, կը ճաշէ — հետ, կ'ընթրէ — հետ, եւ կ'երթայ պառկելու — հետ* (մահուան. առատութեան. աղքատութեան. թշուառութեան)։

30. *Աշխարհ մի թատր է. մարդ —, —, — եւ —* (կը ձանձրանայ. կը մտնէ. կը զննէ. դուրս կ'ելնէ)։

31. *Եթէ հարստութիւնը խելք չ—, գոնէ կ'ընէ որ այլք մեզ անկէ կը —* (տալ. վերագրել)։

32. *Միթէ մայր եկեղեցեաց զանգակք աւելի՞ բարձր կը խօսին քան զանգակք գիւղից, եւ — մի այլ Քրիստոս է քան —* (փայտեայ Քրիստոսն. ոսկեայ Քրիստոսն)։

33. *Փիլիսոփայութիւնը կարէ — եւ — ոմանց այն մեծ գաղափարներէն որոց վերայ հիմնեալ է կրօնքն* (հետամտիլ. հասնիլ):

34. *Ժողովրդեան առաքինութեանց համար — ինչ գործեցէք, պիտոյից համար՝ —, իսկ հաճոյից համար՝ —* (բաւական. սակաւ. շատ)։

35. *Կիրքերն իւրեանց առաջին աստիճանին մէջ —, երկրորդին մէջ —, երրորդին մէջ —* (կը պահանջեն. կը բռնադատեն. կը խնդրեն)։

36. *Ջմարդիկ խողխողելով ոսկի ստանալն — է, ծովու վտանգաց մէջ երթալ զայն փնտրելն — է,*

ապականութեամբ եւ մոլութեամբ զայն դիզելն — է (յիմարութիւն. ոճիր. վատութիւն)։

### Դ. ՆՄԱՆՈՒԹԻՒՆ ԿԱՄ ԲԱՂԴԱՏՈՒԹԻՒՆ

**1**. Ի՞նչ է Նմանութիւնը կամ Բաղդատութիւնը

Պ. Նմանութիւն կամ Բաղդատութիւն կըսուի այն ձեւին որով իրերաց կը մօտեցունեմք երկու իր կամ երկու գաղափար որ մէկ կամ մէկէ աւելի կողմերով միմեանց կը նմանին։ Այս ձեւը՝ կը ծառայէ կամ ոճը զարդարուն և վայելուչ գործելու կամ գաղափարները պարզելու, լուսաւորելու եւ կամ փաստերը զօրացունելու։ Մանաւանդ բանաստեղծութեան մէջ յաճախ կը գործածուի գեղեցիկ, պերճ եւ աղդու նմանութիւններ։ Եթէ ըսեմք

Այս դիւցազնը կը դիմէ ի մարտ.
Այս մանուկը գեղեցիկ է.
Այս մարդն արագոտն է.

Քաջութեան, գեղեցկութեան եւ արագութեան գաղափարները կարի տկար կերպով բացատրուած են եւ տարօրինակ բան մի չյայտնեն։ Բայց երբ ըսեմք

Այս դիւցազնը կը դիմէ ի մարտ . . . իբրեւ առիւծ
Այս մանուկը գեղեցիկ է . . . . . . . իբրեւ աստղ
Այս մարդն արագոտն է . . . . . . . իբրեւ եղջերու

Դիւցազնին՝ առիւծին հետ, մանկան՝ աստղին հետ, մարդուն՝ եղջերուին հետ նմանութիւններն առաւել զգալի ըրին այն յատկութիւնները զորս կուզէինք տալ յիշեալ երեք անհատներուն։

**2**. Հ. Նմանութեան մէջ Ենթակայ և Եզր ո՞ր բառերուն կըսուի.

Գ. Նմանութեան մէջ այն բառը զոր կը նմանցունեմք մի ուրիշ բառի՝ կ՚ըսուի ենթակայ եւ այն որուն կը նմանցունեմք ենթակայն կ՚ըսուի եզր. վերոգրեալ օրինակաց մէջ դիւցազն, մանուկ եւ մարդ բառերն նմանութեան ենթականերն, իսկ առիւծ, աստղ, եղջերու բառերն եզրերն են։

3ᵍ. Հ. Բաղդատութիւնը երբ ճոխ կ՚ըսուի,

Գ. Բաղդատութիւնը ճոխ կ՚ըսուի երբ երկու իրաց մէջ գտնուած այլեւայլ նման պարագաները ընդլայնելով կը նկարագրեմք. այս տեսակ բաղդատութիւնք հոմերական կը կոչուին, զոր օրինակ։

Ջրազմազոչ ծովափամբն որպէս յորժամ անդրնդոց վէտք
Ըզմիմեամբք կուտակին յարեւմտից յուզեալ հողմոյն.
Նախ ի խորս անդ զիզացեալ եւ խորտակեալ ապա յերկիր՝
Մեծամեծս մռընչեն, եւ ուռուցիկ լեռնակարկառ
Ցառուցեալ զսարաւանդօք բըքնուն զաղի ծովուն փրփուր,
Այսպէս յայնժամ խուռներթաց դանայեցւոց դըրդէին գունդք
Անդադար ի պատերազմ.......:

Հոմերոս. Իլիակ. Դ. 422

Փակեալ (Իդոմենէս) ի խորս արքունեացն, Հառաչանս 'ի խորոց սրտէ գերարտասուալից գեղձմամբ արձակէր, զոյէտս իսկ կերակրոյն ի մոռացօնս արկեալ. քուն ոչ առնքէր զաղեկէզ վիշտս նորա, եւ հալէր մաշէր ի տառապանացն։ Հանգոյն ծառոյ մեծի՝ որ հովանեաւ սաղարթախիտ ոստոցն ծածկիցէ զերկիր, եւ ուտիճ ի բունն նորա անկեալ, զփափուկ փտարմն՝ որք զհիւթն ծծեն ստածիչ՝ կրծել սկսանիցի, ծառն այն անդրդուելի ի մրրկաց, որում երկիր արգաւանդ մըտադիւր մատուցանէրն սնունդ, եւ յոր փոյտատ մայրեւորի լինայեայն միշտ, նրթոյ եւ ոկարանայ ա-

*ռանց ուրուք զախտին կարելոյ գուշակել զպատճառս, թառամի կայտի ի սաղարթագեղ փառացն, եւ կոճղ մերկ արժանանայ հերձոտ կեղեւանօքն եւ գօս ուղէշիւք. այսպիսի Իդոմենէս ի վիշտս երեւէր։*

**Ֆենելոն**. Տելեմաք

*Մերովէ, արեանց ճապաղեօք յագեցած եւ իւր յաղթական կառաց վերայ անխլիրտ կեցած, դէտակն կը նայէր այն դիականց վերայ զորս դաշտին մէջ սփռած էր։ Այսպէս կը հանգչի նումիդեան առիւծն, ոչխարաց հօտ մի գէշագէշ պատառելէ յետոյ. իւր քաղցն անցած է, եւ նախճրին հոտը իւր սրտէն կը բուրէ. մերթ կը բանայ եւ մերթ կը փակէ իւր պարտասեալ բերանը, ուր դեռ եւս կը տեսնուին գեղման ծուէններն. հուսկ ուրեմն կ'ընկողմանի փողոտեալ գառանց մէջ, իւր բաշերն վարդագոյն արեամբ ողողեալ, կ'իյնան յայս կոյս եւ յայն իւր պարանոցին վերայ. իւր զօրեղ ճիրաններն իրարու վերայ կը տարածէ, եւ գլուխն իւր մագլացը վերայ խոնարհեցունելով՝ կիսաբաց աչօք դեռ եւս կը լիզու շուրջը տարածուած կակուղ գեղմերն։*

**Շաթօպրիան**. Վկայք

## ՃՈԽ ԲԱՂԴԱՏՈՒԹԵԱՆՑ ՕՐԻՆԱԿՆԵՐ

յԻլիակ. Հոմերի. Գիրք Բ. 21. 459. 469։ Դ. 446: Ե. 81. 519։ Ը. 552։ ԺԱ. 305. 411. 548. 558: ԺԲ. 41։ ԺԳ. 136։ ԺԵ. 262: ԺԷ. 55. 65։ ԻԱ: 255. 569. ԻԲ. 185։

Ենէ. Վիրգ. Գիրք Ա. 411։ Բ. 302. 466. 619։ Դ. 431։ Թ. 57. Ժ. 751: ԺԱ. 495։ ԺԲ. 4. 67. 465. 485. 724։

Ի Կորս. Դրխ. ՏՄիլց. Գիրք Ա. 16։ Բ. 31. 34։

Ի Հ. Դիւց. Բազր. Դռուազ Ա. 323. 506 : Բ. 405. 786։ Գ. 364. 498. 748։ Զ. 297։ 455։ Է. 490։ Թ. 904. ԺԱ. 373. 717. 865։ ԺԳ. 192: ԺԷ. 666. 685. 695. 835. 859. ԺԹ. 1071 : Ի. 183. 206. 454. 475 ։

Ի Տելեմաք Ֆենելոնի. Գիրք Դ. Ի. ԻԱ.

Գ. Հ. Բաղդատութեան մէջ քանի՞ բան կայ դիտելի.

Պ. Բաղդատութեան մէջ հինգ բան կայ դիտելի.

1. Զի երբ մեր նպատակն հրահանգել է պէտք է որ բաղդատութեան եզրն ենթակայէն աւելի ծանօթ լինի. զոր օրինակ,

«Աստուած զմեզ կը սիրէ առաւել քան որչափ մայր մի իւր որդին։»

2. Զի երբ ուզեմք բաղդատութեան մասուր գոյն մի տալ եւ զհոգին համակել մի տարտամ զգացմամբ, կրնամք բաղդատութեան եզր առնուլ ոգեղէն առարկայ մի, նոյն իսկ եթէ բաղդատութեան ենթակայն նիւթական աշխարհի վերաբերի. զոր օրինակ,

«Անտառաց լռութեան մէջ անծանօթ ձայներ կը բարձրանան նման պարուն գեղջկական հրեշտակաց զորոց օգնութիւնն հայցած են մարդիկ։»

3. Զի երբ մեր նպատակն է իր մի բարձրացունել եւ ազնուացունել, պէտք է որ եզրն առաւել բարձր եւ ազնիւ լինի քան զենթակայն. զոր օրինակ,

«Ծովն աւազապատ կը շողշողէր իբրու աւազան արծաթեղէն՝ ոսկեծիր շրջանակաւ»։

**Ցր Վ.իճեի**

4 Զի սովորական ոճոյ մէջ կարճ նմանութիւններ միայն տեղի կ'ունենան. բանաստեղծութեան եւ պերճախօսութեան մէջ միայն ներելի է ընդլայնեալ նմանութիւններ ընել։

5. Զի պէտք է որ նմանութիւնք ճիշտ, պատշաճ եւ նորագիւտ լինին։

## ՀՐԱՀԱՆԳ Ա.

Հետեւեալ բաղդատութեանց եզրը գտնել.

1. *Երկար ապրիլ իբրեւ . . .*
2. *Ձեռները լուալ իբրեւ . . .*
3. *Համր պիտի լինիմ իբրեւ . . .*
4. *Անմեղ լինել իբրեւ . . .*
5. *Սապատողն լինել իբրեւ . . .*
6. *Փայլիլ իբրեւ . . .*
7. *Աղքատ հիւանդը չիջաւ իբրեւ . . .*
8. *Աներեւոյթ լինել իբրեւ . . .*
9. *Աշխատասէր իբրեւ . . .*
10. *Ցամառ իբրեւ . . .*
11. *Ոխակալ իբրեւ . . .*
12. *Լի իբրեւ . . .*
13. *Չարչարուիլ իբրեւ . . .*
14. *Ծծել իբրեւ . . .*
15. *Երգել քաղցր . . .*
16. *Այս երկու եղբարք իրերաց կը նմանին իբրեւ . . .*
17. *Դողալ իբրեւ . . .*
18. *Խմել իբրեւ . . .*
19. *Ձեռքէն սահիլ իբրեւ . . .*
20. *Ապրիլ առանց խորհելու իբրեւ . . .*

## ՀՐԱՀԱՆԳ Բ.

Հետեւեալ բաղդատութեանց եզրը գտնել.

1. *Մերովէի տապարը մխեցաւ Կոլուացւոյն ճակատին մէջ իբրու . . . հացւոյն գագաթին մէջ։*
2. *Դու փոփոխամիտ ես . . . նման։*
3. *Ժամանակը կ'անցնի իբրեւ . . . ։*

4. Գործունեայ եղիք իբրեւ . . . :

5. Իմ սիրտս մաքուր է . . . նման :

6. Մարդիկ կ'անցնին . . . նման :

7. Չարը . . . պէս, կ'ատէ զլոյսն :

8. Երբ մարդ մը կը բարձրանայ . . . նման, պէտք չէ որ սողայ . . . նման :

9. Չարաց երջանկութիւնը կը սահի կ'անցնի իբրեւ . . . :

10. Աղօթքը կը բարձրանայ դէպ յերկինս իբրեւ . . .

11. Առաքինութիւնը երիտասարդի մը վերայ առաւել շնորհ ունի քան . . .

12. Մնա բարեաւ. մահն, իբրեւ . . . , զքեզ կըտրեց, եւ մարմինդ թառամեցաւ արագ քան . . .

13. Մարդկեղէն փառքը կ'եղծանի այնքան արագ որքան . . . :

14. Մթին Ովկէան, քո ալիք կը յարձակին իբրեւ . . . :

## ՀՐԱՀԱՆԳ 3.

Հետագայ բաղդատութեանց ենթակաները գտնել.

1. . . . իբրեւ զՑուլ :
2. . . . իբրեւ զԿրեսոս :
3. . . . իբրեւ զՈդիսեւս :
4. . . . իբրեւ զՆեստոր :
5. . . . իբրեւ զԹովմաս առաքեալ :
6. . . . իբրեւ զՍոկրատ :
7. . . . իբրեւ զՀայկ :
8. . . . իբրեւ զՎարդան :
9. . . . իբրեւ զԴիմոսթենէս :
10. . . . իբրեւ զառիւծ մատակ յորմէ խլած են իւր կորիւնները :
11. . . . իբրեւ զոխ :

12. . . . իբրեւ զմարմարիոն։
13. . . . իբրեւ զանձեղ։
14. . . . իբրեւ զկայէն։
15. . . . իբրեւ զգիշեր։
16. . . . իբրեւ զնետ։
17. . . . իբրեւ զկոյր որ կորուսած է իր գաւազանը։
18. . . . իբրեւ զմեռեալ։

## ՀՐԱՀԱՆԳ 4.

Հետեւեալ բաղդատութեանց ենթակաները գտնել.

1. . . . կը սահի իբրու ալիք սրընթաց գետոյ։
2. . . . անմեղ է իբրեւ զհրեշտակ։
3. . . . կը բարձրանայ իբրեւ զծուխ խնկոյ։
4. . . . է իբրեւ զհուր լափիչ։
5. . . . նման է անցաւոր թռչնոյն, որ իր ետեւ՝ միայն իր ձայնին յիշատակը կը թողու։
6. . . . հեզ էին իբրեւ զգառն եւ զօրաւոր իբրեւ զառիւծ.
7. Բարի . . . կը նմանի բարի հօր. կը սիրէ— իր որդւոց պէս։
8. . . . կը տարածուի իւղոյ բծին պէս, կ'աշխատինք զայն մաքրելու, բայց նշանը կը մնայ։
9. . . . ձեան կը նմանի, որ չկարէ այլ եւս իր փայլն վերստանալ՝ յետ կորուսանելոյ միանգամ զայն։
10. . . . կարծեաց շփումէն դուրս կ'ելնէ, որպէս փայլակն դուրս կը ցայտէ ելեքտրականացեալ մարմնոց ընդհարումէն։
11. Մի . . . կը նմանի արեգակնային ժամացուցի ստուերին որ կ'երեւի երբ արեւը կը փայլի, եւ կ'անհետի երբ մի դոյզն ամպ մօտենայ։

12. . . . պատկերն է պատերազմի, միայն թէ հոն թշնամիք՝ որոց յաղթել պարտ է, մեր նմանները չեն։

## ՀՐԱՀԱՆԳ 5.

Ի՞նչ բանի կրնանք նմանցունել.

1. Երիտասարդ մեռեալ մի
2. Անհարկու պատերազմիկ մի
3. Առաքինի երիտասարդ մի
4. Պարկեշտ օրիորդ մի
5. Խիղճը
6. Սիրուն մանկիկ մի
7. Ուսուցչի մի խօսքերը
8. Կեանքը

## ՀՐԱՀԱՆԳ 6.

Հետեւեալ բաղդատութեանց ենթական եզր ընել եւ եզրը ենթակայ.

1. Բաղեղը կը փարի ծառոյն ինչպէս մանուկը իւր մօր պարանոցին։

— Մանուկը կը փարի իւր մօր պարանոցին ինչպէս բաղեղը ծառոյն որ կը կրէ եւ կը սնուցանէ զայն։

2. Անամպ երկինքը գեղեցիկ է իբրեւ զհայեցուածս անմեղութեան։

3. Գարնան առաջին օրերն նուազ չնորհալից են քան զառաքինութիւն դեռահաս երիտասարդի։

4. Ճշմարտութիւնն անխռով եւ անյաղթելի կը մնայ իբրեւ զժայռ ալէկոծ։

5. Յոյսը գեղեցիկ է իբրեւ զհոգի բարեպաշտ մանկան։

6. Աստուծոյ հայեցուածքը կ'իջնէ մեր վերայ արեւուն ճառագայթներուն պէս։

7. Նաւուն հետքը կ'եղծանի եւ աներեւոյթ կը լինի մարդկային փառաց պէս։

8. *Տուընջեան լոյսը չթափանցեր ուռուոյն տերեւներուն մէջ ինչպէս նաեւ ուրախութիւնը սգազգած հոգւոյ մը մէջ։*

9. *Ապականեալ օդը կը վնասէ մարմնոյն առողջութեան, ինչպէս չար օրինակը հոգւոյն առողջութեան։*

10. *Դիմաց թերութիւնք կ'առաւելուն, ծերանալով, որպէս եւ մտաց։*

11. *Մեծ համբաւը նման է մեծ հարստութեան. հաւասարապէս դժուարին է զմին եւ զմիւսն հաստատուն պահել։*

## ՀՐԱՀԱՆԳ Դ.

Փակագծեալ շեղագիր բառերէն մին բաղդատութեան ենթակայ ընել եւ միւսը եզր.

1. — *կը նմանի* —, *որ դոյզն անմաքրութեան չկարէ տոկալ* (աչք. պատիւ)։

2. *Շատ* —, — *պէս, թագուն զօրութիւններ ունին զոր դիպուածն յերեւան կ'ածէ* (մարդիկ. տունկեր)։

3. — *նոյն է ինչ որ է* — (շաղախը շինուածոց համար. օրէնքը մարդկային ընկերութեանց համար)։

4. — *կը նմանին* —. *պէտք է ի հեռուստ դիտել զանոնք* (մարդիկ. զարդեր)։

5. — *է որպէս* —. *թեթեւագոյն բիծն իսկ կը նսեմացունէ նորա փայլն եւ գրեթէ նորա բոլոր արժէքը կը բառնայ* (թանկագին քար մի. պատիւ)։

6. *Մեք ամենքս գրեթէ միշտ աւելի թշուառ եմք այնու զոր* — *քան այնու զոր* — (զգալ. նախատեսել)։

7. — *հիւանդութիւն կայ ինչպէս որ* — *հիւանդութիւն կայ* (մտաց. հոգւոյ)։

8. — *որպէս* —, *ամենէն վեր կը բարձրանայ* (ձէթ. ճշմարտութիւն)։

9. — կը նմանի —. աւելի շատ կը մաշեցունէ քան աշխատութիւնը (ժանգ. անգործութիւն)։

10. — այնպէս է որպէս —. մարդ կարէ զայն դաշոյն մի շինել կամ զրահ մի (երկաթը բնական կարգին մէջ. երբամտութիւնը բարոյական կարգին մէջ)։

11. — է որպէս — (նաւուղիղն ի ղեկ. թագաւորը սահմանադրական կառավարութեան մը մէջ)։

12. — նման են —. արծուիք եւ սողունք միայն կը հասնին անդր (մեծ պաշտօններ. բարձրաբերձ ժայռեր)։

13. — լոյսն, կ'ըսէ սուրբն Օգոստինոս, կը նմանի — լուսոյն. ի զուր կը փայլի, կը շողայ նա, կոյր մի չազդուիր ի նմանէ (հաւատք. արեւ)։

14. —, որպէս —, մայր է չար խորհրդոց (անօթութիւն, բարկութիւն)։

15. Դպրութեանց մշակութիւնը ոչինչ նուազ բեղմնաւոր է — համար, որչափ — համար (հոգի. միտք)։

16. Անտարակուսելի է որ Աստուած այնչափ — է որչափ — (բարի. մեծ)։

17. Այնքան հոգ տանինք մեր — որչափ կը տանինք մեր —. թող չտեսնուի հոն ոչ բիծ ոչ ծակ (համբաւ. զգեստ)։

18. Ինչպէս —, այսպէս — (խունկը կ'արծարծանէ զհուրն՝ որ ի շիջանել կայ. աղօթքը վառ կը պահէ զյոյս ի սիրտ մարդոյ)։

19. — կը նմանին —, միշտ ամենուրեք տարածուելու հնարը կը գտնեն (յոռի մաստեաններ. ժանտ խոտեր)։

20. — ինչպէս —, իւրեանց արժէքը կ'ստանան այն տեղէն ուր կը գտնուին, եւ իւրեանց նշանակութիւնը, դրամոց նշանակութեան պէս, կը փոխուին ըստ ժամանակաց եւ ըստ տեղեաց (թուանշանք. բառք)։

21. — կը նմանին —. են ոմանք զի իւրեանց տիտ-

զօրավը կը փայլին (ազնուականներ. մատեաններ):

22. Կատակերգութեանց պարտքը ոչ թէ միայն զմարդիկ — է, այլ նաեւ — զանոնք (ուղղել. զբօսցունել):

23. Կարելի է բաղդատել —, — հետ. այս մասին մանրակրկիտ լինել գովելի է (հոգւոյ փափկութիւն. մարմնոյ մաքրութիւն):

24. Մի — նման է —, յաճախ կը վիրաւորէ զմեզ յայն սակս զի նոր է (նոր կօշիկ. նոր գաղափար):

25. — ինչպէս — (ոսկին կ'ընդարձակէ մեծ հոգիները եւ կ'անձկացունէ չար սրտերը. արեգակը կը հալեցունէ մեղրամոմը եւ կը կարծրացունէ ցեխը):

26. Մեք մեր — տէրը չեմք ինչպէս որ մեր — (գաղափարաց ընթացք. արեան շրջան):

27. Մարդուն սրտին մէջ մի ձգտում կայ պարըսպափակ պահպանելու ինչ որ — ինչպէս ինչ որ — (գիտէ. ունի):

28. — կը քնանայ ինչպէս — (կենդանի. տունկ):

29. Ինչպէս —, նոյնպէս — (փառքն երբեմն կը քալէ մեր առջեւէն եւ կ'ընծայի մեր աչաց, մինչդեռ ուրիշ անգամներ մեր ետեւէն կուգայ. ստուերը մերթ կը հետեւի մեզ եւ մերթ կը քալէ մեր առջեւէն):

30. —, նոյնպէս ալ — (ամենեւն թանկագին մետաղաց մէջ խառնուրդ կայ. մեր ազնուագոյն յատկութիւնք անխառն չեն):

31. — ինչ որ —, նա կ'երգունէ զանոնք այլ ոչինչ կը փոխէ նոցա բնութենէն (դաստիարակութիւնն է առ մարդիկ. լոյսն է առ տունկս):

32. — ինչպէս — (երկայնաբան ճառ մի կը վնասէ գործոց արագ վճարման. երկայն պատմուճան մի կը վնասէ ընթացից):

33. Ինչպէս որ — նոյնպէս — (արբեցութիւնը յե-

րեւան կ'ածէ սէգ հոգիներն. կրակը կը փորձէ երկաթին կարծրութիւնն)։

34. Ծերութիւնը կը տկարացունէ — զօրութիւնները ինչպէս — զօրութիւնները (մարմնոյն. մտաց)։

35. — անդունդք աւելի խոր են քան — (գիտութեան. ովկեանու)։

36. —, կ'ըսէ Արիստոտէլ, կը ծերանայ որպէս — (մարմինը. միտքը)։

37. Մի — ոչինչ նուազ խանդաղակաթ է իւր ձագուց համար որչափ մի — (աղաւնի. կոկորդիլոս)։

38. — ինչ որ — (մոլեռանդութիւնն է առ աւելորդապաշտութիւն. կատաղութիւնն է առ քաջութիւն)։

39. Շատ — ինչպէս —. կուզեն գիտնալ թէ մէջը ինչ կայ եւ կ'աւերեն զայն (տղայք կը վարուին իրենց խաղալիկաց հետ. մարդիկ կը վարուին իրենց երջանկութեան հետ)։

40. — երբ միանգամ կորնչի այլեւս չվերադառնար որպէս — (պարկեշտութիւնը. երիտասարդութիւնը)։

41. — որպէս — (մարդը ծնած է աշխատելու համար. թռչունը ծնած է թռչելու համար)։

42. — թերութիւնք կ'առաւելուն, ծերանալով, որպէս — (մտաց. դիմաց)։

43. Եպամինոնտաս նշանաւոր եղաւ այնքան իւր — — որչափ իւր — (արդարասիրութեամբն ու չափաւորութեամբը. իւր յաղթութեամբքն)։

44. Աղէքսանդրի աշխարհակալութիւնք յեղափոխութիւն մի գործեցին — ինչպէս — (գիտութեանց մէջ. ազգաց մէջ)։

45. Հերակլիտ կ'ըսէր թէ քաղաքացիք պարտին մարտնչիլ այնքան եռանդեամբ իւրեանց — պահպանութեան համար, որչափ իւրեանց — պաշտպանութեան համար (օրինաց. պարսպաց)։

46. — Ինչ որ — (դաստիարակութիւնն է առ հոգին. լոյսն է առ աչս)։

47. — Հորիզոնը կը նմանի — հորիզոնին․ մարդ-որչափ բարձրանայ այնչափ կ'ընդարձակուի նա (գիտութեան․ երկրի)։

48. Բնութիւնն հաճած է այնքան զանազանութիւն դնել — որքան — (մտքերու մէջ․ դէմքերու վերայ)։

49. — Ինչպէս — (պարկեշտութիւնը կը զարդարէ զգեղեցկութիւնն․ ցօղը կը գեղեցկացունէ զբնութիւնն)։

50. — Նման է —․ մի կորուսանէք զայն, եւ միշտ բաւական պիտի ունենաք (արծաթ․ ժամանակ)։

51. — Որպէս —․ (լոյսն եղած է մեր աչաց համար․ ճշմարտութիւնն եղած է մեր մտաց համար)։

52. — Կը ծածկէ թերութիւնները, ինչպէս — (ոսկեզօծումը․ հարստութիւնը)։

53. Իմաստունը կը մեկնի — որպէս — (կեանքէն․ մի խնջոյքէ)։

54. — Ինչպէս որ — (զեղծմունք կը ծնանին եւ կը բազմապատկին խառնակ շփոթութեան մէջ․ ինչ ինչ միջատք կը բազմապատկին ապականութեան ծոցին մէջ)։

55. Ինչպէս որ —, նոյնպէս ալ — (ջերմութիւնը կը հալեցունէ կարի կարծր սառոյցներն․ անուշ խօսք մի զէնընկէց կ'ընէ զբարկութիւնն)։

56. Թշուառութիւնը գերութիւն մի է որ չղթայակապ կ'ընէ — որպէս նաեւ — (զհոգին․ զմիտն)։

57. —, որպէս մի —, պէտք է որ մի բարեկամի ձեռօք ներկայացուի որպէս զի լաւ ընդունելութիւն գտնէ (ճշմարտութիւն․ օտարական)։

58. Կան զբօսանքներ — համար որպէս կան — համար (մանկութեան․ հասուն հասակի)։

59. Այս աշխարհի մէջ, — ունին իւրեանց ցաւերն որպէս — (մեծամեծք․ փոքունք)։

60. *Մի — նման է մի —, հինցած ատեն միայն ախորժանօք կը ճաշակուի* (նոր բարեկամ. նոր գինի)։

61. *— մէջ ինչպէս — մէջ ընդհանուր օրէնքներ կան որք իրողութիւններէ կ'ելնեն* (բնագիտութեան. պատմութեան)։

62. *Մարդ ճշմարտութիւնը կ'այլափոխէ —, ինչպէս նաեւ —* (ստախօսութեամբ. լռութեամբ)։

63. *— նուազ նախատինք կը կրէ քան —* (փառամոլն. վատն)։

64. *— մահ կայ, ինչպէս որ — մահ* (մտաւորական. բնական)։

65. *Մարդիկ ստախօս են — ինչպէս որ —* (գործով. խօսքով)։

66. *Խորհուրդներու հաւատալն հլու գտած է զբոլոր տեղերս. — զոր աստուածոց կարգէն վար կ'իջեցունէր. —, որոց ազնուութիւնը կը ցուցունէր. —, որոց միայն տառապանք կը քարոզէր. —, զորս պարտապան կը կացուցանէր աղքատաց. —, որոց կը պատուիրէր սիրել իւրեանց չքաւորութիւնը. ամէն —, որոց բոլոր կրից դէմ կը պատերազմէր* (զկեսարս. զմարդիկ. զաղքատս, զիմաստասէրս. զճոխս. զհեշտասէրս)։

67. *Լաւ է — քան թէ —* (ապրիլ չար կնոջ հետ. բնակիլ առիւծուց եւ օձից հետ)։

68. *Մարդատեաց կը լինի մարդ այնքան — որքան —* (ատելով զայլս. ատելով իւր անձը)։

69. *Ամէն — ինչպէս ամէն — ունի շունչ, ա-ճումն եւ կեանք* (տունկ. շնչաւոր)։

**ՀՐԱՀԱՆԳ 8.**

Աշակերտը պարտի հետեւեալ նմանութեանց եզրերը գտնել ։

1. *Անտարբերութիւնն է սրտին համար ինչ որ է — երկրին համար*։

2. *Մարդը ծածկեալ կայ բոլորովին մանկան մէջ, ինչպէս կաղնին — մէջ։*

3. *Նա որ կը խօսի առանց մտածելու կը նմանի այն որսորդին որ հրացէն կ'արձակէ առանց —։*

4. *Արի մարդն որ կը դիմակալէ ձախորդութեան հարուածներուն կը նմանի — որոյ դէմ կու գան՝ կը խորտակուին փրփրայոյզ կոհակներն։*

5. *Անխորհրդապահ մարդը կը նմանի — զոր ամէն ոք կարէ ընթեռնուլ։*

6. *Օրէնքները կը նմանին — որոնք կը բռնեն փոքրիկ ճանճերը, եւ չեն կարող կեցունել խոշորները։*

7. *Սերնդեան մի անցնիլն գրեթէ աւելի հետք մի չթողուր երկրի վերայ քան կարավանի մի հետքը — մէջ։*

8. *Չար օրինակը տարափոխիկ է — պէս։*

9. *Վառօդը կ'արբեցունէ — պէս։*

10. *Մեր կիրքերը կը նմանին — որ կը բռնադատեն զմեզ իւրեանց հնազանդիլ։*

11. *Առիւծին մռնչիւնը կը նմանցունեն — ։*

12. *Զրպարտութիւնք կը նմանին —, որ կը խոշորնան քանի որ յառաջանան։*

13. *Աստուած ըսաւ Աբրահամին «Քու սերունդդ այնքան բազմաթիւ պիտի լինի որքան —։»*

14. *Շատախօսք յաճախ կը նմանին —, կը խօսին առանց գիտնալու թէ ի՞նչ կ'ըսեն։*

15. *Մոնդէսքիէօ իւր սպասաւորները — կը նմանցունէր. «Պէտք է, կ'ըսէր նա, ժամանակ առ ժամանակ լարել զանոնք՝ որպէս զի քալեն։»*

16. *Նոքա որք կառավարելու պաշտօնը ունին կը նմանին —. շատ փայլ ունին բայց հանգիստ բնաւ։*

17. *Երկիրը մեծ փեթակ մի է. մարդիկ կը նմանին —։*

18. *Պօղոս եւ Վիրգինէ կը նմանէին երկու — միենոյն բունի վերայ պատուաստեալ։*

19. Մարդիկ կ'անցնին նման—, որք առաւօտուն կը փթթին եւ երեկոյին կը թառամին եւ ոտից կոխան կը լինին։

20. Խօսքը, իբրեւ—, այլ եւս չվերադառնար. զգոյշ լեր ուրեմն զայն արձակելէ առաջ, զի սայթաքուր եւ ժահամուխ չլինի։

21. Ազգերն ունին իւրեանց երեւոյթներն որպէս—։

22. Ցեղափոխութիւնք, որպէս —, իւրեանց ընթացից մէջ կ'ստուարանան։

23. Մոլորութիւնն նոյն է առ ճշմարտութիւն ինչ որ է — առ արթնութիւն։

24. Երջանկութիւնը վշտաց մերժումն է որպէս առողջութիւնը՝—։

25. Լուրերը կը նմանին—. որչափ հեռուէն գան, այնչափ կը խոշորնան։

26. Խորհրդածութիւնը մտաց ուժերն կը յաւելու, որպէս—մարմնոյն։

27. Պատերազմի ատեն զինուորք—պէս են. ամենէն աւելի պատառատունք ամենէն գեղեցիկներն են։

28. Որովհետեւ թատրոնը բարուց դպրոցը կը համարուի. զարմանալի է որ գինետունը — դպրոցը չկարծեր ինքզինքն։

29. Բարեկամութիւնը—պէս է. հնագոյնը քաղցրագոյնն է։

30. Դարուց ընթացից մէջ յետսամնացներ կան որպէս — մէջ։

31. Ժողովուրդը կը նմանի—. զայն վէպերով կ'օրորեն։

32. Ծառահմտութիւնը գիտութիւն չէ, ինչպէս որ —չինուած մի չեն։

33. Միտքը յորդումներ ունի—պէս. յաճախ կ'ապականէ փոխանակ արգասաւորելու։

34. Քաղաքավարութիւնն, որպէս —, կը ծածկէ ինչ որ անպիտան եւ անարժէք է, մի արտաքին փայլ տալով նմա։

35. Գաղափարք, որպէս —, յաճախ աւելի դիւրին կը գտնուին քան կը յղկուին։

36. Բարկութիւնը մի վաղանցուկ — է. ցասկոտ մարդը մի այնպիսի մարդ է որ ժամանակ առ ժամանակ կը յիմարի։

37. Ժամանակագրութիւնն նոյն է — համար ինչ որ է կմախք մի կենդանի էակի մի համար։

38. Իմաստնոյն խորհուրդներն — են զորս խնամով պէտք է ժողովել։

39. Ընթերցումն է հոգւոյն համար ինչ որ են — մարմնոյն համար։

40. Բանակ մի առանց զօրագլխոյ — մի է առանց հոգւոյ։

41. Մարդիկ կ'ապաւին իւրեանց կենաց վաստակոց մէջ, ինչպէս — իւր ոստայնին վերայ։

42. Երկարատեւ կեանքն հազիւ հարիւր տարի կը հաշուի, եւ այս կարճ կեանքն այնպէս է յաւիտենականութեան առջեւ, ինչպէս — ովկիանոսին համար, կամ — ծովուն աւազին քով։

43. Ինչ որ է մշակութիւնն հողոյ համար, նոյնն է — հոգւոյն համար։

44. Բարեկամներ կան որ — նման են, հարկ է զանոնք գործածելէ առաջ փորձել. բայց այդ փորձն ընելու համար պէտք չէ սպասել այն վայրկենին յորում պէտք պիտի լինի նոցա ծառայութիւնն։

45. Գիշեր մի էր մռայլ եւ խաւարին. անաստղ ու մութ երկին մի կը ծանրանայր երկրի վերայ, ինչպէս — մի գերեզմանի մի վերայ։

46. Իրաւունք եւ պարտք կը նմանին զոյգ — որք

*պտուղ չեն բերեր եթէ ոչ քովէ քով աճին ։*

47. *Արեւը շողշողուն ծագելով՝ ոսկի նշոյլիւքը կ՚ողողէր բլուրներն ու ձորերը, կը թափանցէր ընդ մթին ստուերս անտառաց, կը ցոլայր ցօղոց կաթիլներուն մէջ որ—նման շարուած էին խոտոց թելերուն վերայ, դաշտաց եւ մարգաց մէջ սփռուած շարժուն եւ անշօշափելի հիւսուածոց վերայ. զով եւ անոյշ հոտեր իբրեւ — բուրէին հանդարտ օդոյն մէջ. խորհրդաւոր ձայներ հեռուէն հնչելով՝ անծանօթ թռչուններ կը մրմնջէին իբրեւ —։*

### ՀՐԱՀԱՆԳ Թ.

Աշակերտը պարտի հետեւեալ բաղդատութեանց յարմար եզր մի գտնել.

### ՊԱՂԱՏԱՆՔ ԱՌ ՏԷՐ

*Տէ՛ր, առ քեզ կը գոչեմք մեր աղէտից ու թշուառութեանց խորէն ։*

*Իբրեւ—որք չունին ճարակ իւրեանց ձագուց տալու,*
*Կը գոչեմք առ քեզ, Տէր ։*
*Իբրեւ—յորմէ իւր գառնուկը կը խլեն,*
*Կը գոչեմք առ քեզ, Տէր ։*
*Իբրեւ— որ անգեղ մագլաց մէջ կը տանջի,*
*Կը գոչեմք առ քեզ, Տէր ։*
*Իբրեւ — ընդ ճիրանօք վագեր,*
*Կը գոչեմք առ քեզ, Տէր ։*
*Իբրեւ—վաստակաբեկ եւ արիւնաշաղախ ի խթանէ,*
*Կը գոչեմք առ քեզ, Տէր ։*
*Իբրեւ—վիրաւոր՝ զոր չուն հալածէ,*
*Կը գոչեմք առ քեզ, Տէր ։*

Իբրեւ—որ ծովերն անցնելու ատեն ոգեսպառ ին-կած, կոհակաց վերայ կը տանջի։

Կը գոչեմք առ քեզ, Տէր։

Իբրեւ—այրեցեալ ու անջրդի անապատի մի մէջ մո-լորահետ,

Կը գոչեմք առ քեզ, Տէր։

Իբրեւ—երիզուտ ու ապալեր ծովեզեր մի վերայ,

Կը գոչեմք առ քեզ, Տէր։

Իբրեւ—յորժէ կը կորզեն պատառն հացին՝ զոր իւր քաղցեալ զաւակաց կը տանէր,

Կը գոչեմք առ քեզ, Տէր։

Իբրեւ—զոր հզօր անիրաւը նետած է խոնաւ եւ խաւարամած բանտի մի խորը,

Կը գոչեմք առ քեզ, Տէր։

Իբրեւ—կոչկոճեալ կարեվէր տիրոջ խարազանէն,

Կը գոչեմք առ քեզ, Տէր։

Իբրեւ—՝ զոր ի տանջանս կը տանին,

Կը գոչեմք առ քեզ, Տէր։

Իբրեւ—որոց անդրանիկներն Եգիպտոսի Թագաւո-րը կը հեղձուցանէր Նեղոսի մէջ,

Կը գոչեմք առ քեզ, Տէր։

Իբրեւ—որոց հարստահարիչներն ամէն օր աշխա-տութիւնները կը յաւելուին, եւ ամէն օր իւրեանց սնունդէն բան մի կը պակսեցունէին,

Կը գոչեմք առ քեզ, Տէր։

Իբրեւ—, երբ ըսաւ. «Հայր իմ, հայր իմ ընդէ՞ր թողեր զիս»,

Կը գոչեմք առ քեզ, Տէր։

Ո՛վ Հայր, դու չլքեր երբեք անօգնական քո որդին, քո Քրիստոսը, բայց միայն ի վերին երեսս եւ առ վայր մի. չպիտի լքանես ընդ միշտ Նաեւ Քրիստոսի եղբարքը։

## ՀՐԱՀԱՆԳ 10.

Աշակերտը պարտի հետեւեալ բաղդատութեանց յարմար ենթակայն եւ եզրը գտնել.

1. — կը նմանին — որք աւելի տան յարած են քան թէ տիրոջ։

2. Այնպէս է — համար որպէս — . պէտք է չափաւորութեամբ գործածել զայն։

3. Երգն այնքան նշան է — որքան —։

4. Մանուկն այնչափ կը վերաբերի — որչափ —։

5. — կը նմանի — . իւր սաստկութիւնը կը յաւելու քանի որ իւր ջամբը շատնայ։

6. — կը նմանի — . իւր թեւերն կը ձգէ մութին մէջ։

7. Կիւրակէի հանգիստն այնքան — օրէնք մի է որքան —։

8. — նման է —, նորա փայլն եւ դիւրաբեկութիւնն ունի։

9. —, որպէս —, կը նուաղի երբ չշատնար։

10. Հարուստ եւ հզօր մարդուն — կը պարունակէ յաճախ այնքան վիշտ որչափ աղքատ գիւղացւոյն —։

11. Մեր տաճարաց գագաթանց վերայ յօդս բարձրացեալ —՝ պատկերն է — որ մեր սրտից խորէն կը սլանան յերկինս։

12. — հրապոյրը, — հրապոյրին պէս, մեր ամենուս վերայ կ՚ազդէ. ամենէն մոլի մարդն իսկ այդ ազդեցութենէն զերծ չէ։

13. — այն է առ —, ինչ որ է բոյրն առ ծաղիկ։

14. Ինկաւ նա զարնուած — ինչպէս մի — կարկտահար։

15. — *դժուարութեանց մէջ է ինչպէս — ի խորս ծովուց։*

16. *Մթին խոհք կը պատէին նորա — որպէս երբեմն սեւ ամպեր կը պատեն —։*

17. *Նորա — կը հոսէին բանք, ինչպէս մի — կը հոսին —։*

18. *— կը կքէ զյողդողդ ժողովուրդն, ինչպէս — կը հակէ հասկերն։*

19. *— կը նմանի —, զքեզ ոչ կը մեծցունէ եւ ոչ կը փոքրկացունէ։*

## ՀՐԱՀԱՆԳ 11.

Աշակերտը պարտի հետեւեալ բաղդատութիւնները լմնցունել.

1. *Պատիր բարեկամք կը թողուն զմեզ երբ բախտը լքանէ. այսպէս կ'ընեն ծիծեռնակք որք . . .*

*— Պատիր բարեկամք կը թողուն զմեզ երբ բախտը լքանէ. այսպէս կ'ընեն ծիծեռնակք որք կը թողուն մեր կլիմաներն ի վերջ կոյս գեղեցիկ աւուրց:*

2. *Ջրպարտութիւնը կը յարձակի ազնուագոյն համբաւոց վերայ, որպէս . . .*

3. *Գողերը կը նմանին ջղջիկներու . . .*

4. *Դաշտաց մէջ որոմը կը հեղձուցանէ ցորեանն որպէս մոլութիւնք կը հեղձուցանեն . . .*

5. *Օրէնքները կը նմանին զգեստուց. դոյզն ինչ կը նեղեն բայց . . .*

6. *Նա որ որոշում մի կ'ընէ բարկութեան ժամանակ կը նմանի այն նաւավարին որ . . .*

7. *Մեծ բանակները կը նմանին մարախոյ գունդերուն որք . . .*

8. *Ապերախտին սիրտը կը նմանի անապատի մի որ կը խմէ . . .*

9. Այն մարդիկ որ միշտ կ'սպառնան առանց բան մի ընելու կը նմանին շանց որ . . .

10. Մարդը կը դատեն իւր գործէն, ինչպէս . . .

11. Նա որ ի ծածուկ բարիք կ'ընէ կը նմանի մանիշակին որ . . .

12. Արիւնը կը սնուցանէ եւ կը զօրացունէ մեր մարմնոյն բոլոր մասերը, ինչպէս . . .

13. Քաղցրաբարոյութիւնը յինքն կը ձգէ սիրտերն, ինչպէս . . .

14. Նա որ ինքզինքը կ'սպաննէ կը նմանի այն սպահակին որ . . .

15. Յիշողութիւնը դաշտի կը նմանի, արդիւնք յառաջ կը բերէ եթէ . . .

16. Կեղծաւորները, մեղուներու նման, մեղր ունին իւրեանց շրթանց վերայ եւ . . .

17. Անգործութիւնը ժանգի կը նմանի . . .

18. Կարծել թէ տկար թշնամի մի չկարէ վնասել, կարծել է թէ փոքրիկ կայծ մի . . .

19. Տձեւ եւ այլանդակ, այլ նաեւ բարի մարդիկ, կը նմանին այն պտղոց որ ի ներքուստ համեղ են, այլ արտաքուստ . . .

20. Մարդիկ միշտ միեւնոյն սխալանաց մէջ կ'իյնան. կը նմանին այն թռչնոց, որք. . . .

21. Ինչպէս որ կակուղ մեղրամոմը հեշտեաւ կ'ընդունի ամէն տեսակ դրոշմ եւ ձեւ, նոյնպէս ալ մանուկը . . . .

22. Մանկան սիրտը մի իմաստուն դաստիարակի ներքեւ բնականաբար կը բացուի առաքինութեան, ինչպէս ծաղկանց . . . . .

23. Գիւղացի մի անցնիլ ուզելով գետէ մի՝ կ'սպասէ որ բոլոր գետն անցնի երթայ ցամքի, զի կարենայ ինքն հանգիստ անցնիլ. Նոյնպէս կ'ընէ՝ ով որ . . . . .

24. *Անբանը ճակատագրոյն ենթակայ, ճակատագրէն մղեալ՝ կոյր էութեան նեղ շրջանին մէջ կը դառնայ ինչպէս երկնային մարմինները . . . . .*

25. *Ամէն վիշտ համակրութեամբ կը թեթեւնայ: Եղբայրական սիրոյ ճառագայթները կենաց տրտմութիւնները կը փարատեն, ինչպէս արեւը ծագելով...:*

### ՀՐԱՀԱՆԳ 12.

Հետեւեալ այլաբանութիւնները շրջել ի նմանութիւն.

1. *Երիտասարդութիւնը ծաղիկ մի է որ ընդ փըթթելն կը զօսանայ:*

2. *Երջանկութիւնը ստուեր մի է որ խոյս կուտայ ի մէնջ երբ կը կարծեմք զայն բռնել:*

3. *Ոչ ոք առանձինն կարէ բառնալ մարդկային աղէտից ժայռը:*

4. *Կենաց խնջոյից մէջ, անբախտ կոչնական, մի օր եւեթ երեւեցայ եւ կը մեռնիմ:*

5. *Անձնիւր ոք իւր սրտին մէջ ունի ատեան մի ուր կ'սկսի ինքզինքը դատել, սպասելով որ գերագոյն դատաւորը վճիռը հաստատէ:*

6. *Համբաւը փափուկ ծաղիկ մի է զոր թեթեւ շունչ մի կարէ խամրեցունել:*

### ՀՐԱՀԱՆԳ 13.

Հետեւեալ նմանութիւնները շրջել յայլաբանութիւն դոյզն ինչ ընդլայնեալ.

1. *Անմեղ մանուկը կը նմանի գեղեցիկ շուշանի մի:*
2. *Քրիստոնէութիւնը նման է արեգական:*
3. *Փոփոխամիտ մարդը հողմացուցի կը նմանի:*
4. *Սնապարծը նման է սիրամարգի:*
5. *Չարախօսութիւնը ծախիչ հրոյ մի կը նմանի:*

## ՀՐԱՀԱՆԳ 14.

Սովորական բաղդատութիւնը ճոխ կամ ընդլայնեալ բաղդատութեան շրջել աշխարհիկ լեզուաւ.

1. *Ագամէնեայ օրհասական որդեակը կը նմանէր արօրէն կտրուած գեղեցիկ շուշանի մի։*

2. *Մեր ժրաջան գործաւորները կ'աշխատէին, գարնանագեղ զուարթ աւուրց մէջ աշխատող գործօն ու ու ժիր մեղուներու նման։*

3. *Երկու բանակներն յիրեար զարնուեցան եւ խառնուեցան նման երկու մեծամուր նաւերու, որ Ադրիական ծովուն մէջ բռնաշունչ մրրկէն վարեալ յիրեար կը բախին։*

4. *Որփէոս կ'ողբայ Եւրիդիկեայ մահն, նման սոխակին յորմէ երկրագործն յափշտակած է իւր ձագերն։*

5. *Ողխեայ զաւակը նման ծաղկի մի որ երեկոյեան դէմ կը թառամի, նուաղած էր ու մահուան դուռը հասած։*

6. *Աւա՜ղ, ինչպէս աղջիկս, իւր այնքան ձիրքերովն մահուան աչաց պատահելով՝ երանութեան գագաթէն յանկարծ ինկաւ, նման սոխակին որ կ'իյնայ գնտակահար։*

7. *Բարբարոսները կը պատասխանեն այս գոչման այնպիսի ահեղ մունչմամբ որոյ նման չըրատար ոչ շանթը, ոչ Եանա հրաբուղխ լեռն եւ ոչ ովկէան։*

8. *Վիշտերս մոռնալու եւ սրտիս վէրքը ամոքելու համար, ի զուր, նետահար եղջերուի պէս, կը թափառէի։* (*)

---

(*) Այս հրահանգէն յետոյ ուսուցիչը կարէ նոր բաղդատութիւններ տալ աշակերտին, վերածելու համար զայնս ի պարզ բաղդատութիւն :

## ՀՐԱՀԱՆԳ 15.

**Աշակերտը պարտի հետեւեալ բառից մէջտեղ եղած նմանութիւնները բացատրել ընդլայնմամբ.**

| | |
|---|---|
| 1. ԱՇԽԱՐՀԱԿԱԼԸ | 1. ՀԵՂԵՂԸ |
| 2. ՄԱՆԻՇԱԿԸ | 2. ՀԱՄԵՍՏԸ |
| 3. ԳԵՏԸ | 3. ԺԱՄԱՆԱԿԸ |
| 4. ՍԻՐԱՄԱՐԳԸ | 4. ՀՊԱՐՏԸ |
| 5. ՀԱՒՆ ԵՒ ԻՒՐ ՁԱԳԵՐԸ | 5. ՄԱՅՐՆ ԵՒ ԻՒՐ ՁԱՒԱԿՈՒՆՔԸ |
| 6. ՔՈՒՆԸ | 6. ՄԱՀԸ |
| 7. ՁՄԵՌԸ | 7. ԾԵՐՈՒԹԻՒՆԸ |
| 8. ՊԱՐՏԻԶՊԱՆԸ | 8. ԴԱՍՏԻԱՐԱԿԸ |

*Ծանօթ. Այն բաղդատութիւնք պէտք է որ ըստ բաւականի ընդլայնեալ լինին, պատշաճութիւնք աւելի իմաստից եւ պարբերութեանց մէջ պարտին լինել քան թէ բառից մէջ։ Զոր օրինակ.*

### 1. ԱՇԽԱՐՀԱԿԱԼԸ ԵՒ ՀԵՂԵՂԸ

*Որպէս գետ մը, զոր ձիւնաջուրք սրընթաց հեղեղի մը են փոխած, ահագնագոչ դղրդմամբ դարիւ դարիւ կը հոսի. իւր ընթացից մէջ ամէն բան կը տապալէ, կը քերէ, կը գերփէ. ոչինչ կարէ տոկալ, ոչինչ կարէ կանգուն կալ նորա դէմ, բնաւ թումբ մը չէ կարող կասեցունել զայն. ամենուրեք աւեր, ապականութիւն եւ մահ կը սփռէ. Նոյնպէս աշխարհակալ մը իւր մոլեգնեալ գնդից գլուխն անցած՝ յառաջ կը խաղայ արշաւասոյր. կ'անցնի, եւ պարտեալ ժողովուրդք լալահառաչ նորա լծոյն տակ կը մտնեն. աշխարհ իւր բուռնընթաց արշաւին չախնդէն կը թնդայ, եւ յայնժամ միայն կը կասի նա երբ այլ եւս ոչինչ մնայ քանդելու։*

## Ե. ՀԱԿԱԴՐՈՒԹԻՒՆ

Կարդացէք հետեւեալներն.

1. *Կը չուէր նա (Վոլթէր) անիծեալ եւ օրհնեալ.— անիծեալ անցեալէն, օրհնեալ ապագայէն։*

Վ. Հիւկօ

2. *Վոլթէր յաղթեց, Վոլթէր փառաւոր պա- պատերազմ մի ըրաւ, պատերազմ միոյ ընդդէմ ամենեցուն, այսինքն մեծ պատերազմն։ Պատերազմ ընդդէմ նիւթոյ, պատերազմ բանավարութեան ընդդէմ նախապաշարման, պատերազմ արդարոյ ընդդէմ անիրաւին, պատերազմ վասն հարստահարելոյն՝ ընդդէմ հարստահարչին, պատերազմ բարութեան, պատերազմ քաղցրութեան։ Նա կնոջ մի պէս գթասիրտ, եւ դիւցազնի մի պէս բարկասիրտ եղաւ։ Մեծ միտք մի եւ անհուն սիրտ մի եղաւ նա։*

Նոյն

3. *Խաղաղութիւնը քաղաքակրթութեան առաքինութիւնն է, իսկ պատերազմը ոճիրն։*

Նոյն

4. *Այս պատերազմը միթէ ի մէնջ է։ Կայսրութիւնը կամեցաւ զայն. կայսրութիւնն ըրաւ զայն։ Մեռաւ նա։ Քաջ է։*

*Նա անցեալն է, մեք ապագայն եմք։*
*Նա ատելութիւնն է, մեք համակրութիւնն եմք։*
*Նա մառնութիւնն է, մեք անկեղծութիւնն եմք։*
*Նա Կապուա եւ Գոմոր է, մեք Գաղիա եմք։*

Նոյն

5. *Ո՛վ մարդիկ, դուք չէք ճանչեր այն իրերը զոր ձեր աչաց տակ ունիք, եւ կ'ուզէք խելամուտ լինել հաւատոյ յաւիտենական խորութեանց: Բնութիւնը*

ձեզ համար խորհուրդ մի է, եւ դուք կ'ուզէք կրօնք մի որ բնաւ խորհուրդ չունենայ։ Կ'անգիտանայք մարդկան գաղտնիքներն, եւ կ'ուզէք գիտնալ Աստուծոյ գաղտնիքներն։ Դուք չէք ճանչեր զձեզ իսկ, եւ կ'ուզէք խորաթափանց լինել յայն որ յոյժ ի վեր է քան զձեզ։ Տիեզերք, զոր Աստուած յանձնած է ձեր հետաքննութեան եւ վիճման, անդունդ մի է ուր կը կորընչիք, եւ կուզէք որ հաւատոյ գաղտնիքները, զորս ձեր հլութեան եւ մեծարանաց առջեւ դրաւ, չունենայ բան մի որ վրիպի ձեր տկար գիտութիւններէն. ո՜վ մոլորութիւն։

**Մասիլեօն**

6. Ժամանակ է որ երթանք, ես մեռնելու, դուք ապրելու։

**Սոկրատ**

1. Հ. Ի՞նչ կը գտնէք վերոգրեալ պարբերութեանց մէջ.

Պ. Կը գտնեմք որ հականիշ բառեր կամ խօսքեր իրարու քով դրուած են, որոց միջոցաւ պարբերութեանց իմաստն աւելի ազդու եղած է։

2դ. Հ. Ի՞նչ կը կոչուի այս ձեւ.

Պ. Հակադրութիւն։

3դ. Ի՞նչ է ուրեմն Հակադրութիւնն.

Պ. Հակադրութիւնը ձեւ մի է որով միմեանց հակառակ իմաստներ եւ պատկերներ իրարու կը մօտեցունեմք՝ նոցա տարբերութիւնն դուրս ցայտեցունելու եւ տեսիլներու հակառակութեամբ միտաց վերայ ազդեցիկ տպաւորութիւն մի գործելու համար։

Դ. Հ. Հակադրութեանց գործածութեան մէջ ի՞նչ բանէ պէտք է զգուշանալ.

Պ. Պէտք է զգուշանալ հակադրութեանց յաճախակի կրկնութենէն որ կը յոգնեցունէ ընթերցողն. նաեւ պէտք է հակադրութիւնք փընտռուած եւ բռնազբօսիկ չլինին, ապա թէ ոչ սեթեւեթեալ կերպ մի կուտան ոճոյն եւ զայն անազդեցիկ եւ անհրապոյր կ'ընեն։ Լաւագոյն հակադրութիւնք այնոքիկ են որ բուն իսկ նիւթէն կը բղխին, առանց գրողին կողմանէ մասնաւոր ջանք մի լինելու։

## ՀՐԱՀԱՆԳ 1.

Աշակերտը պարտի փակագծեալ հականիշ բառերն իրեանց պատշաճ տեղը դնել.

1. Պագոն ըսաւ « — իմաստասիրութիւնն կը հեռացունէ յԱստուծոյ. — իմաստասիրութիւնն առ Նա կը տանի (շատ, սակաւ)։»

2. Անդ միայն բարի — կան ուր բարի — գոն։ (ծառայք, տէրք)

3. Երբ ոսկին չէր արժեր ինչ,—դար էր. երբ ոսկին կ'արժէ ամէն ինչ, — դար է (ոսկեղէն, երկաթեղէն)։

4. Չէ մարթ կարի հաւատարմաբար հնազանդիլ սա խրատուն զոր Պուալոյ կուտայ մատենագրաց. — երբեմն եւ յաճախ — (աւելցուցէք, ջնջեցէք)։

5. Չկայ բնաւ — մի որ պատիր նմանութիւն մի չունենայ — մի հետ (առաքինութիւն, մոլութիւն)։

6. Ամէն ճշմարտութիւնք յարմար չեն առ ի — , այլ միշտ բարւոք են առ ի — (խօսել, լսել)։

7. — Ինչ որ տուած ես, եւ — ինչ որ ես ընդունած (մոռցիր, յիշէ)։

8. Ազգասիրութիւնն ընկեր է — , իսկ առատութիւնը պտուղ է — (գործունէութեան, ծուլութեան)։

9. Երջանիկ — պտուղ է զգօն —, սա կը պատրաստէ նման ազնուական հեշտութիւններ (ծերութիւն, երիտասարդութիւն)։

10. — Համար ներումն՝ — դէմ դաւաճանութիւն է (առաքինութեան, մոլութեան)։

11. — Կը նկատուի այն որ — չէ ու եւ է ամօթալի կրից (գերի. ազատ)։

12. Իշխանք — երբ կ'ուզեն — ի վեր քան զօրէնս (զօրանալ, տկարանալ)։

13. Տգիտին պայմանն եւ բարքն է — չակնկալել իւր բարին կամ չարն, այլ միշտ —(յօտարաց, յինքենէ)։

14. Բնութիւնն — ունի ցոյց տալու համար թէ ինքը պատկեր է Աստուծոյ, եւ —՝ ցուցունելու համար թէ սոսկ պատկերն է նորա (թերութիւններ, կատարելութիւններ)։

15. Ո՛հ, քանի՛ն — է բնութիւնն երբ սոփեստէսք բացատրեն զայն, բայց ո՜րչափ — կ'երեւի պարզ սրտերու՝ որք նորա սքանչելիքներն կը խնդրեն՝ զԱրարիչն փառաբանելու համար (ցամաք, բազմաբեղուն)։

16. Քաղաքավարութիւնն այնպէս կը ներկայացունէ զմարդ — որպէս պարտ էր լինել նմա — (արտաքուստ ի ներքուստ)։

## ՀՐԱՀԱՆԳ Ձ.

Աշակերտը պարտի շեղագիր բառին հականիշը դնել գծին տեղ.

1. Նա որ չգիտէ հնազանդիլ չկարէ —։
2. Ժողովրդոց մարդելոյզները՞ թերեւս այնչափ

վտանգաւոր են որչափ — մարդելոյզներն։

3. Որքան աւելի բարիք գործեմք մեր երիտասարդութեան մէջ, այնքան աւելի քաղցրութիւն եւ մխիթարութիւն կը պատրաստեմք մեզ մեր — համար։

4. Այն առաջին բանը զոր պարտի ընել իմաստուն մարդ մի, բախտին պարգեւներն երբ ընդունի, այն է խելամուտ լինել զի բախտին տունը կը բնակիմք իբր վարձակալ միայն եւ ոչ թէ —։

5. Երջանկութիւնը — ունենալն է եւ ոչ թէ ավելորդն։

6. Շռայլը մարդ մի է որ ինքզինքը կը մեռցունէ երակահատութեամբ. — մի այլ հիւանդ է որ կը մեռնի արիւնէ խեղդուած։

7. Աւելի կը սիրեմ վէրք մի որ զիս երջանիկ կ'ընէ քան — մի որ զիս կը յուսահատեցունէ։

8. Ռուսիէօի արտասանած առաջին ճառը նախատեսել տուաւ Գաղիոյ՝ քաղաքական ճշմարիտ պերճախօսութիւնը. գաղափարաց պերճախօսութիւնը եւ ոչ թէ —։

9. Պետական մարդիկ պարտին մտածել աւելի վաղուան կարծեաց վերայ քան —։

10. Նիւթական զօրութիւնը դոյզն ինչ է եթէ չէ հաստատուած — զօրութեամբ։

11. Մի յանդիմաներ բնաւ զոք հրապարակաւ երբոր կրնաս յանդիմանել զայն —։

12. Պէտք չէ չարն իւր արդեանց մէջ հարուածել, այլ իւր — մէջ։

13. Պատուէ —, եթէ կուզես պատուուիլ յորդւոցդ։

14. Հայեցողական կեանքը այս դարուն չվերաբերիր։ Աստուած դրաւ զմեզ երկրի վերայ ի — եւ ոչ թէ յերազել։

15. Անաչառ լեր քեզ համար եւ — այլոց համար։

16. Արեւելցիք կ'ըսեն. խօսքը արծաթ է, այլ լռութիւնը —։

17. Հանդարտ լեր եթէ թշնամիքդ երկպառակեալ են իւրեանց մէջ. — լեր եթէ միացած են բարեկամութեամբ։

18. Ներեցէք յաճախ այլոց, — ձեզի, ըսաւ բանաստեղծն Սիրոս։

19. Ներկայ երջանկութեանդ վերայ մի վստահիր. յաճախ զեփիւռին կը յաջորդէ —։

20. Ներբողիչք յաճախ ցախսարեկ մի — մի կ'ընեն։

21. Հիւղ մի ապաստանարան մի է աւելի ապահով քան — մի, ընդդէմ հարուածոց բախտին։

22. Ամէն իմաստնախոհ մարդ պարտի գիտել՝ թէ այս կեանք ոչ հանգստեան այլ — համար տրուած է մեզ, այսինքն՝ թէ պիտի աշխատիմք երկրի վերայ — համար —։

23. Հաճոյքներն բարիք են եթէ համեստութեան հետ կցորդին, այլ — կը լինին եթէ — անոր։

24. Եթէ ապականութեան մէջ սերմանիք, ըսաւ Առաքեալն, ապականութեան մէջ պիտի —։

25. Ոչ երջանիկ յիմար կը լինի եւ ոչ — —։

26. Անկեալ Աստուած մի է — որ զերկինս կը յիշէ։

27. Եղուկ, քաջ իսկ կ'զգամ իմ մոլութեամբքս, կ'ըսէ Ժ. Ժ. Ռուսօյ, թէ մարդ իւր կենաց մէջ կիսով չափ միայն կ'ապրի, եւ թէ հոգւոյն կեանքը — — յետոյ սկիզբն կ'առնու։

28. Առաքինութեան յարմարագոյն եղող կենաց ընթացից հետեւէ, թերեւս տաժանագոյնն է այն՝ բայց սովորութեամբ — կը լինի։

29. Եթէ կայ արուեստ բարւոք խօսելու, կայ նաեւ արուեստ բարւոք —։

30. Չէ պարտ պայքարել նոցա հետ որք բացա-

*յայտ ճշմարտութեանց անգամ չեն խելամուտ, մարդ չեն նոքա այլ — ։*

31. *Զի՞նչ պարտ է պատասխանել այս հարցման. Անձնասպանութիւնը գործ է քաջութեան թէ — ։ Պիտի պատասխանեմ թէ ով որ ի բաց կը նետէ կենաց բեռն յանձնէ՝ ցոյց կու տայ երբեմն ֆիզիքական կորով մի, այլ միշտ — վատութեան փորձը կ'ընէ ։*

32. *Բնութեան տեսարանն որ այնքան կենդանի է, — է յաչս անաստուածին, եւ արարածոց ներդաշնակութեան մէջ՝ յորում ամէն ինչ զԱստուծոյ կը խօսի քաղցրիկ բարբառով՝ յաւիտենական լռութիւն մի նշմարէ նա ։*

33. *Կանայք միշտ ծայրայեղ կը լինին, կամ լաւագոյն եւ կամ — են քան զայրս ։*

34. *Լաւ է ներել քան —, քան զի մին արգասիք է համբոյր եւ մարդասէր բարուց, միւսն — եւ — բնութեան ։*

## ՀՐԱՀԱՆԳ 3.

Աշակերտը պարտի գտնել հակադրութեան երկու եզրերն.

1. *Մարդ նուազ ծաղրելի է այն — զորս ունի քան այն — զորս կ'ուզէ ունենալ ։*

2. *Նա որ կը գնէ — ընդհուպ պիտի ստիպուի վաճառել — ։*

3. *Վիշտը — վայրկեանները, երջանկութիւնը — ժամերը ։*

4. *Հաւատանք, կեսարին պէս, որ ամէն վտանգ նուազ մեծ կ'երեւայ — քան թէ — ։*

5. *Մի դատէք զմարդիկ իւրեանց —, այլ իւրեանց — ։*

6. *Ցոյսը պիտի ուզէր — ժամանակին ընթացքը, երկիւղը պիտի ուզէր զայն —։*

7. *Ճշմարիտ բարեկամներն, կ'ըսէր Դեմետրիոս Փալերացի, կ'սպասեն որ կանչուին — մէջ. — մէջ ինքեանք կը ներկայանան։*

8. *Եթէ կ'ուզես օրհնութեանց պտուղը քաղել՝ բարի գործոց հունտը սերմանէ. նա որ — կը տնկէ չկարէ — քաղել։*

9. *Իմաստունը — է մեծութեանց մէջ եւ — ճախորդութեան մէջ։*

10. *— աւելի վշտով կը մեռնի քան —։*

11. *Դրամը բոլորչի է թաւալելու համար, առած —. դրամը հարթ է դիզուելու համար, առած —։*

12. *— կենաց համար ինչպէս նաեւ — կենաց համար, սնունդ մի կարեւոր է։*

13. *Դուռն մի պէտք է որ կամ — լինի կամ —։*

14. *Ծուլութիւնը այնչափ տաղանդներ — որքան չէ կարող — գործունէութիւնն։*

## ՀՐԱՀԱՆԳ 4.

Աշակերտք նախընթաց հրահանգաց մէջ բառերու վերայ աշխատեցան. աստ ունին աշխատել իմաստից հակադրութեան վերայ. ուստի հետեւեալ պարբերութեանց կէտերուն տեղ պէտք է որ նախընթաց նախադասութեան ոչ թէ բառից այլ իմաստին հակառակը դնեն.

1. *Ջարին բարձը լի է փշովք. իսկ . . .*
*— . . . իսկ առաքինի մարդուն կակուղ է։*

2. *Այլոց թերութեանց համար սրատես եմք, եւ . . .*

3. *Մարդիկ անգթաբար կը պատերազմին ընդ միմեանս, մինչդեռ ընդհակառակն պարտաւոր էին . . .*

4. *Աստուած կը մերժէր նուէրներն Կայենի, որոյ սիրտը չար էր, եւ . . .*

5. *Իմաստնոյ մի միայն մէկ օրն աւելի կ՚արժէ քան թէ . . .*

6. *Երկիւղը մերթ թեւ կու տայ մեր գարշապարաց, մերթ . . .*

7. *Խաղաղութիւնը կ՚ըսէ առ մարդիկ. Աճեցէք, բազմացէք, երջանիկ լերուք . . .*

8. *Մինչդեռ միջիւնը կ՚օգտի գեղեցիկ եղանակէն լնլու համար իւր շտեմարաններն, ճպուռն . . .*

9. *Ի գալ ձմերան միջիւնը պիտի գտնէ իւր բնակարանին մէջ ապաստանարան մի եւ առատութիւն, մինչդեռ ճպուռն . . .*

10. *Նոքա որք համեստ էին միջակ կացութեան մի մէջ, երբեմն . . .*

11. *Ծուլին ճանապարհը գրեթէ խուկեալ է փշովք. իսկ . . .*

12. *Այն տղայք զորս կարի փափկութեամբ կը մեծցունեն, պիտի գայթին կենաց դժուարին ճանապարհին մէջ, բայց նոքա զորս . . .*

13. *Նա որ իւր բախտն իւրով ձեռամբ կը շինէ առաւել յարգելի քան . . .*

14. *Ծոյլ դպրոցականք խաղը կը սիրեն . . .*

15. *Ծուլին արտը ծածկեալ է փշովք եւ տատասկօք, . . .*

16. *Շունը կը լիզու զայն ձեռնն որ կը զարնէ իւրեան, օձը . . .*

17. *Կէս գիտութիւնն զմեզ կը հեռացունէ ի կրօնից, մինչդեռ . . .*

18. *Մովսիսի օրէնքը կ՚ըսէր մարդկան, վրէժխնդիր լերուք. ակն ընդ ական, ատամն ընդ ատաման. Յիսուսի Աւետարանը կ՚ըսէ նոցա . . .*

19. *Աստղերը կը փայլին իւրեանց յատուկ լուսով մի. լուսինը . . .*

20. *Մարդ կը զղջայ իւր չար գործելուն վերայ. բարի գործ մի ընդհակառակն . . .*

21. *Երբայեցիք Կարմիր ծովէն ցամաք ոտքով անցան, մինչդեռ Փարաւոն . . .*

22. *Նուազ յարգ ընծայեցէք այն ծառայութեանց զորս կը մատուցանէք այլոց. բայց . . .*

23. *Թող պատահակ մի չարեմարան մի այրէ, զայն կը տանին ի տանջանս. Թող աշխարհակալ մի պետութիւն մի հրդեհէ . . .*

24. *Վագրն աւելի ահարկու է քան զառիւծ. առիւծն յայնժամ կ'որսայ երբ քաղցը կ'ստիպէ զինքն. վագրն . . .*

25. *Թեթեւսոլիկ մարդ մի ընդ որ ամենեքեան կը զարմանան, ծառ մի է զոր կը դատեն ոչ թէ իւր պտուղէն, այլ . . .*

26. *Եթէ կ'ուզէք որ ձեր գործերը կատարուին, դուք ինքնին գնացէք. եթէ . . .*

27. *Խոհեմ մարդը կը ժողովէ հնձոց ժամանակ. իսկ անմիտ է այն . . .*

28. *Աստուծոյ օրէնքը սիրոյ օրէնք մի է, եւ սէրը երբեք այլոց վերայ չբարձրանար, այլ . . .*

## ՀՐԱՀԱՆԳ 5.

*Երբ մանկան մի վերայ խօսելով՝ ըսեմք, նա գէշ գլուխ մի ունի, մանկան նկարագիրն աննպաստ տեսութեան մի տակ կը ներկայացունեմք. բայց դիւրին է մեղմացունել զայն, նկարելով զմանուկն մի այլ աւելի նպաստաւոր տեսութեան տակ, կցելով իր թերութեան քով մի բարեմասնութիւն։ Ուստի կը յաւելումք, բայց բարի սիրտ մի ունի։ Փոխադարձաբար, երբ նախ սկսիմք հաստատել թէ մանուկն բարի սիրտ*

մի ունի, կրնամք տկարացունել այս բարեմասնութիւնն՝ աւել ցունելով թէ գէշ գլուխ մի ունի։

1. Այս գիրքն զբօսուցիչ է, բայց . . .
— . . . հրահանգիչ չէ։

2. Այս երիտասարդը գեղեցիկ է, բայց . . .

3. Այս գուսանը շատ անուշ ձայն մի ունի, բայց . . .

4. Ծերութիւնը կը կորսնցնէ իւր ուժը եւ կայտառութիւնը, բայց . . .

5. Առաքինին յաճախ կը հալածուի երկրի վերայ, բայց . . .

6. Եղէգնը կը ծռի եւ կը հնազանդի ամէն հողմոյ, բայց . . .

7. Եզովբոս բնութենէն յոյժ տգեղ ծնած էր, բայց . . .

8. Գիտութեան արմատները դառն են, բայց . . .

9. Վարդը փշովք պատեալ է, բայց . . .

10. Գինին զօրացուցիչ է, բայց . . .

11. Հարստութիւնը մեզ հաճոյքներ կուտայ, բայց . . .

12. Եգիպտոսի մէջ անձրեւ չտեղար, բայց . . .

13. Բարի հայր մի պարտի սիրել իւր որդիքն, բայց . . .

14. Աստուած դատապարտեց մեր նախածնողներն աշխատութեան, ցաւոց եւ մահուան, բայց . . .

15. Այս վաճառքը սուղ է, բայց . . .

16. Երբ մանուկն յաշխարհ կուգայ, տկարագոյն էակ մի է եւ անկարող իւր պէտքերն հոգալու, բայց . . .

17. Մանիշակը մացառի մի տակ կը ծածկի, բայց . . .

18. Յուդա վաճառեց իւր երկնային վարդապետն, բայց . . .

19. Շերամը տգեղ միջատ մի է, բայց . . .

20. *Մարդն իւր մահացու մարմնովը գձուձ հակ մի է կաւով շինուած, բայց . . .*

21. *Աստուած ի հողոյ ստեղծեց զմարդ, բայց . . .*

22. *Ստութեան հացն հաճոյ է մարդոյ, բայց . . .*

23. *Արեգակը պայծառ է, բայց . . . կ'ըսէ Նախանձոտն։*

24. *Սիրամարգին փետուրներն ակնախտիղ գեղեցկութիւն մի ունին, բայց . . .*

25. *Իւր աչացը մէջ երկինք կայ, բայց . . .*

26. *Աստուած բարի է, բայց . . .*

27. *Երկրիս բեւեռներուն կողմն երկար ամիսներ, գիշեր կը տիրէ, բայց . . .*

28. *Առիւծը, վագրն եւ ընդհանրապէս մարդուն թշնամի բոլոր անասուններն, մարդէն աւելի զօրաւորեն, բայց . . .*

29. *Մրրիկները յաճախ մեծ աւերներ կը գործեն բայց . . .*

30. *Մարդիկ կը գովեն գեղեցիկ գործերն, բայց . . .*

31. *Եբրայեցիք քառասուն տարի անբեր անապատի մի մէջ անցուցին, բայց Աստուած . . .*

32. *Արիստոտէլ ըսած է. մարդը կենդանի մի է, բայց . . .*

33. *Ձախորդութիւնը զմեզ կը ճնշէ, բայց . . .*

## ՀՐԱՀԱՆԳ Զ.

Աշակերտը պարտի հետեւեալ հակադրութեանց եզրերն ընդլայնել ուրոյն ուրոյն, եւ նոցա տարբերութիւնն ի յայտ ածել: Ընդլայնմունք պէտք է որ բաւական ճոխ լինին.

| | |
|---|---|
| 1. ԱԳԱՀԸ | 1. ՇՌԱՅԼԸ |
| 2. ԺՐԱՋԱՆ ԵՐԿՐԱԳՈՐԾԸ | 2. ԱՆՓՈՅԹ ԵՐԿՐԱԳՈՐԾԸ |
| 3. ՇՈՒՆԸ | 3. ԿԱՏՈՒՆ |
| 4. ԲԱՐԻ ՈՐԴԻՆ | 4. ՉԱՐ ՈՐԴԻՆ. |
| 5. ԲԱՐԻ ԹԱԳԱՒՈՐԸ | 5. ՉԱՐ ԹԱԳԱՒՈՐԸ |
| 6. ՏԻՒԸ | 6. ԳԻՇԵՐԸ |
| 7. ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆԸ | 7. ՊԱՏԵՐԱԶՄԸ |

### 1. ԱԳՌԱՀԸ ԵՒ ՇՌԱՅԼԸ

*Ագահը կը դիզէ, մեծաջան աշխատութեամբ եւ ի գին բիւր զրկանաց, ինչքեր՝ զորս ստանալուն պէս, կը ծածկէ յամենայն աչաց, եւ զորս չպիտի վայելէ երբեք։ Շռայլն, առանց արժէքը գիտնալու, կ'ստանայ ինչքեր զորս կոյր բախտը կը ղրկէ նմա. նա կը վատնէ զանոնք անմտութեամբ, առանց հաշուելու, եւ կ'ապրի առանց հոգալու զվաղիւն, մինչեւ որ իւր շռայլութիւնը զինքը տանի ի թշուառութիւն։*

### 2. ՅԵՏԱՇՐՋՈՒԹԻՒՆ

*Հ. Ի՞նչ է Յետաշրջութիւնն.*

*Պ. Յետաշրջութիւնը ձեւ մի է յորում բառերն իւրեանց վերայ շրջած են դոյզ ինչ տարբեր իմաստիւ. զոր օրինակ,*

*Աւելի կը սիրեմ առանց ստակի մարդը քան առանց մարդու ստակն։*

**Թեմիսթոկլէս**

*Շատեր այսպէս խորհած, եւ պահ մի վարանալէ յետոյ անստուգութեան մէջ՝ ինկած գլորած են, տեղի տուած են աշխարհի սկզբանց, եւ ըսած «Այլ է դպրոց, այլ է աշխարհ. այն բարոյական օրէնքներ զոր մեզ ուսուցին մեր դաստիարակք, բարի միամիտ մարդիկ, առ առաւելն դպրոցի համար լաւ են, բայց հոս ակներեւ է թէ ամենայն ինչ տրամագծապէս հակառակն է. կը քարոզէին մեզ թէ իրաւունքէն մեծ զօրութիւն չկայ. հիմա կը տեսնեմք թէ Զօրութենէն մեծ իրաւունք չկայ. մեզ կը համոզէին թէ Բարին է շահաւոր. այժմ կը խելամտեմք թէ Շահաւորն է բարին. մեզ կ'ըսէին թէ Ընդհանուրին օգուտն առաւել*

*է քան մասնաւորին օգուտն. հիմա մեր աչքը կը բացուի եւ կ'ըմբռնենք թէ մասնաւորին օգուտն միշտ ի վեր է հան ընդհանուրինն։» Ու այլ եւս նոքա կորսուած են Բարւոյն համար, Գեղեցկին համար, Ճշմարտին համար, կորսուած Հայրենեաց համար, Աստուծոյ համար. — թէեւ ազգի անունն ալ բերնէ չեն թողած, եւ թէեւ Աստուծոյ տնէն դուրս չեն ելած։*

**Ռ. Ց. Պէրպէրեան**

*Հոս քարերը ալեաց փոխեց Լէսէպս, երկու քայլ հեռին՝ ալիքները քարի փոխեց Մովսէս։ Հանճարը նոր դարերու մոգական գաւազանն է։*

**Մ. Զերազ**

## ՀՐԱՀԱՆԳ Ա.

Աշակերտը պարտի հետեւեալ պարբերութիւններն աւարտել շեղագիր բառերը յետաշրջելով.

1. *Ազահը չէ որ կը տիրէ իւր ոսկւոյն, այլ . . .* 2. *Մարդ պէտք է որ մտածէ բոլոր ինչ որ կ'ըսէ, բայց չըսէ . . .* 3. *Պարտիմք ուտել ապրելու համար, եւ ոչ թէ . . .* 4. *Մարդ կարէ յարգել զոք առանց զայն սիրելու, ինչպէս որ կարէ . . .։* 5. *Եթէ շատ վախնանք մեռնելէ, մի օր ալ . . .։* 6. *Իւր թերութիւնները ուղղելու համար, մարդ կարէ ընել ամէն ինչ որ կ'ուզէ, բայց . . .։* 7. *Պէտք չէ կասկածիլ նոցա վերայ զորս կը գործածեմք, կամ պէտք չէ . . .։* 8. *Չնչենագոյն հիւղէն աշխարհ մի է, եւ . . .։* 9. *Խոնարհեցո գլուխդ, վէս Սիկամբրացի, պաշտէ ինչ որ այրեցիր, եւ . . .։* 10. *Սիրեցեալդ իմ, կ'ըսէր տիկին Տըլաղուր Մարգարիտային, իւրաքանչիւրն ի մենջ երկու զաւակ պիտի ունենայ, եւ իւրաքանչիւրն . . .։*

11. Ոչ ոք գոհ է զնմանէ որ չէ . . . : 12. Թագաւորաց սեղանաւորն է եւ . . . : 13. Ժողովուրդք չեն եղած թագաւորաց համար, այլ . . . : 14. Ի դէպ է դնել զայս արձանագիր ամէն գերեզմանատան դրան վերայ «Եղէ ես իբրեւ զքեզ . . . : 15. Դուք ապրեցէք այլոց համար, եթէ կ'ուզէք որ . . . : 16. Սոկրատ այնքան քաջ էր որքան իմաստուն, Տիւրէն այնքան . . . : 17. Փիլիսոփայից ոմանց համար կարեւորագոյն բանն է այլազգ քան զայլս խորհիլ. ուստի հաւատացեալ են անաստուածից քով, եւ . . . :18. Աստուած կը բարձրացունէ զայն որ կը խոնարհի, եւ . . . 19. Հէքդ Դիդէ, յորպիսի վիճակ հասուցին զքեզ քո ամուսնէից տխուր ճակատագիրը. միոյն մահը պատճառ եղաւ քո փախստեան, միւսին . . . : 20. Մարդ կարէ ունկնդիր լինել առանց լսելու, ինչպէս որ կարէ . . . : 21. Պատմութիւնը, կ'ըսեն, պարտի մեծարել զթագաւորս. աւելի ճիշդ չպիտի՞ լինէր ըսել թէ . . . : 22. Եթէ դու խանութդ աղէկ պահես . . . : 23. Այս աշխարհիս չարիք պիտի տեւեն մինչեւ որ իմաստասէրք թագաւոր լինին, կամ մինչեւ որ . . . : 24. Շատախօս մարդը կ'ըսէ բոլոր ինչ որ կը մտածէ, իսկ պարկեշտ մարդը . . . : 25. Որովհետեւ չէք կարող ընել ամէն ինչ որ կ'ուզէք . . . : 26. Այնքան դժուարին է մեծատանց իմաստութիւն ստանալ, որքան դժուարին է . . . : 27. Առանց զօրութեան արդարութիւնը ապիկար է, իսկ առանց . . . խժական է: 28. Պարտ է միալուծ կցորդել զարդարութիւն եւ զզօրութիւն, եւ այսպէս ինչ արդար բան գործեմք՝ զօրաւոր կը լինի այն եւ ինչ . . . : 29. Մի ըսէք ամէն ինչ որ կ'ընէք, բայց . . . : 30. Նայէ որ դու մղես քո գործերն, եւ ոչ թէ . . . : 31. Կարէ ոք բարեգործ լինել առանց առաքինի լինելու, բայց չկարէ երբեք . . . :

## ՀՐԱՀԱՆԳ Զ.

Աշակերտը պարտի հետեւեալ պարբերութիւններն աւարտել յետաշրջութեամբ.

1. ՎԵՀԱՆՁՆ (*) մարդը կը մոռանայ յիշելն . . . ։ 2։ Մեծ մարդիկ ՅԱԾԱԽ բռնաւորներ են, եւ . . . . ։ 3. Մանկանացուք, ձեր կեանքը յոյժ կարճ է եւ ընդհուպ պիտի վերջանայ. ԱՅՍՕՐ դուք երկիրը կը ծածկէք, . . . ։ 4. ԻՄԱՍՏՈՒՆԸ փառաւոր է առանց հպարտութեան . . . ։ 5. Մանկունք ՓՈՔՐԻԿ մարդեր են, եւ յաճախ . . . ։ 6. Դատաւորը ԽՕՍՈՒՆ օրէնք մի է, եւ . . . ։ 7. ՇՌԱՅԼԸ ԿԸ ՍՓՌԷ զոսկին իբրեւ աղբ, եւ . . . ։ 8. Պիտի գայ օր՝ յորում ամենայն գիտութիւնք իբրեւ կիցք քառուղւոյ՝ պիտի միանան այն մեծ գծին որ Կ'ԻՋՆԷ յԱստուծոյ առ մարդիկ եւ . . . ։ 9. Աստուածաբանութիւնն Աստուծոյ խորհուրդն է առ մարդն ԽՈՆԱՐՀԱԾ, իսկ փիլիսոփայութիւնն . . . ։ 10. Հանճարն ՅԻՄԱՐԱՑ երջանկութիւնն է . . . ։ 11. ԻՄԱՍՏՆՈՑՆ բերանը սրտին մէջն է, իսկ . . . ։ 12. Ո՞վ տիեզերաց մէջ ինքն իրեն կ'ապրի, ինքն իւր վերայ կը յենու եւ ինքն իրեն կը սնանի. տալով՝ ընդունել ԿԸ ՊԱՀԱՆՋԵՄՔ եւ . . . եթէ ոչ ամբողջն անհատին եւ . . . տան եւ ընտանիին, ամէն կողմ կեանքը կը ցամաքի։ ԵՐԻՏԱՍԱՐԴ, մոլութիւնքդ թերութիւնք են . . . ։

---

(*) Յետաշրջելու ժամանակ աշակերտը պարտի սոյն հրահանգին մէջ գլխագիր բառերուն հականիշը դնել։



## Է. ԱԿՆԱՐԿՈՒԹԻՒՆ

Հ. Ի՞նչ է Ակնարկութիւնն.

Պ. Ակնարկութիւն կը կոչուի երբ խօսքի մի ընթացքին մէջ յառաջ բերեմք այնպիսի խօսք մի կամ իրողութիւն մի եւ կամ անձ մի որ տեսակ մի նմանութիւն ունի այն նիւթոյն հետ զորմէ կը ճառեմք. այս նմանութիւնը բացորոշապէս չբացատրուիր, այլ գրողին միտքն ինքնին կը կատարէ լռելեայն։ Այս ձեւը կարէ առնուիլ առակներէ, առածներէ, պատմութենէ, աւանդութիւններէ, բարքերէ, սովորութիւններէ եւ նշանաւոր խօսքերէ։

Հետեւեալ օրինակները ուշ ի կուրծս ընթեռնուլ իւրեանց մեկնութեամբ հանդերձ։

Ա.

Հայր մի՝ որ իրաւամբ արժանի է այս անուան մեծ, պարտականութիւններ ունի կատարելու. պարտի նա միշտ իւր աչաց առջեւ ունենալ իւր որդւոց ապագայն. Ո՛ճիր կը գործէ նա երբ անհոգութեան մէջ ապրի եւ սա անձնասէր խօսքն ըսէ. ինձմէ յետոյ թող ջրհեղեղ յառնէ։

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

«Ինձմէ յետոյ թող ջրհեղեղ յառնէ.» Այս խօսքը կը վերագրեն Լուդովիկոս ԺԵ.ի որ այսպէս կը բացատրէր իւր անտարբերութիւնն բոլոր այն խառնակութեանց եւ աղետից համար որք կ՚սպառնային խուժել Գաղիոյ վերայ իւր յոռի կառավարութենէն յետոյ։

Գործածութեան մէջ, այս խօսքը ցուրտ անհոգութիւն մի կը նշանակէ։

Բ.

Մարդոց կարողութիւնքն հաւասար չեն. այս ոք, հակառակ իւր մեծաջան վաստակոց, չաջողիր անդ ուր այլ ոք կը յաջողի առանց մեծի իրիք դժուարութեան։ Ոդիսեայ աղեղան պատմութիւնն յաւիտեան ճշմարիտ պիտի լինի։

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

«Ոդիսեայ աղեղն». աղեղն յաղթ զոր դիւցազնն Ոդիսեւս եւեթ կարող էր լարել։ Ոդիսեւս քսան տարի Իթակէէն հեռի մնալէ յետոյ, վերջապէս իւր հայրենիքը կը վերադառնայ մուրիկի մի ցնցոտեօք ծածկուած։ Ոչ իւր կինը, ոչ իւր որդին, եւ ոչ ոք իւր ծառայներէն չճանչեր զինքն։ Ինքն, իբրեւ չուառական ոք, իւր ընտանեկան յարկին մէկ անկիւնը նստած կը դիտէ Պենելոպայ հետամուտներն որք, խրնճոյից մէջ ի կեր եւ ի յումպ տուած իւրեանց անձերն, կ'անարգեն իւր յիշատակն։ Սակայն Պենելոպ ուր ուրեմն բռնադատեալ ընտրութիւն մի ընելու իւր ցանկացողաց մէջէն, կը յայտնէ զի պատրաստ է հարսնանալ նմա որ պիտի յաջողի լարել զաղեղն Ոդիսեայ եւ նետաձիգ լինել ի նպատակն։ Ամենեքեան ի զուր փորձեցին։ Յայնժամ մուրիկն, առնլով զաղեղն, բոլոր ակումբին այպնալից ծաղուն մէջ, կը լարէ զայն կարշնեղ բազկօք, եւ անդր քան զնպատակն կը թռցունէ զնետն. յետոյ մի ըստ միոջէ նետահար կ'սպաննէ իւր կնոջ բոլոր հետամուտներն օգնութեամբ որդւոյ իւրոյ Տելեմաքայ։

Ի կիրառութեան, Ոդիսեայ աղեղն կը նշանակէ մասնաւոր տաղանդ մի, մտաւորական կամ բարոյա-

կան վօրութիւն մի, որ ժառանգութիւնը կամ կարողութիւնն է մասնաւոր անհատի մի որոյ ոչ ոք կարէ ժառանգորդ լինել։

Գ.

Օր մի, ժագ Ա. դեռահասակ արքայն կ'զբօսնուր խաղալով իւր մանկութեան եւ դպրոցի ընկերներուն հետ. Պիւքանան, որ զբաղած էր կարդալու, աղաչեց զանոնք որ նուազ աղմուկ հանեն։ Բայց որովհետեւ նոքա բնաւ չէին անսար իւր ազդարարութեանց, Պիւքանան ըսաւ երիտասարդ արքային որ եթէ չլռէ խարազանով ծեծել պիտի տայ զինքն։ Թագաւորն գոռոզութեամբ պատասխանեց թէ յոյժ պիտի ուրախ լինի ճանչնալով այն մարդը՝ որ այս պարագային մէջ, յանձն պիտի առնու բոժոժը կախել։

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

«Բոժոժը կախել» այս բացատրութիւնն Լաֆոնթէնի «ԽՈՐՀՈՒՐԴ ՄԿԱՆՑ» առակէն առնուած է։

Մկունք անագորոյն կատուի մի ջարդէն ազատելու հնար մի գտնելու համար խորհուրդ կ'ընեն։

Անդիէն ծեր խոհեմ Մուկ մի ձայն հանեց.
«Ես կ'ըսեմ թէ, ըսաւ քիչ մի մտածեց,
Ես կ'ըսեմ թէ այս բանիս մէկ ճար մի կայ,
Ան որ ընենք՝ ալ մեզ կատուէն վախ չկայ.
Ժամ մը առաջ պէտք է որ մեք սիրտ ընենք,
Անըզգամին վըզէն բոժոժ մը կախենք.
Ան բոժոժին ձայնէն հարկաւ կիմանանք
Անոր գալն, ու մէկէն ծակ մը կը մոնանք։»
Բոլոր ժողովքն հաւնեցաւ այս խորհրդին,
Մեծ ու պզտիկ արմնալով ծափ զարկին։
Մընաց որ մէկն երթայ բոժոժը կախէ,
Ի՛նչ դժուար բան. ո՞ր մուկն աոր սիրտ ընէ։
Մէկն ըսաւ թէ ափսոս որ ես հիւանդ եմ,

*Մէկալը թէ ես այնչափ ճարպիկ չեմ,*
*Մէկը՝ ծեր եմ, մէկը՝ տըղոց ես տէր եմ,*
*Մէկն ալ թէ ես սիրով աղ բանը կ'ընեմ,*
*Մէկը բռնէ թող կատուն,*
*Բոժոժը ես կը կախեմ։*
*Մըկները աս որ լըսեցին,*
*Լաւ մը վրան խնդացին,*
*Իրենք ալ խաղք խայտառակ՝*
*Փախան ամէն մէկն իր ծակ։*

*Ի կիրառութեան, բոժոժը կախել կը նշանակէ դըժուարին եւ վտանգաւոր ձեռնարկութեան մի մէջ առաջին քայլն առնուլ։*

Դ.

*Ի՞նչ զօրութիւն կարող է ոգեւորել այս ոգեվար պետութիւնը որ Չինաստան կը կոչուի. Ի՞նչ ձայն կարող է ըսել այս դիակին, արի եւ շրջեաց։*

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

*«Արի եւ շրջեաց». սոյն խօսքն Մատթէի աւետարանին Թ. գլուխէն է առնուած։ Յիսուսի՝ անդամալոյծ մի կը բերեն որպէս զի բժշկէ զայն. Յիսուս անդամալուծին կ'ըսէ «Թողեալ լիցին քեզ մեղք քո». Դպիրներէն ոմանք զայրանալով կ'ըսեն թէ հայհոյեց դա։ Յիսուս ալ անոնց խորհուրդը հասկնալով՝ կ'ըսէ անոնց «Ընդէ՞ր չար խորհիք ի սիրտս ձեր. Զինչ դիւրին է. ասե՞լ Թողեալ լիցին քեզ մեղք քո, թէ ասել՝ արի եւ շրջեաց։ Այլ զի գիտասջիք՝ եթէ իշխանութիւն ունի որդի մարդոյ յերկրի թողուլ զմեղս. յայնժամ ասէ ցանդամալոյծն. արի առ զմահիճս քո, եւ երթ ի տուն քո։ Եւ յարուցեալ գնաց ի տուն իւր։»*

*Ի կիրառութեան, այս բառերն կը ցուցունեն հաստատութեան մի կամ կազմութեան մի անկումը կասեցնելու կարող զօրութիւն մի։*

Ե.

Կռապաշտութեան աւերակաց վերայ հաստատուեցաւ քրիստոնէութիւնն, եւ իւր յաղթութիւնն այնքան արագ եղաւ, զի նա եւս կրնար ըսել, եկի, տեսի, յաղթեցի։

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

«Եկի, տեսի, յաղթեցի» բանք որովք ծանոյց Կեսար առ ծերակոյտն Հռովմէական այն յաղթութիւնն զոր տարաւ որդւոյ Միհրդատայ, Փառնակայ վերայ։

Ի կիրառութեան կը ցուցունեն այն արագութիւնն որով յաջողութիւն մի ստացուած է։

Զ.

Գրիչ, ահա այսօրուան ճշմարիտ Արքիմեդեսի լծակն. գրչաւ ի վեր կը բառնամ զաշխարհ։

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

«Արքիմեդեսի լծակն» ակնարկութիւն մի է Սիրակուսացի երկրաչափին այն նշանաւոր խօսքին զոր, լծակին անհուն կարողութեան վերայ սքանչացած, կ'ըսէր խանդավառ համոզմամբ. այն է «Թող յեցակէտ մի տրուի ինձ, եւ ես ի վեր կը բառնամ զաշխարհ։»

Ի կիրառութեան, Արքիմեդեսի լծակն կը ծառայէ ցուցնելու այն միջոցն որ մեծ բաներ կատարելու, եւ խոչընդոտները բառնալու զօրութիւնն ունի։ Ցայն սակս կրնամք ըսել նաեւ թէ, ամէն ժամանակ ամէն ժողովրդոց մէջ, հաղուագիւտ բացառութեամբ, ոսկին Արքիմեդեսի լծակն եղաւ։

ՀՐԱՀԱՆԳ 1.

1. Ինձմէ յետոյ թող ջրհեղեղ յառնէ
2. Ողիսեայ աղեղն

3. Բոժոժը կախել
4. Արի եւ շրջեաց
5. Եկի, տեսի, յաղթեցի
6. Արքիմեդեսի լծակն կամ յենակետն

Հետեւեալ պարբերութեանց մէջ աշակերտը պարտի կէտերուն տեղ վերոգրեալ ասացուածներն դնել պատշաճօրէն։

1. Այն գումարտակն որոյ հրամանատար էր արքայն քառասուն երկու գերմանական մղոն գացած էր հնգետասան օրուան մէջ, եւ հանգչելու համար մի օր եւ եթ ունեցած էր Պրեսլաւի յիշատակելի ճակատամարտը մղելէ առաջ։ Արքայն կարէ ըսել իբրեւ զԿեսար . . . ։

2. Կը խոստովանիմ որ հարստանալն այն միակ փառասիրութիւնս էր որում չկարողացայ յաղթել բնաւ ո եւիցէ պարագայի մէջ։ Ոսկւոյ սէրն ունէի, շատ ունենալ կ'ուզէի անկէ. որովհետեւ, ըստ իմ կարծեաց, հարստութիւնն այն .... է զոր կը խնդրէ Արքիմեդէս, եւ որով մարդ կարէ . . . ։

3. Կանայք չեն ապրիր ապագայի մէջ. իւրեանց թագաւորութիւնն առօրեայ է, զի գեղեցկութեան թագաւորութիւնն է, գեղեցկութեան որ տակաւ առ տակաւ կը կորնչի։ Հանճարեղ կանայք որք ուզեցին կառավարել զաշխարհ, հեռաւոր հորիզոնի մի ամպերը երբեք չնշմարեցին. իւրեանց շուրջը միայն կրցան դիտել, եւ ոչ հեռին։ Տիկին Տը Բոմբատուր կ'ըսէր Լուդովիկոս ԺԵ.ի պէս . . . . . . . . ։

4. Կարոլոսի մականը . . . . մի էր զոր օտար բազուկ մի չկարէր լարել, իւր տկար յաջորդներն ընկճեցան աշխատութեանց բեռան տակ, եւ մարթի ասել զի Քարլովէնկեան հարստութիւնը (իշխանութիւն) իւրեամբ վերջացաւ։

5. Ուղղափառ հաւատք, պերճախօսութիւն եւ առաքինութիւն, այս է այն եռակի . . . որով Սուրբն Պեռնարդոս . . . . ։

6. Պիտի պատահի Թագաւորին ինչ որ պատահեցաւ Կեսարու։ Միակ տարբերութիւնը այն է որ այս ամէնը շատ ժամանակի մէջ պիտի ընէ։ Անդստին ի նմանէ որ կ'ըսէր . . . , այլ եւս յանկարծ չբժշկուիր քսան եւ հինգ տարուան հինցած ցաւերն։

7. Աշակերտաց մէջ խնդիր կար արձակուրդի օր մի խնդրելու. ամէնքն ի մի վայր գալով որոշեցին որ յաջողելու ապահովագոյն միջոցն է միահամուռ դիմել առ Տնօրէնն, առ այն Տնօրէնն ահաւոր որ, Արամազդայ նման, զանոնք կը դողացունէր մի միայն իւր յօնքերն պռստելով։ Բայց ո՞վ պիտի համարձակէր խօսիլ. ո՞վ . . . . ։ Վերջապէս գտնուեցաւ ոք որ հասարակաց օգտին համար իւր անձը նուիրեց։

## Ա

**Պաշտէ ինչ որ այրեցիր, այրէ ինչ որ պաշտեցիր**

**Adore ce que tu as brûlé, brûle ce que tu as adoré**

Կլովիս Ա. արքայ կռապաշտ, հիմնադիր Գաղիոյ միապետութեան, Թօլպիաքի ճակատամարտին մէջ, մերձ ի պարտութիւն, իւր Կլօթիտ կնոջ Աստուծոյն օգնութիւնը հայցեց, ուխտելով որ եթէ նոյն ճակատամարտին մէջ յաղթէ քրիստոնեայ կը լինի։ Մարտն ընդհուպ բորբոքեցաւ եւ յաղթեց Կլովիս։ Յետոյ իւր խոստումը կատարելով Ռէմի եպիսկոպոսէն մկրտուելով քրիստոնեայ եղաւ։ Մկրտութեան պահուն եպիսկոպոսն այս նշանաւոր խօսքերն ուղղեց առ նա «Խոնարհեցո գլուխդ, վէս Սիկամբրացի, պաշտէ ինչ որ այրեցիր, այրէ ինչ որ պաշտեցիր։»

Եպիսկոպոսին սոյն խօսքերն յաճախ կը գործա-

ծուին ակնարկութեամբ առաջին մասն՝ այսինքն «Խոնարհեցո՛ գլուխդ, վէս Սիկամբրացի» հնազանդութիւն յայտնելու համար նոր վարդապետութեան կամ կատարուած իրողութեան մի. երկրորդ մասն «պաշտէ ինչ որ . . .» այսինքն հրաժարէ կարծիքներէդ, զգացումներէդ, ընդունելու համար այլ հակառակ կարծիս եւ զգացմունս։

Բ

**Ագար յանապատի**

**Agar dans le désert**

Սառա սկսած էր իւր Ագար աղախնոյն որդւոյն, Իսմայէլին, ընդ ակամբ հայիլ։ Աբրահամ իւր կնոջ խորհրդոյն անսալով զԱգարն հանդերձ որդւով իւրով Իսմայէլաւ, իւր երկիրը ղրկեց, տալով նմա դոյզն ինչ հաց եւ ջուր ի պաշար ճանապարհի։ Ջուրն սպառեցաւ յուղւոջ, Իսմայէլ ծարաւահիւծ անկաւ աւազին վերայ եւ Ագար հեռացաւ անտի արտասուելով՝ չտեսնելու համար իւր որդւոյն մահը։ Յանկարծ հրեշտակ մի երեւեցաւ նմա եւ ցուցուց աղբիւր մի կենդանի ջրոյ, ուր Ագար իւր ծարաւն անցուց իւր որդւոյն հետ եւ յառաջ վարեց իւր ուղին։

Գ

**Իկարեան թեւեր կամ Իկարոս**

**Ailes d'Icare ou Icare**

Աթէնքի մէջ ճարտար արձանագործ մի կար Տեդալոս անուամբ զորմէ կ'ըսեն թէ շարժուն արձաններ կը դրոշէր։ Սա կասկածելով որ իւր թոռն իւրեան պիտի յաղթէ արուեստին մէջ, զայն դաւով սպաննեց, եւ ինքն իւր Իկարոս որդւով Կրէտէ կղզին Մինովս արքային քով փախաւ։ Անդ շինեց ականաւոր

բաւիղն որ անել բանտ մի էր։ Երբոր կ'ուզէր կղզիէն մեկնիլ, Մինովս զայն արգիլեց բաւիղին մէջ։ Բայց Տետալոս, իւրեան եւ որդւոյն, մոմով մածուցիկ թեւեր շինեց եւ անոնցմով թռչելով կը դիմէր յԻտալիա։ Այլ Իկարոս, երկնից բարձրութեան միջասահմանին մէջ չկենալով, արեգական շատ մօտեցաւ եւ թեւերն հալելով ինկաւ ի ծով։

Ի կիրառութեան, Իկարեան թեւերն կ'անձնաւորեն յաւակնայեղց փառասիրութիւնները, եւ երիտասարդտիոց յանդուգն ձեռնարկութիւնները։

## Դ

### Անդրոմէդ

### Andromède

Անդրոմէդ էր դուստր Կէփէոսի, արքային Եթովպացւոց. սա հպարտանալով ինքզինքն գեղեցիկ քան զՆերեայս կը կարծէր. ուստի Պոսիդոն առ վրէժ քինու ծովային ահարկու ճիւաղ մի ղրկեց որ կ'աւերէր բոլոր Եթովպիան։ Պատգամին. հարցուելով՝ պատասխանեց թէ պէտք է ժայռի մի կապել Անդրոմէդն, այն ծովային նհանգին ճարակ լինելու համար։ Անդրոմէդ կապուեցաւ ժայռին եւ երբ նհանգն զայն պիտի պատառէր, Պէրսէոս որ հեծեալ ի Պեգասոս կ'անցնէր անտի, սպաննեց զայն, եւ Անդրոմեդեայ շղթայներն խզելով զայն իւրեան հարսնացուց։

Ի գրականութեան, Անդրոմէդ կ'անձնաւորէ զկինն որ իւր բնութեամբն եւ փափուկ կազմուածքովն նշաւակ եղած է բիւր վտանգաց, եւ որ պարտի իւրեան բնական պաշտպան ունենալ զայրն որ կը ներկայացունէ զարիութիւն եւ զքաջութիւն։

## Ե

### Պանդորայ տուփն

### Boîte de Pandore

Պանդորա, Ցոյն դիցաբանութեան Եւայն, առաջին կինն էր ստեղծեալ յաշխարհի։ Երբոր Պրոմէթէոս հուր գողցաւ յերկնից կենդանագործելու համար իւր ստեղծ մարդ մի, Արամազդ զայրացաւ նորա յանդըգնութեան վերայ, եւ հրամայեց Հեփեստոսին որ կին մի ստեղծէ եւ, իւր արուեստին բոլոր ճարտարութեամբը, մարմնական գեղով զարդարէ զայն։ Ողիմպեան միւս աստուածք եւս ուզեցին այս հրաշարուեստ գործոյն կատարելութեան նպաստել. եւ Աթենաս տուաւ նմա իմաստութիւն, Ապողոն երաժըշտութիւն, Հերմէս ճարտարախօսութիւն եւ այլք այլ պարգեւներ. Նմին իրի Պանդորա անուանեցաւ նա, այսինքն ամենապարգեւ։ Իսկ Արամազդ ամրափակ տուփ մի տուաւ նմա պատուիրելով որ Պրոմէթէոսի տանի զայն։ Պրոմէթէոս վտանգն զգալով չուզեց ընդունիլ ոչ զՊանդորա եւ ոչ զտուփն։ Սակայն իւր եղբայրն, Եպիմէթէոս, բարեկից կարծելով զայն տուփն, բացաւ եւ անդէն աղէտք եւ թշուառութիւնք՝ որք այն տուփին մէջ էին, հեղան զեղան յաշխարհ։ Եւ թէպէտեւ Եպիմէթէոս փութաց փակել զայն անդրէն, այլ ոչ եւս էր ժամանակ. Յոյսը միայն տուփին յատակը մնացած էր։

Մատենագիրք յաճախ Պանդորա տուփը կ՚անկարկեն աղետալի դիպաց պատճառին առթիւ։

## Զ

### Իւր նաւերն այրել

### Brûler ses vaisseaux

Ակնարկութիւն մի է՝ այն յանդուգն գործոյն զոր

ըրաւ Ագաթոկղէս, Սիրակուսայի բռնաւորն։ Սա երբ արշաւանք մի ընելով յԱփրիկէ, ցամաք ելաւ, այրել տուաւ իւր բոլոր նաւերն որովք եկած էր, որպէս զի իւր զօրքերը յաղթելու կամ կորսուելու հարկին մէջ դնէ, բառնալով ի նոցանէ ամէն միջոց յետս դառնալու։

Այս բացատրութիւնն՝ որ առածի կարգ անցած է, կը նշանակէ՝ բառնալ, նմանօրինակ յանդգնութեամբ մի, ամէն միջոց որոշումէ մի կամ ձեռնարկութենէ մի ետ չկենալու համար. կամ ինքզինքը վերջատնելու անկարելիութեան մէջ դնել։

## Է

## Բոլորակ Պոպիլեայ
## Cercle de Popilius

Անտիոքոս Եպիփան, Ասորւոց Թագաւորն, օգուտ քաղելով Պտղոմէոս Փիլոմետորի կրտսերութենէն, գրաւած էր Եգիպտոսի մէկ մասն։ Հռոմ, նախանձաբէկ եղած այս գրաւումէն, իբր դեսպան, Պոպիլիոս Լանոս բդեշխը ղրկեց, ծանուցանելու համար Ասորւոց Թագաւորին որ իւր աշխարհակալութիւնները դադրեցունէ։ Թագաւորը խնդրեց որ խորհրդակցի իւր խորհրդականաց հետ, բայց Պոպիլլիոս, խրոխտ շարժմամբ մի, Անտիոքոսի բոլորտիքը աւազի վերայ շրջանակ մի գծեց եւ ըսաւ «Այս շրջանակէն դուրս չելած՝ տուր ինձ այն պատասխանը զոր պիտի տանիմ առ ծերակոյտն»։ Թագաւորն յապուշ կրթեալ այս ամբարտաւան հրամանին վերայ, եւ վախնալով հռոմէական ժողովրդեան փառամոլ եւ հզօր զէնքերէն, խոնարհաբար կատարեց ամէն ինչ որ իրմէն խնդրուեցաւ եւ թողուց զԵգիպտոս։

Այս շրջանակին կ՚ակնարկուի երբ անմիջական որոշում մի ընելու հարկ լինի։

## ՀՐԱՀԱՆԳ Ջ.

Աշակերտը պարտի կէտերուն տեղ պատշաճ ակնարկութիւն մը դնել նախընթաց ակնարկութիւններէն.

1. Թշուառ աղջիկը դուրս ելլելով Իզպաէն, ուր գիշերն անցուցած էր, պահ մը սարսռաց երբ ինքզինքը բոլորովին միայնակ տեսաւ։ Ցիշեց յանդժամ... պատմութիւնը եւ քաջալերեցաւ։ Խաչակնքեց եւ ինքզինքն իւր պահապան հրեշտակին յանձնելով ճամբան շարունակեց։

2. Կատակերգութեան մը մէջ, անձերէն մին կուզէ գինետուն տանիլ զԱրլըգէնն. բայց Արլըգէն յօժարամէտ լինելով ժուժկալութեան՝ լրջութեամբ պատասխանեց.«Բաժակը . . . շիշին խորէն դուրս կ'ելնեն ամէն չարիք։»

3. Փորձեցի զօրանալ մօտք այնքան ապացոյցներու մէջ. կ'որոշէի այն սահմանը ցորվայր պիտի կարէի երթալ եւ անտի անդր չանցնիլ. ի մի բան, իմ շուրջը կը գծէի . . . մի, ընդ որ անցանել կ'արգելուի ինձ։

5. Ժողովուրդը խիստ յաճախ կոյր է իւր զարմացման մէջ ինչպէս իւր ատելութեանց մէջ, կը կործանէ վաղիւ այն արձանը զոր կանգնած էր նախընթաց օրն. ի մի բան . . . . . . ։

5. Բնութեամբ երկչոտ մարդիկ դուն ուրեք կը նետուին վտանգաւոր ձեռնարկութեանց մէջ. այսպիսի նկարագիր ունեցող մարդիկ չեն կարող յանդուգն որոշումներ ընել եւ . . . . . ։

6. Մոնկոլֆիէ եղբարց գիւտը, յորմէհետէ հազիւ դար մի է, բազմաթիւ իրահամարձակ . . . մահուան պատճառ եղած է արդէն։

7. Մարդը զօրաւոր է քան զկին. մարդն առնացի

դաստիարակութիւն մի ունի. օրէնքը նպաստած է նմա. լաւագոյն արուեստները կը գործէ եւ աւելի կը շահի. ազատ է, ուր որ կամի կ'երթայ։ Իսկ կինն, աւա՜ղ, հէգ . . . . պէտք է որ մեռնի . . . ։

## Ա

### Կէսլէրի գլխարկը

### Chapeau de Gessler

Գերմանիոյ Ալբերտոս կայսրն, Հելուետիան նուաճելով, իւր կողմէն Կէսլէր անուանով կուսակալ մի դրաւ Շուից եւ Ուրի նահանգներուն վերայ։ Կէսլէր հպարտ եւ անգութ մարդ մի լինելով միտքը դրաւ իբրեւ գերի գործածել հպատակներն։ Ալթորֆ քաղաքին հրապարակին վերայ իւր գլխարկը ցցի մի ծայրը անկել տալով հրաման հանեց որ բոլոր նոյն նահանգաց հելուետացիներն առջեւէն անցնելով այդ գըլխարկին ողջունեն զայն։ Գուլիէլմոս Թէլ մերժած լինելով այս հրամանն, կուսակալը զայն բռնել տուաւ եւ, գիտնալով նորա ճարտար աղեղնաւոր լինելն, դատապարտեց զայն իր դեռատի որդւոյն գլխուն վերայ դրուած խնձոր մի նետահար ընելու. փորձ ահաւոր յորում սակայն Գուլիէլմոս Թէլ յաղթական հանդիսացաւ։

Մատենագիրք կը յիշեն Կեսլերի գլխարկն երբ չուզէ ոք գլուխ խոնարհեցունել նուաստացուցիչ պահանջի մի առջեւ։

## Բ

### Կապիտոլէն Տարպէյեան ժայռը մի քայլ է

### Du Capitole à la roche Tarpienne il n'y a qu'un pas

Ի Հռովմ, Կապիտոլ՝ ուր յաղթողք կը պսակուէին, շինուած է Տարպէյեան ժայռին մօտ ուստի ի վայր

կը գաՀավիժէին ոճրագործներն ։ Ի կիրառութեան կը նշանակէ թէ՝ ամենէն պայծառ յաջողութեանց կարէ անմիջապէս յաջորդել մեծ անկում մի, զոր օ-նակ բարձր պաշտօնէ մի ելնալ կամ ժողովրդակա-նութիւնը կորսնցունել ։

## Գ

### Յակոբայ սանդուղը

### Echelle de Jacob

Սանդուղ խորՀրդաւոր զոր Յակոբ տեսաւ յերա-զի, երբ, իւր Եսաւ եղբօր բարկութենէ ազատելու Համար, իւր մօրեղբօր Լաբանու կ'երթար ։ Մի վայր Հասնելով՝ որ յետոյ Բեթէլ կոչուեցաւ, քնացաւ, եւ երազին մէջ սանդուղ մի տեսաւ որոյ ոտքը երկրի վերայ էր եւ գլուխը մինչեւ երկինք կը Հասնէր ։ Հը-րեշտակներ կ'ելնէին կ'իջնէին այս սանդուղին վերա-յէն եւ, նոյն միջոցին, Աստուած կ'իմացունէր Յակո-բայ թէ իւր սերունդը ծովուն աւազին չափ բազմա-թիւ պիտի լինի ։

Այս ակնարկութիւնը կը վերաբերի մանաւանդ ի-մաստասիրական լեզուին. յաճախ՝ այս սանդուղին ծայրն, տեսլականն (idéal) է առ որ չՀասնիր մարդ-կային Հանճարն, բայց եթէ տաժանաբար մագլցելէ յետոյ բոլոր ստորին աստիճանները ։

## Դ

### Ես եւս նկարիչ եմ

### Et moi aussi je suis peintre!

Գորէժ, նկարիչ Իտալացի, երիտասարդ տակաւին եւ անծանօթ, այս խօսքն արտասանեց ազնիւ փա-ռասիրութեան խանդով երբ օր մի Ռաֆայէլի մի նկարը տեսաւ ։

Գործածութեան մէջ այս խօսքն, որ վստաՀութիւն

մի կը յայտնէ յինքեան, աղաղակն է յանկարծ եւ անզխմադրելի կերպով ի յայտ եկող կոչման մի. գեղեցկութեան մի հրապոյրէն բռնկած հոգւոյ մի յոյզն է որ այսպէս գոչել կուտայ։

### Ե

### Եւ սակայն կը դառնայ

### Et pourtant elle tourne!—Et pur si muove!

Գալիլէոս գտած էր երկրիս օրական թաւալումը։ Եւ որովհետեւ այս գիւտն Ս. գրոց հակառակ կը կարծուէր, զինքը դատապարտեցին որ այս կարծիքէն հրաժարի։ Գալիլէոս հնազանդեցաւ այս վճռոյն, այլ գոչելով իւր ոգւոյն բոլոր զօրութեամբ «Եւ սակայն կը դառնայ։»

Այս խօսքը կը գործածուի հաստատելու համար եռանդեամբ ճշմարտութիւն մի զոր կ'զգայ ոք ներքին համոզմամբ, բայց անկարող է հաստատելու յայտ յանդիման։

### Զ

### Պարթեւեան նետ

### Flèche du Parthe

Պարթեւաց հեծելազօրք անուանի էին. խիստ ահաւոր էին նոքա, երբ փախչիլ ձեւանալով նետ կը նետէին իւրեանց ուսին վերայէն զիրենք հալածող թշնամւոյն. ուստի իւրեանց փախուստը ճակատամարտէ մի աւելի սոսկալի էր։ Արդ, պարթեւեան փախուստ կամ պարթեւեան նետ արձակել կը նշանակէ փախչիլ եւ միանգամայն իւր թշնամւոյն վնասել։ Մատցի մատենագիր մի ըսած է. «Ժամանակը կնճիռներ կը նետայ, ինչպէս Պարթեւը նետեր կ'արձակէր փախչելով։»

### Է

### Կը սիրեմ զՊղատոն, բայց ճշմարտութիւնը աւելի կը սիրեմ

### J'aime Platon, mais j'aime encore plus la vérité

*Պղատոնի սկզբունքներն եւ գրուածներն յոյժ կը յարգուէին ի Յունաստան։ Արիստոտէլ իւր աշակերտն իրեն չափ անուանի եղաւ, բայց յետոյ սկսաւ բաժնուիլ իւր վարդապետին սկզբունքներէն, եւ երբ նորա վարդապետութեանց հակառակ խօսէր, փիլիսոփայի մի խմաստութեամբ իւր կարծիքը կը յայտնէր եւ ոչ թէ հակառակորդի մի դաժանութեամբ եւ կ'ըսէր «Կը սիրեմ զՊղատոն, բայց ճշմարտութիւնը աւելի կը սիրեմ։»*

*Սոյն խօսքը գրեթէ միշտ նմանօրինակ պարագայից մէջ կը գործածուի. այսինքն չարհամարհել այն անձն որ ընդունած է մեր մերժած ճշմարտութիւնը։*

### Ը

### Օրս կորսնցուցի

### J'ai perdu ma journée

*Նշանաւոր խօսք Տիտոս կայսեր զոր կ'ըսէր երբ առանց բարիք ընելու օր մի անցունէր։*

### Թ

### Դիոգինեայ լապտերը

### Lanterne de Diogène

*Ակնարկութիւն մի է հնական փիլիսոփային մի երգիծական գործին։ Սա այնքան խորին զզուանք մի ունէր բովանդակ մարդկութեան դէմ, զի օր մի, ցերեկ ատեն, երբ լապտեր ի ձեռին Աթէնքի փողոցներուն մէջ կը պտըտէր, պատճառն հարցնողներուն կը պատասխանէր «Մարդ մի կը փնտռեմ»։*

*Դիոգինեայ այս խօսքն առակի կարգ անցած է եւ յաճախ կը գործածուի։*

## Ժ.

### Խոզերուն առջեւ մարգարիտ մի նետէք

### Ne jetez pas des perles devant les pourceaux

*Մատթէոս աւետարանչին մէկ խօսքն որ կը նշանակէ թէ պէտք չէ տգիտի մի առջեւ խօսիլ այնպիսի բաներ զորս չհասկնար։*

### ՀՐԱՀԱՆԳ Յ.

Աշակերտը պարտի գծերուն տեղ նախընթաց ակնարկութիւններէն մին դնել.

1. *Ամէն առաւօտ Լորտ Վէլլինկթոն կրնար ինքզինքը պղնձեայ Աքիլլէսի մի կերպարանքին տակ տեսնել. զարթում մի որ յոյժ ցանկալի է։ Դժբախտաբար ազնիւ դուքսն յոյժ կեղակարծ ժողովրդականութիւն մի կը վայելէր, եւ խածատուած ամբոխն ամենամեծ հաճոյք մի կ'զգար քարի հարուածներով նորա ապակիները կոտրելուն մէջ։ Գեմոնեան սանդուղ մի է այս մերձ ի Բանթէոն, . . . :*

2. *Քանի՜ խորհողք, քանի՜ անծանօթ հնարիչք կը մեռնին իւրեանց գաղափարին յաղթութիւնը տեսնելէ առաջ, եւ որք, լի վստահութեամբ յինքեանս, միայն գոչեցին . . . :*

3. *Ֆիրտէվսի Պարսիկ բանաստեղծն, թշնամանուելով իւր արքայէն, թողուց արքունիքն եւ գաղտնաբար մեկնեցաւ, կնքեալ թուղթ մի տալով բարեկամի մի որ յետ քսան աւուրց Շահին պիտի յանձնէր զայն։ Երբ Շահը բացաւ այն թուղթը, կծու երգիծաբանութիւն մի գտաւ հոն, . . . :*

4. *Մեք չեմք այն ծայրայեղ եւ մոլեռանդ զարմացողներէն որոնք իւրեանց ընտրած մատենագրին կամ արուեստագիտին վերայ բնաւ թերակատարութիւն*

մի չեն ուզեր ընդունիլ։ Ամէն խղճահար (consciencieux) քննադատ պէտք է որ կարենայ ազատօրէն յայտնել իւր կարծիքը, առանց անձերէ նախապաշարուելու, . . . այս պարտի լինել նշանաբանն ամէն մարդու որ գրիչ կը բռնէ։

5. Սուլուած թատերգութեանց հեղինակներն միշտ յոռեճաշակ կը համարեն զհասարակութիւնն եւ անկարող է, կ՚ըսեն, գնահատելու համեղ կերակուրներն, եւ կը մխիթարուին այս առածով . . . :

6. Ամենէն կամչոտ (capricieux), ամենէն ահաւոր, ամենէն բռնաւոր գրաքննիչն, ժողովուրդն է, որ կը զայրանայ ամէն յանդուգն ճշմարտութեան դէմ, որ իւր նախապաշարումներն կը կանգնէ ցցի մի ծայրն եւ իբր Կէսլէր, կ՚ուզէ որ . . . նոցա առջեւ։

7. Ի Փարիզ երբեմն երեկոյներն մարդ կը պատահի փերթաքաղներու (chiffonier) որք անձերնին կը ծածկեն իւրեանց հնոտեաց մէջ ինչպէս Դիոգինէս իւր ծակ վերարկուին մէջ։ Անոր նման, կանթեղ մի ալ ունին ի ձեռին, ոչ սակայն . . ., այլ գտնելու համար յանկեան ուրեք հաց եւ մանաւանդ գինի։

8. Ոչ թէ, ըսաւ բժիշկն, ուտելու փափաք մի կ՚զգամ· այլ ապուր մի պէտք է ինձ։ Այնպէս հին սովորութիւն մի ունիմ զի, եթէ քսան եւ չորս ժամ անցունեմ առանց ապուր խմելու, կ՚ըսեմ եւ ես . . . :

9. Ճարտարապետութիւն, քանդակագործութիւն, նկարչութիւն, երաժշտութիւն, բանաստեղծութիւն, այսոքիկ են այն աստիճանք որովք մարդկային երեւակայութիւնն կը ձգտի կը բարձրանայ մինչեւ անմահ գեղեցկութիւնն։ . . . է այն որոյ վերայէն անդադար կը բարձրանան երազք մարդկային մտաց։ Մէկ ծայրն, կը յենու երկրի. միւս ծայրն կը հպի երկնից։

10. Կը պատմեն թէ Շէյքսբիրի թատերգութեան

մի միայն ներկայացումը տեսնելով զգաց որ զարթեալ յինքեան բանաստեղծն. մարթ էր նմա գոչել յայնժամ...:

## 4. ԻՄԱՍՏՆԵՐՆ ԸՆԴԼԱՅՆՈՂ ՁԵՒԵՐ

Հ. Ո՞րք են իմաստներն ընդլայնող ձեւերն.

Պ. Իմաստներն ընդլայնող ձեւերն են. Ա. *Շրջաբանութիւն* (Périphrase ou Circonlocution). Բ. *Կուտակումն կամ Թուումն մասանց* (Accumulation ou Enumération). Գ. *Սահման* (Définition). Դ. *Նկարագրութիւն* (Description):

### Ա. ՇՐՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Կարդացէք հետեւեալ պարբերութիւնները շեղագիր բացատրութեանց ուշ դնելով.

1. *Գիշերւան թագուհին* (Լուսինը) տակաւ առ տակաւ բարձրացաւ յերկինս. էր զի հանդարտիկ իմն յառաջ կը վարէր իւր ընթացքն՝ կապուտակ ասպարիզին մէջ, էր զի կը հանգչէր ամպոց կոյտերու վերայ, որք լերանց ձիւնապատ գագաթանց կը նմանէին:

**Շաքսպրիան.**

2. Լուսնին կապտագոյն եւ թաւշաթոյր լոյսը կ'իջնէր ծառոց անջրպետներուն մէջ եւ *լուսեղէն խուրձեր* (ճառագայթներ) կ'արձակէր մինչեւ թանձրամած խաւարներուն մէջ: Վտակն որ իմ քովէն կը սողոսկէր մանուածաւալ, մերթ կը կորնչէր անտառներուն մէջ, մերթ յերեւան կուգար, համակ շողշողուն *գիշերոյ*

համաստեղութեանն (աստղերին), զորոյ պատկերին հը-րաշագեղ կը ցոլացունէր իւր ծոցին մէջ։

Նոյն

3. Որք պատէին խարշափուն բանջարով, եւ զար-մատս փայտից ծամէին ի սաստիկ սովոյ, որոց տունք իւրեանց էին ծակք վիմաց, որք ընդ խոռուովք վայրենեօք բնակեալ էին, արդ քնար եմ ես նոցա (Աղքատ եւ ախելքոր մարդկան ծաղր եղէ)։

Յոբ. Գ. Լ.

4. Ահա ձմեռն՝ եանց, անձրեւք անցին եւ գնացեալ մեկնեցան, ծաղիկք երեւեցան յերկրի մերում, ժամա-նակ եհաս յատանելոյ. ձայն տատրակի լսելի եղեւ յերկ-րի մերում (Եհաս գարուն)։

Սողոմոն. Երգ Երգոց. Բ. 11

5. Հիացէք այն մեծ ճարտարապետին վերայ որ տիե-զերաց զարմանակերտ յօրինուածոյն յատակագիծը շինեց (Աստուծոյ վերայ)։

Պ. Լարուս

6. Վայրենիք ճաշելու համար Ադամին պատառա-քաղները (իւրեանց մատները) կը գործածեն։

Նոյն

7. Մանուկ էի մատաղատի, եւ իմ տիար միտքն հազիւ կարէր, մատանցս օգնութեամբ, հաշուել թէ գարունն հինգից էր թռուած, եւ իւր թեթեւ թեւերով հինգից էր ինձ հպած (Հինգ տարեկան էր)։

Օր. Ժիւրանվիլ

8. Ութեւտասն գարուններ նորա սիրուն գլխոյն վե-րայ ծաղիկներ սփռած էին շիաքուն (Ութեւտասն տարեկան էր եւ գեղեցիկ)։

Ս. Լըվիէ

1. Հ. Ի՞նչ կը դիտէք վերոգրեալ պարբերութեանց մէջ.

Պ. Կը դիտեմք որ չեղագիր բացատրութիւնք աւելի համառօտիւք այսինքն բուն իմաստին յատուկ բառերով կրնային ըսուիլ. բայց յայնժամ ոճը նուազ շնորհալից և նուազ բանաստեղծական պիտի լինէր։

2դ. Հ. Ի՞նչ կը կոչուի այս ձեւն.

Պ. Շրջաբանութիւն։

3դ. Հ. Ի՞նչ է ուրեմն Շրջաբանութիւնն.

Պ. Շրջաբանութիւնը ձեւ մի է որով իր մի կամ գաղափար մի իւր ստորոգելեաց, հանգամանաց կամ արդեանց միջոցաւ կը յայտնեմք առանց նորա անունը տալու։ Այս ձեւը կը ծառայէ խօսքը զարդարուն ու ճոխ ընելու, անախորժ կրկնութենէ խուսափելու, և հասարակ գաղափար մի ազնուօրէն բացատրելու։

## ՀՐԱՀԱՆԳ 1.

Աշակերտը պարտի հետեւեալ շրջաբանութեանց տեղ յատուկ բառը դնել.

1. Գաղիոյ մայրաքաղաքը։ 2. Սիոնի դուստրը։ 3. Ադրիական դշխոյն։ 4. Հարիւրդռնեայ քաղաքը։ 5. Ծովահէններու բոյնը։ 6. Մարդկային ազգին որորանը։ 7. Մարդկային գիտութեանց որորանը։ 8. Շուշանաց պետութիւնը։ 9. Մօյի արծիւն։ 10. Մանդուի կարապը։ 11. Արարչութեան պատմագիրը 12. Աթէնքի օրէնսդիրը։ 13. Սպարտայի օրէնսդիրը։ 14. Թագաւոր—Մարգարէն։ 15. Տրո-

*վական Ջմարտին դիւցազնը* ։ 16. *Հելուետիոյ ա-զատիչը* ։ 17. *Սաարտամի ատաղձագործը* ։ 18. *Սիրեցեալ աշակերտը* ։ 19. *Թրակացի երգիչն* ։ 20. *Թեբացի երգիչն* ։ 21. *Աւսոնիոյ երգիչն* ։ 22. *Աքիլլեայ երգիչն* ։ 23. *Ենէասայ երգիչն* ։ 24. *Աղբերաց յաւերժահարսունք* ։ 25. *Անտառաց յաւերժահարսունք* ։ 26. *Գեղեցկութեան դիցուհին* ։ 27. *Հնձոց դիցուհին* 28. *Պատերազմաց դիցուհին* ։ 29. *Ծաղկանց դիցուհին* ։ 30 *Մրգոց դիցուհին* ։ 31. *Իմաստութեան դիցուհին* ։ 32. *Յիշողութեան դիցուհին* ։ 33. *Կոյր դիցուհին* ։ 34. *Գարնան երգիչն* ։ 35 *Մուսայից սիրելին* ։ 36. *Ապեղէսի նախանձորդ մի* ։ 37. *Այլ ոմն Ապեղէս* ։ 38. *Զեւքսիսի արուեստը* ։ 39. *Եսքիւլապի աշակերտ մի* ։ 40. *Տեքարդի աշակերտներն* ։ 41. *Եպիկուրի աշակերտներն* ։ 42. *Պղատոնի աշակերտներն* ։ 43. *Նոր ոմն Իկարոս* ։ 44. *Հոգւոց բժիշկը* ։ 45. *Երկնային զինուորութիւնք* ։ 46. *Հաւատոյ ըմբիշք* ։ 47. *Անապատի նաւ* ։ 48. *Արտասուք արշալուսոյն* ։ 49. *Թագաւորաց վերջին փաստն* ։ 50. *Հոգւոյն բանտը* ։ 51. *Փլորայի պարգեւները* ։ 52. *Պոմոնայի պարգեւները* 53. *Դիմէտրի պարգեւները* ։ 54. *Ի դարձ զեփիւռից* ։ 55. *Շնորհաց խորհրդատու* ։ 56. *Ծովածուփ տուն* ։ 57. *Մեծ այրն արտասանել* ։ 58. *Հոգին աւանդել* ։ 59. *Յանոսի տաճարը բանալ* ։ 60. *Յանոսի տաճարը փակել* ։

## ՀՐԱՀԱՆԳ Զ.

Աշակերտը պարտի հետեւեալ բառերն շրջաբանութեամբ վերածել

1. *Առիւծ* ։ 2. *Թռչունք* ։ 3. *Ձկունք* ։ 4. *Զինուորք* ։ 5. *Շուն* ։ 6. *Երախտապարտութիւն* ։ 7. *Հասուն հասակ* ։ 8. *Ծերութիւն* ։ 9. *Գարուն* ։ 10. *Աշուն* ։ 11. *Ծով* ։ 12.

Ադամ։ 13. Եւա։ 14. Աբրահամ։ 15. Եդեմ։ 16. Կեր-բերոս։ 17. Կարոն։ 18. Պղուտոն։ 19. Եւողէ։ 20. Ատտիլա։

## ՀՐԱՀԱՆԳ 3.

Աշակերտը պարտի հետեւեալ բառերն երիցս շրջաբանութեան վերածել.

1. Աստուած։ 2. Յիսուս Քրիստոս։ 3. Սատան։ 4. Արամազդ։ 5. Դժոխք։ 6 Նաբոլէոն (Մեծն)։ 7. Երկինք։ 8. Արեգակն։ 9. Լուսին։ 10. Ծնանիլ։ 11. Մեռնիլ։ 12. Գերեզման։ 13. Յորեան։ 14. Գինի։

## ՀՐԱՀԱՆԳ 4.

Սոյն հրահանգին մէջ շեղագիր բառերն շրջաբանական են. աշակերտը պարտի զանոնք պարզ բացատրութեան վերածել.

1. Յակոբայ որդիքն ըսին, ահա երազ մեկնողն։
2. Մեռելոց խաղաղին մէկ անկիւնը նստայ։
3. Խիղճը դատաւոր մի է զոր ոչ ոք կարէ կաշառել։
4. Յաւիտենական եակին առջեւ բոլոր ժողովուրդք կը խոնարհին։
5. Գիշերային երգեցկին սրտայոյզ ձայնը կը լսեմ։
6. Փայտահար մի իւր օրապահիկն հայթայթող գոր-ծին կորսնցուց։
7. Երանի՛ դաշտաց մարդուն, եթէ գիտէ իւր եր-ջանկութիւնն։
8. Պարտքս երեք ուրբաթով եօթնեկին ալխոր վճա-րեմ։
9. Մեռելոց տխուր եւ նուիրական ննջարանը կ'այ-ցելէի։
10. Կ'երթամ պատերազմիլ օդոյն բնակչաց հետ։

11. Չարերուն պետութեան մէջ արեւը մարը չը մտներ։

12. Ի՛նչ, պիտի ատե՞մ զայն որ ինձ կեանք տուաւ։

13. Պարտինք սիրել մեր օրերուն հեղինակները։

14. Ո՛վ ժամանակ, կեցուր քու թռիչդ, յարգէ երիտասարդութիւնս։

15. Պոմոնային գանձերուն վրայ Փլորայինները աւելցուցէք։

16. Գաղիանոսի արուեստին՝ թոյնն օգտակար է։

17. Սակայն տասն ցեղեր սուրբ քաղաքին փախան։

18. Եւ իմ աչքերս պիտի թողուն լոյսը առանց վշտաց։

19. Համր խորհրդատուներն զորս կը գործածեն մեր տիկնայք։

20. Գիշերն իւր ընթացից կէսն կատարած էր։

21. Մարդ բնաւ երկիցս մեռելոց ափունքը չտեսներ։

22. Թշուառութիւնը զգացի երբ աչքերս ի լոյս բացի։

23. Այն ինչ տխուր օրերս ծագիլ սկսան։

24. Ցորքան իմ աչերն եթերական լոյսը պիտի տեսնեն։

25. Ոչ ոք իւր բոլոր օրերն ոսկեման եւ մետաքսահիւս տեսաւ։

26. Երկիր ուր կը հոսեն վտակք կաթի եւ մեղրի։

27. Այն շարժուն մետաղն որ կը դառնայ ըստ կամաց հողմոյն։

28. Արիսեան դաշտին մէջ ուսայ դիւցազանց մեծ արուեստը։

29. Աւերածու գունտը կը թռչի, կը չչէ եւ կը պատառէ զօդն։

30. Երեքն ալ յաւիտենից քնով քնացան։

31. Արքոյն Պետրոսի հաւն այս առաւօտ զիս քունէս արթնցուց իւր սուր ձայնովն։

32. Ամենէն քաջ մարդն իսկ կը սոսկայ ի տեսիլ կենդանւոյն որ Եդեմին խաղաղութիւնը վեր ի վայր շրջեց։

## ՀՐԱՀԱՆԳ 5.

Աշակերտը պարտի շրջաբանութիւնը ջնջել եւ պարզ ձեւի վերածել

1. Զարմացէք նորա վերայ որ խոզկաղնի մի կաղինը յառաջ կը բերէ, եւ գաւազանէ մի ամէն տարի ծաղիկներ եւ պտուղներ կը բուսցունէ։

2. Յանկարծ երկնային ոգւոց հեռաւոր ձայնին նման ներդաշնակ ձայն մի՝ այս գերեզմանական վայրաց խորէն, կը հնչէ։

3. Տիկահաւը կուգայ այն ժամանակ յորում ծառերն իւրեանց տերեւներն կը պարզեն։

4. Թանքի բժիշկը կը պնդէր թէ իր հիւանդն իր նախնիքները տեսնելու պիտի երթայ. արդարեւ հիւանդն իր հարկը վճարեց բնութեան։

5. Քորք իմ, ալիք զովագին են ի սկզբնածագ նըշոյլս այգոյն։

6. Կը լսեմ զթինդ սրբազան պղնձին որ յաղօթս կը կոչէ զհաւատացեալս։

7. Մրջիւնն ըսաւ ճանճին, դու պիտի մեռնիս ի ցրտոյ եւ ի սովոյ երբ Փեբոս թագաւորէ միւս կիսագնդին վերայ։

8. Ո՜րպիսի յուսով կը մնեն զխոտն յակօս յետ կարդալոյ յօգնութիւն զնա որ կը վարէ զարփին եւ կը պահէ իր գանձուց մէջ հարաւային հողմերն եւ անձրեւներն։

9. Այն ինչ ձայն աքաղաղին կ'աւետէր զդարձ արշալուսոյն Վիրգինիա կը թողուր իր անկողինն եւ կ'երթար ջուր բերել մօտակայ աղբիւրէն։

10. Նա որ կը թագաւորէ յերկինս, որում միայնոյ են փառք, վեհափառութիւն եւ անկախութիւն. է... Նա որ թագաւորաց օրէնքներ կուտայ։

11. Ճէնները եղաւ առաջինն որ յաղթողաբար կըռուեցաւ այն պատուհասին դէմ որոյ մոլեգնութիւնը մարդկային ճակտին վերայ յաւիտենական թշնամանք մը կը դրոշմէ։

12. Խորհուրդ հարցուցէք նոցա որ կենաց ուղւոյն գիծը գիտեն։

13. Յաճախ թափառական քայլերս կը յածին մեռելոց տխուր բնակարանին մէջ։

14. Ի զուր կը պանծամք մեր վաղանցիկ մեծութեանց վերայ, պէտք է խառնել մեր աճիւնը մեր նախահարց աճիւնին հետ։

15. Թմբուոյ մի ճիւղերէն մի մատաղ չիկահաւ կախեր էր իւր ձագուց օրօրանն։

16. Անտառաց կողոպուտներով աշուն ծածկած էր զերկիրն։

17. Հայրդ անմահից եւ մահացուաց, հզօր պետդ Ողիմպեայ, կը համարձակիմ հայցել ի քէն քո շնորհն։

18. Բայց կը ծնիս դու յաճախ հողմոց թագաւորութեան տամուկ եզերաց վերայ։

19. Նա որ սանձ կը դնէ ալեաց կատաղութեան կարէ չարաց որոգայթները խորտակել։

20. Բագոսի ընկեր մի կը խանգարէր իւր առողջութիւնը, իւր միտքը եւ իւր քսակը։

21. Սակայն ղոյծ դաշտին մկանանց վերայ կը բարձրանայր յորձնեռանդն ջրամած լեռ մի։

22. Սքանչացիր տեսնելով թէ որպիսի ճարտարութեամբ մեղուն մի թունաւոր խոտէ գիտէ հանել քաղցր հիւթ մի։

23. Աներկիւղ ի հնձանէն բարունակը պամառն ող-

Ջոյն կ'ըմպէ fաղցr պաrզեւնեrն աrշալուsոյն ։

24. Ի՞նչ հանոյք վայելած է յորմէհետէ աչքն ի լոյս k բացած. կա՞յ թշուառագոյն ոք քան զինքն ընդ աrեգակամբ ։

25. Ընդհուպ Ցեզաrեյի աrխեոոուշs դուusrն խմանացաւ որ Ցովաս դեռ եւս զաrեւ կը sեսնէ ։

26. Աrծաթածամ դշխոյն գիշեrաց կը թուէր ծածկել առ ահին զիւր լոյս դողդոջուն:

27. Թող թռանի յաղթութիւնն եւ քաջագործութիւնք հուչակուին յընդհանուրս ի ձեռն hաrիւr բեrան աsնուծոյն ։

28. Քրիստոնեայք յիշեցէք, որ ձեr կrօնից եrկնային հիմնադիrն մի պատուէր եւ եթ թողուց ձեզ, այն է սիրել զմիմեանս ։

29. Այս ծերունին որ աhա կանգնած k զեrեզմանին սեւնոց վեrայ դեռ կը գտնէ արցունք իւր. աչաց մէջ իյուշ այնոrիկ nr ծնաւ զինքն ։

30. Մուսայից սիrելին որպէս եւ Աrիսի պաշsօնեային, Բերուէ բոլոր ոսկիներէն վեր կը նախադասէն մի գեղեցիկ դափնի ։

31. Միեւնոյն հայեցուածով յաւիsենական ճաrsաrապեsն աշխարհի մի եւ միջատի մի մահն ։

32. Կ'երգէ նա Աrկադեան սոխակի մի պէս ։

33. Հակառակ իւր սիրակուիչ ձայնին, ո՞վ չսիրեր զայն թռչունն nrոյ վեrայ Հեrայ սփռեց Աrգոսի աչեrն ։

34. Ծիրանաթեւ եւ ոսկեթոյր ծաղկանց թեթեւ հիւrն կը թռչտէր ։

35. Ցաւեrժահաrսն nr եrբեf նախ չխօսիr եւ կը կrկնէ միշs վեrջին խօսfն ։

36. Տխմար բժիշկ մի կ'ըսէր, իմ հիւանդներն երբեք չեն գանգատիր զինէն. ա՛հ, ըսաւ կատակաբան

մի, կարծեմ դուք զանոնք ամենքն ալ միւս աշխարհը կը ղրկէք զանզանելու։

Հ. Շրջաբանութեան գործածութեան մէջ. ի՞նչ դիտելու է.

Պ. Պէտք է դիտել որ շրջաբանութիւնը ըստ պարագային առընչութիւն մի ունենայ գործողութեան հետ կամ շրջաբանութեան բացատրած հանգամանքը պատշաճ լինի խօսքին ոգւոյն. զոր օրինակ անճաշակ շրջաբանութիւն մի ըրած կը լինիմք երբ ըսեմք,

Նա որ կը հրամայէ ծովուն եւ շանթին՝ հաց եւ ապաստանարան մի պիտի տայ որբին։

Քանզի՝ Աստուծոյ տրուած նկարագիրը բնաւ առընչութիւն կամ պատշաճութիւն չունի իւր կատարած գործոյն հետ։ Ուստի պէտք է ըսել,

Նա որ կը սնուցանէ փոքրիկ թռչունները, եւ կը պահպանէ դաշտաց շուշանները պիտի տայ նաեւ որբին հաց եւ ապաստանարան։

Շաթօպրիան, Թէպայիտացւոց անապատին մէջ հրաշունչ եւ կիզիչ հողմէ մի բռնուելով, այսպէս կ'ըսէ «Եւ նստայ հեռագոյն ի նմանէ, կալեալ զսանձից ձիոյս, եւ զյոյսն իմ ի նա միայն եդեալ որ զհուր հնոցին Աքարեանց փոխեաց ի շունչ զովացին եւ ի ցօղ խաղաղութեան։» Սոյն շրջաբանութիւնը ճիշդ է։

Նաեւ պէտք չէ շրջաբանութիւն ի կիր արկանել անդ ուր յատուկ բառն աւելի յարմար եւ աւելի բընական է, ապա թէ ոչ ծաղրելի կը լինի ոճն. զոր օրինակ «Փութով Էսկիւղապի աշակերտ մի բերէք, զի ահա հիւանդ մի որ կը մեռնի». կամ «Եղբայրս յառաջիկայ կիւրակէ մեծ այրն պիտի արտասանէ» սոյն

երկու շրջաբանութիւնք ալ ծաղրելի են եւ զուարճաբանութեան մէջ միայն ներելի. աւելի գեղեցիկ պիտի ըլլար եթէ ըսէինք պարզապէս «Փութով բժիշկ մի . . .» եւ «Եղբայրս յառաջիկայ կիւրակէ պիտի ամուսնանայ»:

## ՀՐԱՀԱՆԳ 6.

Աշակերտը պարտի շեղագիր երկու շրջաբանութիւններէն մին ընտրել.

1. *Մեծատունն ու աղքատը քովէ քով կը ննջեն հաւասարութեան դաշտին — հանգստեան դաշտին մէջ:*

2. *Թագաւորաց թագաւորը — Աներեւոյթ վկայն կ'ընթեռնու մեր սրտից մէջ մեր ամենէն գաղտնի խորհուրդները:*

3. *Յաւիտենական էակին — թագաւորաց թագաւորին առջեւ բոլոր գահերը կը խոնարհին:*

4. *Փիլոմէլի ձայնը — գարնան սուրհանդակը պեփիւռները կը բերէ, եւ մրրկաց նշան կուտայ մեկնելու:*

5. *Արդարին հոգին կը թռչի դէպ յերկնային կամարն — ընտրելոց օթեւանն:*

6. *Ամէն անգամ որ դէպ ի չարն մղուած կ'զգանք զմեզ, կը փորձուինք դիւաց իշխանէն — չար ոգիէն:*

7. *Բոսփորի դշխոյն — Կոստանդնուպոլսի քաղաքը այսօր տաճկաց մայրաքաղաքն է:*

8. *Որթոյն աւիշը — ծերոց կաթը նորա խելքը դարձուցած էր:*

9. *Նա որ ալեաց կատաղութեան սանձ կը դնէ — կը ծագէ իւր արեւն չարաց եւ բարեաց վերայ պիտի խորտակէ ժանտից որոգայթները:*

## Բ. ԿՈՒՏԱԿՈՒՄՆ ԿԱՄ ԹՈՒՈՒՄՆ ՄԱՍԱՆՑ

*Հ. Ի՞նչ է Կուտակումն.*

*Պ. Կուտակումը, զոր մարթի կոչել և Թուումն մասանց, ձև մի է որով պարզ գաղափարի մի այլ եւ այլ մասերը կը յայտնեմք, արագապէս թուելով նորա յատկութիւնները, արդիւնքները եւ պարագաները բայց սոցա մէջէն ամենէն գլխաւորները եւ աչքի զարնողները ընտրելով, որպէս զի բնաւ ամենեւին չտկարանայ այն ազդեցութիւնը զոր կ'ուզեմք յառաջ բերել։*

*Մասիլեոն կը ներկայացունէ մեզ փառասէր մարդոյն վիճակը, թուելով իւր յատկութիւնները.*

*Փառասէրն ոչինչ կը վայելէ. ոչ իւր փառքը, մթին եւ անշուք կը գտնէ զայն. ոչ իւր բարձր պաշտօնները, աւելի կ'ուզէ բարձրանալ. ոչ իւր բարեկեցութիւնը, կ'ազազի եւ կ'ոսնի իւր առատագեղ լիութեան մէջ. ոչ իւրեան մատուցուած մեծարանքներն, թունաւորեալ են նոքա այն մեծարանքներէն զորս ինքն պարտի այլում մատուցանել. ոչ իւրեն եղած շնորհներն, դառն են նման եւ նոքա զի իւր նախանձորդներն մասնակից են իւրեան. ոչ իւր հանգիստն, թշուառ է նա որչափ ստիպուի հանդարտ կալ։*

**Մասիլեոն**

*Ռասին, ԳՈԹՈՂԻԱ ի առաջին պարերգին մէջ, կը նկարագրէ Աստուծոյ բարութիւնն արդեանց կուտակութեամբ.*

*Տիեզերք առ հասարակ լի են փառօք աստուածութեան,*
*Երգեցուք, հարցուք հրաշակ զբարիսն իւր։*

*Այս՝ ընդհանուր գաղափարն է. ահաւասիկ ընդլայնումը,*

*Նա ծաղկանց սրբատաշածոյ շնորհէ երփունս,*
*Պըտկէ զպըտուղս, հասուցանէ,*
*Եւ բաժանէ նոցա չափով*
*Ըզշողիւնըս տուընջենի եւ զզովութիւն գիշերաց.*
*Պարարեալ նոքօք անդոյ՝ հատուցանէ տոկոսեօք:*
*Տայ հրաման արեգական կենագործել ըզբնութիւն.*
*Զարգեւք իւրում ձեռինն է լոյս,*
*Իսկ սուրբ օրէնքն, օրէնք անբիծ,*
*Ճոխագոյնն է ի պարգեւսն ազգի մարդկան ընձեռեալ:*

**Հանդէս Ա. 4**

*Ֆենելոն, ուզելով յայտնել թէ քնաւ խոչընդոտն մի չկարէ կասեցունել զքարոզիչս, կը գործածէ հետեւեալ կուտակումն.*

*«Ոչ բոցակէզ աւազք, ոչ ջերինք, ոչ հեռաւորութիւն վայրաց, ոչ մրրիկք, ոչ վիմուտք այնքան ծովուց, ոչ անբարեխառնութիւն օդոց, ոչ տոռմիղ նաւամարտիկ նաւաց թշնամեաց, ոչ բարբարիկ ափունք կարեն կասեցունել զանոնք զորս Աստուած կը յղէ:»*

## ՀՐԱՀԱՆԳ 1.

Աշակերտը պարտի հետեւեալ պարբերութիւններն ընդլայնել մասանց թուումով. շեղագիր բառից վերայ պիտի կատարուի ընդլայնումն.

1. *Մահն ոչ իմիք կը խնայէ:*

2. *Փառասէր թագաւոր մի թերեւս պիտի կարէ գտնել զօք երգիչ իւր յաղթութեանց, բայց այս յաղթութիւններն յառաջ եկած բոլոր աղէտներն պիտի լինին ագազդեաց յիշատակարաններ որք անմահ պիտի գործեն իւր ընդունայնութիւնն եւ անմտութիւնը:*

3. Բնութիւնը կը պահանջէ որ ամեն ձեռքի մէջ մի գործի լինի. վատ ու անարժան է անգործի ձեռն. պէտք է գօսանայ այն։

4. Աշխատութիւնը կը բերէ դհետ իւր ամեն ինչ որ երջանկութեան կը նպաստէ երկրի վերայ։

5. Ծիծեռնակն ամեն ինչ ի թռչանի կ՚ընէ։

6. Հոմերոս. այս մեծ անուան, Պինդարոսէն ցՀելլեսպոնտ, համօրէն բնութիւնը կը պատասխանէ։

7. Փոքրիկ հաւաճանճը (oiseau-mouche) բնութեան հրաշակերտն է. զամեն ինչ այս թռչունն ունի։

### Գ. ՍԱՀՄԱՆ

1. Հ. Ի՞նչ է Սահմանն.

Պ. Սահմանը կը հաստատէ եւ կը ծանօթացունէ մեզ իրի մի բնութիւնը. երկու տեսակ է նա, իմաստասիրական եւ պերճախօսական։ Իմաստասիրական սահմանը բառի մի նշանակած իրն որոշ եւ կարճ մեկնութեամբ մի կը զատէ ուրիշ իրէ մի. այս սահմանը բնաւ ընդլայնում չընդունիր զի իւր նպատակն է միայն զիրն ծանօթացունել մտաց. իսկ պերճախօսական սահմանն է յայտնել իրն, մանաւորել զայն իւր ստորոգելեաց եւ հանգամանաց ճարտար թուարկութեամբն. այսպէս սոյն օրինակ սահմանին մէջ կարեն մանել իրի մի պատճառներն, արդիւնքն ու պարագաներն։

Հարցուցէք իմաստասիրի մի թէ ի՞նչ է Մարդն. նա պիտի պատասխանէ ձեզ սահմանելով զայն սեռիւ եւ տարբերութեամբ եւ պիտի ըսէ «Բանաւոր կենդանի» այսինքն՝ էակ մի որ կենդանեաց սեռէն է, բայց կը

տարբերի յայլ կենդանեաց իւր բանականութեամբն։ Բայց Ժ. Գ. Ռուսոյ կը սահմանէ զայն այսպէս։

«Մարդն իւր սակաւատեւ ընթացից մէջ թեթեւ շոգի մի է զոր շողք արփւոյն կը փարատեն. իւր լոյսն աղջամղջուտ գիշեր մի է. եւ իւր օրերն ստուերի նըման կը սահին կ'անցնին եւ անհետ յաչաց կը կորնչին»

Եւ Բասքալ այսպէս պիտի ըսէ մեզ. «Մարդն եղէգ մի է տկարագոյն, այլ եղէգ մի խոհուն։ Զայն ջախջախելու համար չէ հարկ զի նորա դէմ զինի տիեզերք յողջոյն. շոգի մի, կաթ մի ջրոյ բաւական է զայն սպաննել։ Բայց յորժամ եւ տիեզերք ջախջախէր խակ զնա, մարդն ազնուագոյն եւս քան զիւր սպաննիչն լինէր, քան զի գիտէ թէ կը մեռնի, եւ տիեզերք անգէտ է իւր զօրութեան։»

«Ի՞նչ է քահանայ մի» հարցման՝ իմաստասիրական համառօտ եւ ցամաք սահմանով կը պատասխանեմք. «Քահանայն պաշտօնեայ մի է կրօնից պաշտաման», բայց ունկն դնեմք Լամընէի որ կը պատասխանէ պերճաբանական վսեմ սահմանով։

«Քահանայ մի, իւր պարտաւորութեան նկատմամբ, է բարեկամ, կենդանի նախախնամութիւն համայն թշուառաց, մխիթարութիւն վշտացելոց, պաշտպան ո եւ է զրկելոց, նեցուկ այրեաց, հայր որբոց, դարմանիչ ամէն անկարգութեանց եւ չարեաց զորս կը ծնանին մեր կիրքերն եւ մեր աղիտաբեր վարդապետութիւններն. իւր բովանդակ կեանքն ոչ այլ ինչ է բայց երկար եւ դիւցազնական անձնուիրութիւն մի իւր նմանեաց երջանկութեան համար։ Ո՞ ի ձէնջ կը հաւանի, անոր նման, ընտանեկան (*) ուրախութիւններն, բոլոր վայելումներն, եւ բոլոր այն բարիքներն

(*) Գաղիացի քահանայք չեն ամուսնանար։

զորս մարդիկ այնքան ագահութեամբ կը խնդրեն, փոխանակել՝ աննշան աշխատանաց, ծանր պարտուց եւ այնպիսի պաշտօններու հետ որոց գործադրութիւնը կը բեկանէ զսիրտ եւ կը նեղէ զզացումներն, եւ շատ անգամ այնքան զոհողութեանց փոխարէն ուրիշ պտուղ մի չկարէ քաղել բայց եթէ արհամարհանք, ապախտիք եւ թշնամանք։

Մինչդեռ դուք կը ննջէք ընկղմեալ ի խոր քուն, նա՝ գթութեան մարդն, վաղայարոյց քան զարշալոյս, սկսած է իւր բարերար գործոց ընթացքն։ Մխիթարեց աղքատն, այցեց հիւանդին, սրբեց թշուառին արտասուքը կամ թափել տուաւ զղջման արտասուք, խրատեց ադէտն, զօրացուց տկարն, եւ կրից փոթորիկէն խռովեալ ոգիներն հաստատեց առաքինութեան մէջ։

Սոյնպիսի բարեգործութեամբք լի օրէ մի յետոյ, երեկոյն կը հասնի բայց ոչ հանգիստն. ի ժամուն յորում զուարճութիւնք կը կոչեն զձեզ ի տեսարանս, ի խնջոյս, շատեր մեծաւ շտապաւ կը դիմեն առ նոյն պաշտօնեայն սրբազան. զի Քրիստոնեայ մի մաղկահինչ մերձ ի մահ կայ, պիտի մեռնի, եւ թերեւս տարափոխիկ ախտէ մի. այլ զի՞նչ փոյթ, բարի հովիւը չպիտի թողու որ իւր ոչխարը մեռնի առանց ամոքելու նորա վիշտերն, առանց շրջապատելու զնա մխիթարութեամբ յուսոյ եւ հաւատոյ, առանց աղօթելու առընթեր նմա առ Աստուած որ մեռաւ նորա համար, եւ որ, ի սմին իսկ պահու, կու տայ նմա, սիրոյ խորհրդոյ մէջ, անմահութեան ստոյգ գրաւական մի։

Ահա քահանայն. ահաւասիկ, ոչ թէ այնպէս՝ որպէս մեր ատելութիւնք կը հաճի նկատել զայն՝ գայթակղեցուցիչ բացառութեանց վերայ դատաստան ընելով, այլ այնպէս որպէս կ'ապրի մեր մէջ իրապէս։

Ձ՞. Հ. Պերճախօսական սահմանին մէջ ինչ պէտք է ընել.

Պ. Պէտք է քաջ ընտրել սահմանելի գաղափարին կամ առարկային յատկանիշներն, և մանաւանդ միայն զանոնք ընտրել որք առաւել նպաստաւոր են այն ազդեցութեան զոր յառաջ բերել կ'ուզեմք։ Հետեւեալ գեղեցիկ սահմանին մէջ կատարելապէս ինկատ առնուած են սոյն պայմանները։

## ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆ

Աշխատութիւնն մի օրէնք է հակադրուած մարդոյն վերայ ի նմանէ որ զբնութիւնն ըրաւ, հարկադրուած այն ամէն բանի վերայ որ կ'ապրի, որ կայ։ Հանքերու մէջ հիւլէներն կը շարժին, գիրեար կը քաշեն կամ կը վանեն։ Բոյսն կ'աշխատի, չէ անգործ. կը մըղէ իւր արմատներն երկրի ընդերաց մէջ իբր հազարաւոր բերաններ կենսատու հիւթոց ի խնդիր, եւ իւր ճիւղերն կ'արձակէ միջոցին մէջ օդ եւ լոյս ծծելոյ համար։ Կենդանիք կ'աշխատին. այն որ կը թռչի, այն որ կը սողայ, այն որ քառատոտի կ'ընթանայ, կ'աշխատի, եւ եթերային անհունութեան դաշտերուն մէջ թաւալող լուսեղէն մարմինք կ'աշխատին, կը դառնան, կը դառնան անդուլ այն կեդրոնին շուրջն ուստի կը ճառագայթէ ի նոսա այն լոյսն ու ջերմութիւն որովք կը սնանին։ Աշխատութիւն. այս է տիեզերական օրէնքն. ոչինչ կը խուսափի անտի։ «Մրցում ապրելոյ համար», երբ Տարվին արտասանեց այս բառն, կրնար Արքիմէդէսի պէս գոչել Էւրէկա, Էւրէկա, զի տիեզերական շարժման եւ յառաջդիմութեան գաղտնիքն գտած էր։ Մարդն հպատակ է այս օրինաց, ինչպէս

ամէն կողմ· չիք կեանք առանց աշխատութեան. չիք աճում եւ զարգացում առանց նորա։ Բնութիւնն յինքեան ունի ամենուն սնունդն. բայց պէտք է խնդրել, եւ երկրի արգանդն այն ատեն աւելի արգաւանդ է՝ երբ կը թրջուի մարդկային ճակատու քրտամբ։ Մարդն կը ծնանի մերկ եւ տկար, տկար, այո, քան շատերն կենդանիներէն որք մասամբ գոգցես աւելի նպաստաւորուած են բնութենէն, որ զգեցուցած է զայնս եւ տուած է իւրաքանչիւրին իւրեան պաշտպանութեան համար զէնքեր. փիղն ունի իւր վրիժակներն, առիւծն իւր ճիրաններն, ցուլն իւր եղջիւրներն, արծիւն իւր մագիլքն, մեղուն իւր խայթանն, իժն իւր թոյն. բայց մարդն, տկար փիզիքապէս, ունի իւր իմացականութիւնն որով կը հպատակեցնէ ինքեան բնութեան զօրութիւններն, կը նուաճէ հակառակամարտ ոյժերն եւ իւր մարմնոյն տկարութեան օժանդակ տալով զայնս՝ կ'ապահովէ իւր կեանքն ու կ'ստեղծէ իւր երջանկութիւնն։ Մարդոյն ամէն կարողութիւնք, փիզիքական թէ իմացական, տարրական վիճակի մէջ տրուած են նմա, հարկ է որ զարգացնէ զայնս եւ գործածէ իւր պիտոյքն գոհացնելոյ։ Հարուստն եւ աղքատն, գիտունն թէ տգէտն, գործաւորն թէ դրամատէրն, տէրն թէ ծառայն հաւասարապէս ստիպուած են աշխատիլ. այն որ չունի՝ պէտք է որ շահի, եւ ունեցողն պարտի ջանալ չկորուսանել, այլ ընդհակառակն աճեցնել իւր ունեցածն. եւ յետոյ, ոչ ոք անկարօտ է. պէտքն ու կարօտութիւնն ամենուրեք են, աղքատութիւնն բազմաձեւ է եւ կը բնակի այնքան հարստին պալատին մէջ որչափ աղքատին խրճիթին. ոսկւով հարուստ աղքատ է խելքով. ուսեալն պէտք ունի դրամոյ, զօրաւորն մտքով կամ ինչքով՝ տկար է մարմնով եւ կը կարօտի փիզի-

քական զօրութեան։ Ոչ ոք ինքզինք զերծ կարէ համարիլ աշխատութեան օրէնքէն, ոչ իսկ այն որ ի ծնանելն առձեռնպատրաստ կը գտնէ հազարաւոր տարիներ ապրելու համար բաւող հարստութիւն մի. լաւ, բայց պէտք է մշակել մտաւոր կարողութիւնները. իւր բովանդակ հարստութեամբն մի անքան մեալոյ երկիւղն ու վտանգն պէտք է որ դրդեն զնա յաշխատութիւն։ Բնութիւնն կը պահանջէ որ ամէն ձեռքի մէջ մի գործի լինի. Նաւավարն՝ իւր թիակն ունենայ, մշակն՝ իւր բահ, երկաթագործն՝ իւր մուրճ, կօշկակարն՝ իւր հերիւն, հիւսնն՝ իւր ուրագ, երկրաչափն ու ճարտարապետն՝ իւրեանց կարկինն, մեքենագործն՝ իւր մեքենայն, բժիշկն՝ իւր ականջափողն, նկարիչն՝ իւր վրձին, արձանագործն՝ իւր գրոց, երաժիշտն՝ իւր դաշնակ, կինն՝ իւր ասեղ, մատենագիրն իւր գրիչ. վատ ու անարժան է անգործի ձեռն. պէտք է որ գօսանայ այն. զմարդ արարչութեան թագաւոր կոչած են. ուրեմն գործն է նորա մականն։ Աշխատութիւնն կ՚ազնուացնէ եւ կ՚ազատէ. աշխատութեամբ, ճարտարութեամբ եւ գիտութեամբ միջին դարու ստրուկ ժողովուրդն ազատագրուեցաւ, եւ իւր մարդկային իրաւունքներն ստանալով; հաւասար բազմեցաւ խրոխտ՝ այլ ծոյլ ու տգէտ ազնուականին . . . ։

Ազգերու եւ ժողովուրդներու համար այլ չիք կեանք եւ երջանկութիւն անաշխատ եւ անվաստակ. ծոյլ ու դատարկապորտ ազգերու բաժինն են չղթայ եւ կըռուփ, սարկութիւն եւ աղքատութիւն։ Երբ մի ժողովուրդ չը ջանայ զարգացնել բնութենէն իւրեան տրուած բարոյական ու նիւթական զօրութեան տարրերն, չմշակէ իւր յատկութիւններն, օգուտ չքաղէ զինք շրջապատող պարագաներէ եւ չյաճեցնէ այն ի-

*մացական ու Փիզիքական հարստութիւններին զոր շընորհած է նմա երկինք, թող երբէք երանութեան չակընկալէ արեգական տակ: Վայ պարտեզոյն կը գոչէին երբեմն. պէտք է գոչել աւելի ճշդիւ Վայ ծուլին: Ժիր մշակին ձեռաց տակ խոտան ու քստմնափուշ դաշտն մի պարտէզ կը դառնայ ծաղկալից, եւ տխմար աւերակներ կարեն յառնել իւրեանց փոշիներէն՝ թէ փչէ ի նոսա շունչ աշխատութեան:*

**Ռ. Յ. Պէրպէրեան** (Ժողովրդեան զբօսանքներն)

### ՀՐԱՀԱՆԳ 1.

Հետեւեալ բառերը փոխաբերութեամբ սահմանել, այլեւայլ տեսութեան տակ.

| | |
|---|---|
| 1. *ՄԱՀ* | 11. *ԱՐԵԳԱԿՆ* |
| 2. *ՇԻՐԻՄ* | 12. *ՏՆՏԵՍՈՒԹԻՒՆ* |
| 3. *ՄԱՐԴ* | 13. *ԲՆՈՒԹԻՒՆ* |
| 4. *ԱՇԽԱՐՀ* | 14. *ՍՆԱՊԱՐԾՈՒԹԻՒՆ* |
| 5. *ԺԱՄԱՆԱԿ* | 15. *ՊԱՏՄՈՒԹԻՒՆ* |
| 6. *ԽԱՉ* | 16. *ԱՆՁՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ* |
| 7. *ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԻՒՆ* | 17. *ՎԱՇԽԱՌՈՒՔ* |
| 8. *ԴԱՏԱՐԿՈՒԹԻՒՆ* | 18. *ԴՊՐՈՑ* |
| 9. *ԱՆՄԵՂՈՒԹԻՒՆ* | 19. *ԾԱՂԻԿ* |
| 10. *ԴՐԱՄ* | 20. *ՍԷՐ* |

### *Մ Ա Հ*

*Մահն հրեշտակ մի է խաղաղութեան որ կ՚իջնէ առ արդարն եւ կը հպի իւր ոսկի մականաւ. Նորա՛ խոնջ ականողեաց: — Անխոնջ հնձող մի է որ կը հնձէ զսերունդս: — Սոսկումն է չարին: — Յուսահատութիւնն է ճոխին: — Բժիշկ է չարեաց:*

### Դ. ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ

**1. Հ. Ի՞նչ է Նկարագրութիւնն.**

Պ. Նկարագրութիւնն է առարկայ մի պատկերացունել, այնպիսի բնական ու կենդանի գոյներով զի գրուածը խօսուն նկար մի լինի, և մարդ կարծէ իրերը կենդանի օրինակաւ իւր աչաց առջեւ տեսնել։ Այս ձեւին մէջ մանաւանդ ընտիր գրագէտք կը զանազանին հետեւակներէն. սոքա կը խօսին միայն զիրաց մինչդեռ նոքա կը նկարագրեն զայնս։

2դ. Հ. Նկարագրութիւնն ի՞նչ պէտք է որ լինի.

Պ. Նկարագրութիւնը պէտք է որ լինի ճիշդ և նոր։ Պէտք չէ գոյզն եւ անազնիւ իրաց վերայ կենալ, այլ քաջ ընտրել այն գիծերն, տիպերն ու գոյներն որք լաւագոյնս կարեն ներկայացունել զառարկայն մեր դիտած կերպարանին տակ, շնորհալից կամ գծուծ, գորովաշարժ կամ նողկալի, հեզիկ կամ ահարկու, լուսաւոր կամ մթին։

3դ. Հ. Քանի՞ տեսակ նկարագրութիւն կայ.

Պ. Վեց տեսակ նկարագրութիւն կայ. 1. **Կենդանի նկարագիր** (L'Hypotypose). 2. **Ժամանկար** (La Chronographie). 3. **Տեղագրութիւն** (La Topographie). 4. **Ցուցանկար** (La Démonstration). 5. **Նկարագիր բարուց** (L'Ethopée). 6. **Դիմագրութիւն** (La Prosopographie)։

### 1. Կենդանի նկարագիր

Հ. Ի՞նչ է կենդանի նկարագիրն.

Պ. Կենդանի նկարագիրը տեսակ մի նկարա-

գրութիւն է որոյ առարկայն է գործողութիւն մի, դէպք մի, երեւոյթ մի, վիճակ մի, կիրք մի որոց պարագաներն ազդուապէս ի յայտ եկած են նկարագրողին գրչին տակ։

Հետեւեալները կենդանի նկարագրոյ օրինակներ են.

## ԵԶՆԱԿԻ ՄԻ ԲՈՅՆՆ Ի ՎԱՐԴԵՆԻՈՋ

Կը յիշեմ թէ միանգամ եզնակի (*) մի բոյնը գտայ վարդենւոյ մի մէջ. գաղտակրի խեցւոյ կը նմանէր նա. չորս կապուտակ մարգարիտ կային ի նմա. ցօղաթուրմ վարդ մի կը կախուէր ի վերուստ. արու եզնակն անշարժ դարած էր մերձակայ թփի մի վերայ, ծիրանաթոյր եւ կապուտագեղ ծաղկի մի պէս։ Այս առարկայից պատկերն կը ցոլայր լճակի մի ջրոյն մէջ հանդերձ ստուերաւ ընկուզենւոյ մի որ այս տեսարանին խոր յատակ կը ծառայէր, եւ որոյ յետկուսէն կը տեսնուէր արշալոյսն ծայրակարմիր։ Աստուած այս փոքրիկ պատկերին մէջ, գաղափար մի կուտայ մեզ այն գեղեցկութեանց վերայ՝ որովք պճնեց նա զբնութիւնն։

Տաքայրիան.

## ԵՐԹ ՆԱՒՈՒ

Ամենքն ալ ուզելով բռնել, արգելուլ, յետ դարձընել նաւ մը. նաւ մը՝ որ դիմացնէն երագ երագ կու սահէր կ'անցնէր, կու հեռանար. եւ եթէ բռնել չէ՝ գոնէ պահ մ'այլ կ'ուզէին տեսնել։ Իսկ նաւն մախստական՝ երկայնաձեւ բազմաթիակ՝ ցըռուկը ցըցած՝ ծովային նոր ցուցանքի մը պէս՝ ճօճալով

---

(*) Թռչուն սեւակցուց, կարմրալանջ եւ զուարճաձայն (bouvreuil)։

*ճապկըռտելով ծփած ծեծուած ալեաց վրայ՝ շուտ շուտ կու սողար, փախչէր թաքչէր., իբրեւ թէ այն դիզուած ժողովուրդն՝ իրեն համար մթագին ու սպառնացայտ մրրիկ մ'ըլլար. մինչեւ կղզիներուն մէջէն անցնելով հեռացաւ, փոքրացաւ, կէտ մը դարձաւ, հազիւ տեսանելի սրագոյն աչաց. որ քանի մը վայրկեանէ ետեւ՝ ծովուն հաւասարած երեսէն զատ՝ այլ բան չտեսնելով, յուսահատեալ դարձան, ողբերնին եւ անէծքնին երկարելով, եւ բարկութեամբ արքունական ապարանից վրայ նայելով։*

Հ. Գ. Ալիշան (Ցուցիկք)

## ՄԱՀ ՊԻԳՄԱԼԻՈՆԻ

*Կատարելութիւն եւ ամպարշտութիւն նկարագրեալ էին ի մեռելատիպ դէմս նորա. ոչ եւս զնշմարանս անգամ բերէր զգեղոյն՝ որով զբաղումս թշուառացոյց, եղծեալ էր վայելչութիւն նորա ի սպառ։ Աչք նորա աննշոյլք յակնակապիճսն թաւալէին. պրկումն եւ ձգտումն սաստիկ զշրթամբքն անկեալ, ահագինս բերանաբացեալ, երեսքն խորշոմեալ եւ այլանդակեալ, եւ կնճիռն դժոխատեսիլ ի նոսա գործեալ, դալուկն կապուտակ եւ ցուրտ մահահամբոյր տիրէին ընդ մարմինն։ Եւ եթէ երբէք զգայր նա անձին՝ կաղկանձէր եւեթ, մինչեւ փչեաց նա զոգին՝ թողեալ լի սոսկմամբ եւ արհաւրօք զտեսօղս։ Էջ ամպարիշտ հոգի նորա ի ձորս վայոց, ուր Դանայիդք անագորունք ջուր ի կարաս հոսեն ի ծակ միշտ անդադար, ուր Իքսիոն մինչեւ ի սպառ գլէ զանիւ, ուր Տանտալեայ պապաքեալ շրթանց չիք ճաշակել զմշտահոս զիւրեամբք զալիս, ուր Սիսիփոս անհանգիստ թաւալէ ժայռ ընդ զառ ի վեր՝ ուստի անդուլ վայրա-*

բերի, ուր Տիտիոս տանջի ի սպառ՝ անյագ անգեղ զընդերսն միշտ յարաբուսիկս կրծելով։

**Ֆենելոն.** Տելեմաք Գ. 8

ՋԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆ ԵԳԵՍԻՊՊԵԱՑ

*Եւ ահա Եգեսիպպոս անդր ի ներքս յարձակեալ՝ խլեաց զսուսեր նորա, եւ յայտ արար նմա զհրաման արքունի գնալոյ ընդ իւր ի Սամոս։ Ընդ լուր հրամանին անկաւ կործանեցաւ խրոխտ ամբարտաւանութիւն նորա որպէս վէմ հատեալ ի գահաւանդէ լերին։ Անդ էր տեսանել զնա անկեալ ահիւ եւ դողութեամբ յոտս Եգեսիպպեայ. լայր, խուճապէր, թոթովէր, դանդաչէր եւ փարէր զծնգովքն այնորիկ՝ յորոյ վայրիկ մի յառաջ չհայէր իսկ յերեսս. Եւ որք չնթէինն զնովաւ, ընդ տեսանել զկործանումն նորա անկանգնելի՝ փոխեցին զչողումն յանողորմ թշնամանս։*

**Ֆենելոն.** Տելեմաք Գ. 14

ԱՅԼ ՕՐԻՆԱԿՔ

*Մահ Դիդէի.* — յՆնէ. Վիրգ. Գիրք Դ. 639։

*Վիշապանալն Բիւրասպի.* — Հ. Դիւց. Բազր. Դր. ԺԸ. 571։ ԺԹ. 987։

### Զ. Ժամանկար

*Հ. Ի՞նչ է ժամանկարն.*

*Պ. Ժամանկարը կը նկարագրէ ժամանակն, յայտնելով այն բնական, բարոյական կամ մարդկային երեւոյթներն որք կը ներկայանան նոյն պահուն։ Պէտք չէ սակայն յիշել այն երեւոյթներն որ ուրիշ ժամանակի են յատուկ և կամ յարակայ ու մշտատեւ։*

*Հետեւեալ ժամանակներն ուշ ի կուրծս· ընթեռնուլ.*

ԳԻՇԵՐ

*Ո՜վ հրաշալի եւ համասփիւռ հանդարտութեան, որ յիս ի ներքս եւ որ շուրջ զինեւ... Որպիսի՜ ժամ իցէ այս ժամանակիս... Գիշեր տարածեալ կալեալ զընդմէջ երկնից եւ երկրիս. բայց չունի ինչ գիշերս այս սուգ եւ տխուր, բաց ի մթութենէ մեղմոյ սփռելոյ յերեսս բնութեան՝ աղօտ աղօտ, որպէս քօղ՝ ակամբք եւ մարգարտօք ընդելուզեալ՝ ի ճակատ պատկառոտ։ Այնքան պայծառ կարկաջեն կաճառք աստեղացս յանմրուր պարզութեան, եւ այնքան ողորկ եւ փափուկ թուին միջոցքն մանիշակագոյնք։ Ոչ եւս հողմն ահաւոր՝ որ զոխուն ողջոյն որոտայր ի վերայ վայրացս եւ տագնապեցուցանէր զիս ծանր ծանր խորհրդովք. այլ սողոսք եւ զեփիւռք զովք եւ հեզիկք, որպէս մանկունք նուագածուք խայտան ժիրաժիր, խաղաղական ինձ չափով եւ թուով. եւ գեղաղէշ հեղինակն զարդուն երկնից՝ լուսին բոլորակերտ եւ շառափայլ՝ դեռ ի սեմս հորիզոնաց հեռաւորաց՝ որպէս ի կցուածոց չրթանց երկրի եւ ծովու՝ արձակեալ հոգի սիրակցորդ, սաղապաճեմ վերանալով, լուսասփիւռ փայլմամբն նշմարեցուցանէ ինձ զմասն մեծատարած մկանանցն, եւ որպէս պարագլուխ միաբանութեան նուագաց՝ համադաշնակ յարդարելով զծով եւ զցամաք եւ զօդս առհասարակ։ Եւ իբրեւ ի կառս իմն կիպարեայս կապուտակօք յեռեալ ակամբք եւ ոսկեղինօք խաղացեալ անուօք՝ ի գիլ գայ թուի գիշերս այս. մանաւանդ թէ ես ինքն հանդուցեալ ի գահաւորակ գիշերոյս՝ ձգիմ գնամ ընդ հունս հաստատութեան՝ յաշխարհ հեռի, զհետ համբաւոյ բարեաց եւ հրաւիրանաց սիրայնոց։*

Հ. Ղ. Ալիշան (Խորհրդ. ընդ եղեւնեաւ)

## ՆԻՆՋ ԵՒ ՅԱՐՈՒԹԻՒՆ ԲՆՈՒԹԵԱՆ

*Երբոր այգեկութքը կը լմննայ ու խաբուսիկ հնձաններէն զուարթարար գինին տակառներու մէջ կ՚ամփոփուի, ետեւէն գիշերուան պահապանի պէս ծանր ծանր քալելով կուգայ աշունը, բնութեան կենդանութիւնը կը տանի, երկրիս հանգչէ կ՚ասէ, եւ այնպիսի տխրութիւն կը տիրէ չորս դին, որ կարծես թէ միւսանգամ յաւիտեան ուրախութիւն ու զուարթութիւն պիտի չտեսնուին։ Թանձր մշուշ մի մթնոլորտը կը պատէ, արեգակն ամպերու մէջէն երբեմն երբեմն կ՚երեւայ ու կը պահուըտի աներեւոյթ լինի. տկար ճառագայթները տերեւամերկ ծառոց ծայրերուն զարնելով՝ վերջին ողջոյնը կուտան։ Սուգ կը մտնէ բնութիւնը. ծաղիկը երերուն ցօղնոյն վերայ կը թառամի, տերեւները կը թափթըփին եւ անցաւորաց ոտքին տակ կը թաւալին, կը պտուտկին։ Ագռաւք երեկոյեան դէմ վերջալուսի ժամանակ երամովին բլրակներուն վրայ կը թռչտին, եւ իրենց սրաձայն կռինչներովը բնութեան մահը կը գուժեն։ Իսկ երկինք փոխանակ իւր լուսապայծառ աստղերը մեր գլխուն վերայ շողացընելու, տերեւազուրկ ծառոց կմախներուն մէջէն ցուրտ մառախուղ կ՚իջեցնէ, որ ճիւղէ ճիւղ իւր արտասուաց ոլոռնաձեւ շիթքը մեռած տերեւներուն վերայ կաթեցունելով՝ մեռեալ բնութեան գերեզմանին վերայ կ՚ողբայ։*

*Այս ընդհանուր տխրութիւնը շատ չտեւեր խոր ձմեռը կուգայ. ձիւնը կ՚իջնայ եւ մինչեւ մարդուս ոտքին ձայնը կը խափանէ։ Մարդս լռեալ դադարեալ երկրիս երեսը ստուերի մի պէս լռիկ մնջիկ կ՚անցնի. եւ կը կարծուի թէ այլ ամէն բանի վերայ նոյն տրտմական քօղը պիտի պատէ, գեղատեսիլ սիրուն վարդն ոչ եւս խըր քաղցր հոտովը մեր սիրտն ու միտքը պի-*

*տի զուարճացունէ, եւ չորցած անձեւ որթերն ոչ եւս տերեւազարդ պիտի գեղեցկանան ու ծիրանեփայլ ողկոյզներով տեսողաց զուարթամտութիւն պիտի ազդեն։*

*Մի՛ փութար, երկայնամիտ եղիր փոքր մի. բնութեան այս համատարած համրութիւնն ու անկենդանութիւնը տեսնելով մի՛ յուսահատիր. գիտցիր որ պատրաստութեան հետ է որ նորափետուր կեանքով մը երեւայ։ Ցոգնած տկարացած ոյժն ու կարողութիւններն անձայն կը նորոգէ կը սրէ, որպէս զի գարնանային արեգական գեղածիծաղ ճառագայթը վրան զարնելուն պէս, նորէն յերեւան գայ, ինքզինքը ցուցանէ ամենաբեր ձեռօք. այն ժամանակ յարութիւն կ'առնուն կանաչագեղ ծառք եւ ծաղկունք, երփներանգ կը զարդարուի երկիրս, եւ մի օրուան մէջ դարձեալ ականատես լինի մարդ առոյգ բնութեան բիւրապատիկ սքանչելեացն, եւ բիւր փառք եւ գոհութիւն կը մատուցանէ այն հիասքանչ բնութեան բարեխնամ Արարչին։*

**Մասեաց Աղաւնի** (Հանդէս)

ԱՐՇԱԼՈՅՍ ԵՒ ԱՌԱՒՕՏ

*Այլ աւադիկ կարճատեւ ամփոփի գիշեր՝ ամենայն աստղաճամուկ զարդուն իւրով, եւ տարածանի արշալոյս բեհեզազգեաց։ Աւադիկ արուսեակն, որպէս ճարմանդ արծաթի որ զերկոսեան ի միասին պատանդիցէ՝ զցայգ եւ զցերեկ։ Պաղպաջեն ի ծայրս ծղօտից մարգարտափայլ կայլակք ցօղոյ, եւ թօթափեալ թաթաւեն զձորձս իմ. ճռուողիւն հաւուց լսելի լինի ի հեռաստանէ. եւ սիւգ զովագին գամ քան զգամ ոյժ առեալ՝ գուշակէ ինձ զգարճ հողմոյն երեկի։ Ահա խայծին ամպք արեւելից. առաւօտ հանդարտ՝*

*որպէս նշմարելի շնորհ աստուածային՝ տարածանի ի վերայ լերանց եւ դաշտաց, ամենեւին պայծառ ամենեւին գեղեցիկ։ Ծագիցէ ընդ հուպ իշխանականն տուընջեան՝ մուծանել յաշխարհ օր նորընծայ. միւս եւս չափ ժամանակի մահացու կենաց, որպէս զերէկն եւ զեռանդն, եւ տեղի տացէ վաղուի։ Եւ զի՞ փոյթ երեկի եւ վաղուի՝ եթէ այսօրս միայն տուեալ է մեզ ի գործել։ Երէկն անցելոց, եւ վաղիւն՝ ապագայից, մեք զայսօրս ալինդ կալցուք ի վաստակել եւ ի պատրաստել ռոճիկ անանցականն աւուր, գործս յարամնաց սիրոյ։ Փոխեսցէ առաւօտ զառաւօտ եւ երեկոյ զերեկոյ, յաջորդեսցի վաղորդայն. իսկ ես՝ յերեկն եւ յեռանդն խառնեալ՝ յանցելոց համարի գտանիցիմ յետ սակաւու միոյ...։*

Հ. Ղ. Ալիշան. (Խորհրդ. ընդ եղեւնեաւ)

## ՁՄԵՌՆ

*Փչեց իջաւ պախրցին ճիւնապատ սարերէն. արջառ ոչխար թողլով դալար արօտները՝ դռնափակ գոմերու մէջ խռկուած մայեն, հինգամսեայ ձմերան ձանձրոյթը սկսելով։ Զբօսասէրք եւ բնասէրք այլ փութան ի չէն ի քաղաք. վասն զի նոյեմբեր իր խոնաւ ոտքերովը կոխեց զծառ ու զծաղիկ. տերեւներն իսպառ թօթափեցան, պտղատու պարտէզն չոր ճողերով ցըցուած պատնէշ մը դարձաւ, կամ մրրկէ փախած մերկ անառագաստ նաւախումբ. պաղուկ պախրցի մ'այլ, պաղուկ հով մ'այլ, ու ահա կու մեռնի կ'անցնի դալարութիւն մեր կլիմայից. ահա ճերմակ պատանքն այլ կու սկսին տեղ տեղ փռուիլ. ճիւնն լեռներուն գագաթէն վար կ'իջնէ, կու սկսի յերեւան գալ դաշտաց. քիչ առենէն զամենքը կու ծածկէ եւ միայն ինքն կ'երեւի։ . . . Լմնցաւ այս տարուան բնական կամ բու-*

սաբանական հանդէսն եւ կեանքն այլ. գոցենք գետ-նահայեաց պատուհաննիս, բանանք վերնադիտակ պատուհանները, զբօսնուլ զմայլիլ երկնից հովտին լուսածղի ծաղկներովը, զոր տարուոյն բուսարձակ յեղանակաց կայտառութիւնն՝ շատ հեղ արհամարհել կամ անտես ընել կու տայ մեզի: Նայէ, Հայկակ, գլխէդ ի վեր. պարզ է գիշերս, տես աստղալից երկինքը. եկ դառնանք հոն, հոն է մեր ձմեռնային տեսարանն: Ծառ, ծաղիկ, պտուղ, խաղող, ամենքն այլ կարծես մարդուս մանկութիւն, աշխոյժ, թեթեւ մտածութիւն, զուարթ երկրաւոր կեանք մը կ'ազդեն. իսկ երկնից աստեղազարդ երեւոյթն՝ ախորժ ծերութիւն, ծանրութիւն մը, խոր մտածութիւն եւ անմահութիւն մը: Ո՜հ, ո՞րքան պիտի ընդարձակէր եւ բարձրանար մտքերնիս, եթէ կարենայինք՝ ինչպէս անկաբանք բոյսերը՝ նոյնպէս այլ այդ երկնահովտին ամեն մէկ լուսասերմ ծնունդները ճանչնալ, իւրաքանչիւրին կազմուածքը եւ իրարմէ տարբերութիւնը, իրենց ճամբան եւ նպատակը, եւ «զամենեսին զնոսա յանուանէ կոչել»: . . .

Հ. Ղ. Ալիշան (Յուշիկք)

### Յ. Տեղագրութիւն

Հ. Ի՞նչ է Տեղագրութիւնն.

Պ. Տեղագրութիւնն է նկարագրութիւն տեղւոյ տեսարանի, տաճարի, պալատի, դաշտի, անտառի եւայլն:

Հետեւեալ տեղագրութիւններն ուշ ի կուրծս ընթեռնուլ.

### ԵՐՈՒԱՆԴԱԿԵՐՏ

*Բազում էր ինձ ասել եւ յաղագս գեղեցկին գաւառակերտին Երուանդակերտի, զոր յօրինեաց նոյն ինքն Երուանդ գեղեցիկ եւ չքնաղ յօրինուածովք։ Քանզի զմիջոց հովտին մեծի լնու մարդկութեամբ եւ պայծառ շինուածովք, լուսաւոր որպէս ական բիբ. իսկ շուրջ զմարդկութեամբն՝ ծաղկոցաց եւ հաստաբանաց կազմութիւն, որպէս շուրջ զբբօքն զայլ բոլորակութիւն ական։ Իսկ զբազմութիւն այգեստանոյ, իբր զարտեւանաց խիտ եւ գեղեցիկ ծիր. որոյ հիւսիսային կողմանն դիր կարակնաձեւ՝ արդարեւ գեղաւոր կուսից յօնից դարեւանդաց համեմատ։ Իսկ ի հարաւոյ հարթութիւն դաշտաց, ծնօտից պարզութեան գեղեցկութիւն. իսկ գետն բերանացեալ դարաւանդօք ափանցն՝ վերկթերթիւն նշանակէ շրթունս։ Եւ այսպիսի գեղեցկութեան դիր՝ անքթթելի իմն գոգցես ի բարձրաւանդակ թագաւորանիստն զհայեցուածն ունի. եւ արդարեւ բերրի եւ թագաւորական դաստակերտն։*

**Խորենացի** (Պատմ. Հայ. Գիրք Բ. ԽԲ.)

### ՎԱՆԱՅ ԱՅԳԵՍՏԱՆՔ

*Վանայ այգեստանք, որ տեղական բարբառով կ'ըսուին* հգկստար, *բնութեան եւ բնակչաց ձեռքով վայելչապէս զարդարած երանաւէտ վայրեր են. ուր իւրաքանչիւր տունը իրեն կից ունի ծառաստան, այգեստան, բուրաստան. եւ իր դրան առջեւի փողոցին երկու եզերքը՝ առուներ ջրալից, որոց ափերը կարգաւ տնկուած են սաղարթախիտ մանրատերեւ ուռիներ, տեղ տեղ եւս բարդին, կաղամախ, հացենին, թեղին։ Փողոցներու մէջ տեղը՝ հասարակաց ընդարձակ ուղին, եւ ճղագարդ ծառոց թեւերն ու*

*տերեւները այս եւ այն կողմէն իրարու գրկուած խըռնուած, սքանչելի հովանոց կը կազմեն անցորդաց. որոց մէջէն արեւու ճառագայթները մանր՝ մանր հողմածփիկ աստղերու նման կը ծագին գետնին վրայ, անցնողին կամ նստողին գլխուն ու երեսաց վրայ ծածանելով, ինչպէս խաղաղ գիշերուան մը մէջ Լուսնոյ հով ճաճանչները կը փայլեցնէ զեփիւռը ծովուն ափանց մօտ եղած նոսր ջրերուն ծոցին: Նոյն ծառերը՝ որոց կանանչ ու դալար վարսեր կ՚օծանին օդէն ցօղով եւ արեւուն ջերմով, իրենց արմատները ի գընացս ջուրց կ՚ուռճանան. ջուրք խոխոջելով, գըլգըլալով կ՚անցնին, լզելով այն ծառոց ոտները, ոռոգելով իւրաքանչիւրին սահմանեալ այգին, պարտէզն ու բուրաստանը, մատակարարելով առ հասարակ տանց ի լուացումն, ի յըմպելիս եւ առ ամենայն պէտս:*

**Գ. Վ. Սրուանձտեանց (Մանանայ)**

ՔԱՐԱՅՐՆ ԿԱԼԻՓՍԵԱՅ

*Հասին առ սեամս քարանձաւի դիցուհւոյն, եւ զարմանայր Տելեմաք, զի ի գեղջկայնումն յանպաճոյճ պարզութեան տեսանէր զամենայն ինչ ակնահաճոյ: Չէր անդ ոսկի եւ արծաթ, ոչ կիճ եւ ոչ սիւնք եւ նկարք եւ անդրիք. քարայրն այն ի խոռոչ ժայռի կոփածոյ՝ ի խճից եւ ի խղունջնաց ի կամարսն զմբեթարդըս էր դրուագեալ, եւ գոգցես իմն դիպակազգեստ յաճումնաձիգ որթոյ՝ որ յաջ եւ յահեակ զճապուկ ուռսն տարածեալ պատէր: Բաղցրասիք հողմունք ընդ բոցակէզ արեգակամբ զովացիկ զվայրն կացուցանէին եւ հեշտալի. վտակք քաղցրակարկաջք զեռեալ ընդ արօտս պճնեալս յանթառամ եւ ի մանիշակ լճակս ուրեք ուրեք գործէին պայծառ եւ յստակ*

## ԵՐՈՒԱՆԴԱԿԵՐՏ

Քաղցր էր ինձ ասել եւ յաղագս գեղեցիկ դաստակերտին Երուանդակերտի, զոր յօրինեաց նոյն ինքն Երուանդ գեղեցիկ եւ չքնաղ յօրինուածովք։ Քանզի զմիջոց հովտին մեծի լնու մարդկութեամբ եւ պայծառ շինուածովք, լուսաւոր որպէս ական բիբ. իսկ շուրջ զմարդկութեամբն՝ ծաղկոցաց եւ հոտաբանաց կազմութիւն, որպէս շուրջ զբբովն զայլ բոլորակութիւն ական։ Իսկ զբազմութիւն այգեստանոյ, իբր զարտեւանաց խիտ եւ գեղեցիկ ծիր. որոյ հիւսիսային կողմանն դիր կարակնաձեւ՝ արդարեւ գեղաւոր կուսից յօնից դարեւանդաց համեմատ։ Իսկ ի հարաւոյ հարթութիւն դաշտաց, ծնոտից պարզութեան գեղեցկութիւն. իսկ գետն բերանացեալ դարաւանդօք ափանցն՝ զերկթերթխն նշանակէ շրթունս։ Եւ այսպիսի գեղեցկութեան դիր՝ անքթթելի իմն գոգցես ի բարձրաւանդակ թագաւորանիստն զհայեցուածսն ունի. եւ արդարեւ բերրի եւ թագաւորական դաստակերտն։

**Խորենացի** (Պատմ. Հայ. Գիրք Բ. ԽԲ.)

## ՎԱՆԱՅ ԱՅԳԵՍՏԱՆՔ

Վանայ այգեստանք, որ տեղական բարբառով կ'ըսուին էգէստար, բնութեան եւ բնակչաց ձեռքով վայելչագեղ զարդարած երանաւէտ վայրեր են. ուր իւրաքանչիւր տունը իրեն կից ունի ծառաստան, այգեստան, խուրաստան. եւ իր դրան առջեւի փողոցին երկու եզերքը՝ առուներ ջրալից, որոց ափերը կարգաւ տնկուած են սաղարթախիտ մանրատերեւ ուռիներ, տեղ տեղ եւս բարդին, կաղամախ, հացենին, թեղին։ Փողոցներու մէջ տեղը՝ հասարակաց ընդարձակ ուղին, եւ ճղազարդ ծառոց թեւերն ու

տերեւները այս եւ այն կողմէն իրարու գրկուած խըռնուած, սքանչելի հովանոց կը կազմեն անցորդաց. որոց մէջէն արեւու ճառագայթները մանր՝ մանր հողմածփիկ աստղերու նման կը ծագին գետնին վրայ, անցնողին կամ նստողին գլխուն ու երեսաց վրայ ծածանելով, ինչպէս խաղաղ գիշերուան մը մէջ Լուսնոյ հով ճաճանչները կը փայլեցնէ զեփիւռը ծովուն ափանց մօտ եղած նօսր ջրերուն ծոցին։ Նոյն ծառերը՝ որոց կանանչ ու դալար վարսեր կ'օծանին օդին ցօղով եւ արեւուն ջերմով, իրենց արմատները ի գընացս ջուրց կ'ուռճանան. ջուրք խոխոջելով, գըլգըլալով կ'անցնին, լզելով այն ծառոց ոտները, ոռոգելով իւրաքանչիւրին սահմանեալ այգին, պարտէզն ու բուրաստանը, մատակարարելով առ հասարակ տանց ի լուացումն, ի յըմպելիս եւ առ ամենայն պէտս։

Գ. Վ. Սրուանձտեանց (Մանանայ)

ՔԱՐԱՅՐՆ ԿԱԼԻՓՍԵԱՑ

Հասին առ սեամս քարանձաւի դիցուհւոյն, եւ զարմանայր Տելեմաք, զի ի գեղջկայնումն յանպաճոյճ պարզութեան տեսանէր զամենայն ինչ ակնահաճոյ։ Ջէր անդ ոսկի եւ արծաթ, ոչ կիճ եւ ոչ սիւնք եւ նկարք եւ անդրիք. քարայրն այն ի խոռոչ ժայռի կոփածոյ՝ ի խճից եւ ի խղունջնաց ի կամարսն գմբեթարդըս էր դրուագեալ, եւ գոգցես իմն դիպակազգեստ յաճուճանաձիգ որթոյ՝ որ յաջ եւ յահեակ զճապուկ ուռսն տարածեալ պատէր։ Բաղցրասիք հողմունք ընդ բոցակէզ արեգակամբ զովացիկ զվայրն կացուցանէին եւ հեշտալի. վտակք քաղցրակարկաջք զեռեալ ընդ արօտս պճնեալս յանթառամ եւ ի մանիշակ լճակս ուրեք ուրեք գործէին պայծառ եւ յստակ

քան զակն վանեայ. եւ ծաղկունք հոյլ ի հոյլ դեռափթիթք գեղերփնէին զգորգն կանաչագեղ, որ զքարայրն ծածկէր: Էր անդ ծառաստան վարսագեղ ոսկեխնձոր, որ ի քառահօլով եղանակս տարւոյ նորափթիթ՝ բուրէր անուշահոտ քան զամենայն խնկենիս. եւ պսակաձեւ զգեղեցիկ արօտին շուրջ պատեալ, յօրինէր գիշեր ի տուընջեան՝ անթափանց ի ճառագայթից արփենից: Թռչնոց եւեթ լսելի լինէին անդ ճռուողական դայլայլիկք, եւ խոխոջ վտակի՝ որ ի բարձանց ժայռի գահավիժեալ եռայր փրփրադէզ, փախստական ընդ արօտն գետահետեալ:

Եւ էր քարայրն ի դարեւանդ բլրոյ, ուստի երեւէր ծով մերթ վճիտ եւ միապաղաղ իբրեւ զբիւրեղ, եւ մերթ մրմռեալ անսաստ ընդ ժայռ եւ ընդ խութ՝ յորս ահագնագոչ լեռնաձեւ կոհակօքն կոծեալ բեկանէր: Այլուր երեւէր գետ՝ կղզիս ի պտոյտսն գործելով ափնածիրս ի ծաղկաւէտ թմբեաց եւ ի բարձրաբերձ կաղամախեաց՝ որ զխրոխտ գագաթունսն յամպս ծրարէին: Եւ որք զկղզեակսն գործէին առուք՝ թուէին խաղալ ի դաշտին, կէսք սրընթաց պականակիտ ալիսն թաւալելով, այլք հանդարտահետք հեզասահք. եւ կէսք պատ ի պատ յետս ընդ կրունկն դառնային յաղբերակունս անդր իւրեանց գոգցես նկրտելով՝ դժկամակ իմն զբազմազուարճ ափունսն թողուլ: Նշմարէին ի բացեայ բլուրք եւ լերինք, որոց գագաթունք կորնչէին յամպս, եւ կոհակաւէտ ձեւովքն բազմակերպ զծիր տեսութեան գործէին եւ ակնապարար: Դալարագեղ զլերինս մօտակայս ծածկէր այգեստան. եւ ուռք վարսագեղք մանեկաձեւ կախեալ, եւ ողկոյզք ծիրանեփայլք քան զծածկոյթ սաղարթացն առատագոյնք ծանրաբեռնէին զայգիս: Թզենի, ձիթենի, նռնենի եւ այլ եւս ազգի ազգի

ծառք պտղաբերք ծածկեալ զդաշտավայրն, յօրինէին զայն պարտէզ լայնածաւալ։

Ֆենելոն. Տելեմաք Ա.

### ԱՅԼ ՕՐԻՆԱԿՔ ՏԵՂԱԳՐՈՒԹԵԱՆ

1. Այրարատ գաւառ. — Ի պատմ. Ղազարայ Փարպեցւոյ. յէջ 22։
2. Ապարանք Ապահայ. — Ի Հ. Դիւց. Դր. Ը. 874։
3. Տաճար խորհրդոցն Աստուծոյ. — Ի Հ. Դիւց. Դր. ԺԶ 1։
4. Նկարագիր դրախտին. — Ի Միլտոն. Գիրք Դ. 121։
5. Քաղաքն Տիւրոս. Քաղաքն Բետիկէ. Քաղաքն Սալենտ. Դաշտօրայք Ախերոնի. Տարտարոս.—Ի Տելեմաք. Գիրք. Գ. Ը. Թ. ԺԸ։

### 4. Ցուցանկար

*Հ. Ի՞նչ է Ցուցանկարն.*

*Պ. Ցուցանկարն է մասնաւոր եղելութեան մի կամ դիպաց նկարագրութիւնն, ինչպէս պատերազմի, մրրկի, հանդիսի, որսոյ, հրդեհի, բանակի, նաւարշաւի, ժողովոյ եւն. զոր օրինակ,*

ՓՈԹՈՐԻԿ

*Եւ ահա թանձրանայր շուրջանակի մէգ մթին հրախառն. արեգակն շառագունեալ, եւ մկանունք ծովուն հարթ եւ անծածան, եւ տխրատեսակ ալեացն գոյնք յար ի փոփոխման կային։ Երկինք թանձրամած պարածակեալ. գմբեթարդ խաւարին եւ բոցաճաճանչ յենոյր զերկրաւ։ Տիեզերք ամենայն յանշշունչ լռութեան ակնկալեալ կային կասկածանօք, ի սիրտս մեր ազդելով զերկիւղ։ Պատսպարեալք անդէն յանդաստակ մեհենին՝ տեսաք, եւ ահա ի խիտ առ խիտ հարուածս շանթից պատառեցաւ մածուած հրընկէց միգին զմեօք. ամպք թանձունք դիզադէզ զմիմեամբք թաւալեալք ընդ օդս, անկանէին յուխս անձրեւաց*

ցերկիր. հողմք սանձակոտորք յարձակեալք ի ծով, մըրրկէին զանդունդս: Դնդղիւնք որոտմանց, մռնչիւն հողմոց, կոծմունք կոհակաց, գանգիւն անձաւոց, դըղրդումն լերանց, խառնեալ ընդ միմեանս ի չուինդն ահեղ՝ աւերածոյ տիեզերաց թուէին գուժկանք: Եւ ապա զօրացեալ հիւսիսի՝ վարեաց զզայրոյթ մրրկին ի բոցակէզ նահանգս Ափրիկեայ: Հայէաք զհետ նորա, եւ ազդէր յունկն մեր ի հեռուստ մռնչիւն նորա: Պայծառագոյն եւս պարզեցան երկինք. եւ ծովն, որոյ մինչեւ յամպս փրփրադէզ ամբառնային կոհակք, հազիւ զալիսն յեզերս վարէր:

Պարթեւլըմի. Ուղեւոր. Անաքարսեայ

ԱՅԼ ՕՐԻՆԱԿՔ ՅՈՒՑԱՆԿԱՐԻ

1. Հրդեհ եւ մարտ ի դաշտի ուրեք. — Ի Տելեմաք. Գիրք ԺԶ.
2. Հանդէս յուղարկաւորութեան Իպպիասայ.—Ի նմին. Գիրք ԺԷ:
3. Պատերազմ Ադրաստեայ ընդ դաշնակիցսն. Ի նմին. Գիրք Ի:
4. Հանդէս յուղարկաւորութեան Պիսիստրատեայ. Ի նմին. Գիրք. ԻԱ:
5. » » Պատրոկլի.— յԻլիակ. Հոմեր. Գիրք ԺԸ:
6. Մենամարտ Հեկտորի եւ Էասայ. — Ի նմին. Գիրք. Է. 206:
7. Մրրիկ. — յԵնէ. Վիրգ. Գիրք. Գ. 200:
8. Նաւարշաւ. — Ի նմին. Գիրք Ե. 122:
9. Տօն Նաւասարդի. — Հ. Դիւց. Դր. Ա. 471:
10. Ջրհեղեղ: — Ի նմին Դր. Գ. 863:
11. Ամպրոպ. — Ի նմին. Դր. 181:
12. Մրրիկ եւ ալէկոծութիւն. — Ի նմին. Դր. Ժ. 438:
13. Նաւամարտ. — Ի նմին. Դր. ԺԱ. 195:
14. Մարտ. — Ի նմին. Դր. Ի. 179:
15. Հանդէս յուղարկաւորութեան Հայկակայ.—Ի նմին. Դր. Ը. 603

### 5. Նկարագիր բարուց

1. Հ. Ի՞նչ է Բարուց նկարագիրն.

Պ. Բարուց նկարագիրն անձի մի առաքինու-

*թիւնները կամ մոլութիւններն, բարեմասնութիւնները կամ թերութիւնները կը նկարագրէ։*

*Ղդ. Հ. Քանի՞ տեսակ է Բարուց նկարագիրն.*

*Պ. Բարուց նկարագիրն երկու տեսակ է. 1.* **Կենդանագիր** (Portrait)*. և 2.* **Բարոյական նկարագիր** (Caractère)*. առաջինը կը նկարագրէ մասնաւորապէս անձի մի բարքը. իսկ երկրորդը կը խօսի ընդհանուր բարուց վերայ։*

*Հետեւեալ երկու օրինակները կենդանագիրք են իսկ երրորդը Բարոյական նկարագիր։*

### 1. ՊԻԳՄԱԼԻՈՆ

*Պիգմալիոն տուայտեալ անյագ ընչաքաղցութեամբ յաղետից յաղէտս օրըստօրէ զառածանի՝ ստելի լեալ ժողովրդեան։ Ոճիր է ի զուր ժառանգել ինչս. ագահութիւն խէթ եւ կասկածանս ի միտս արկանէ անդուլ բռնաւորին. հալածէ նա զընչաւէտս, եւ երկնչի յաղքատաց։ Դարձեալ եւ դժնէագոյն ոճիր՝ առաքինութիւն. զի անհնար թուի բռնաւորին համբերել առաքինեաց ընդ անիրաւութիւնս իւր եւ ընդ ապիրատութիւնս, եւ դառնացեալ զգրգռի ընդդէմ առաքինութեան՝ որ դատապարտ առնէ զնա։ Ցուզի տագնապի յամենայնէ. ամենայն ինչ կեղեքէ զսիրտ նորա. զարհուրի ի ստուերէ իւրմէ. քուն հատեալ է յաչաց նորա զցայգ եւ զցերեկ. եւ առ ի պատուհաս յաճախեն նմա դիւք զգանձս, յորս չիշխէ վայելել։ Որով իւիք երջանկանալն խնդրէ, նովին իսկ վրէպ յերջանկութենէ գտանի. վշտանայ ընդ տուրսն, երկնչի ի կորուսանելոյ զոր ժառանգէն, եւ ըղձի ցանկութեամբ ստանալոյ։*

Դուն ուրեք երեւի նա արտաքոյ. Նստի տխուր միայնակ լքեալ ի խորս արքունեացն, բարեկամաց իսկ նորա ոչ իշխելով մատչել առ նա՝ թէ գուցէ լիցին կասկածելի։ Գունդ ահեղ սուսերամերկ տիգաւոր պահակերէ հանապազ զարքունեօքն։ Ինքն ի ներքս անդ ամրափակեալ կայ, ուր սենեակք երեսուն հաղորդականք են միմեանց դրամբք երկաթեօք, զորս նիգք աղխեն վեցեակք զիւրաքանչիւր, եւ չէ յայտ յորում ի նոցանէ ննջիցէ՝ եւ իբր հաւաստի պատմի ոչ երբեք զաւուրս երկու անընդմէջ գիշերել նմա ի միում՝ առ ահի սրախողխող ի թշնամեաց լինելոյ։ Անծանօթ են նմա քաղցր բերկրութիւնք, եւ քաղցրագոյն քան զայնոսիկ բարեկամութիւն. եթէ զուրախութենէ լիցին բանք, մերժեալ համարի զայն յիւրմէ եւ անմատոյց ի սիրտ իւր։ Աչք նորա խորասոյզք հրացայտք դժնեայք եւ արիւնռուշտք յեղյեղեալ յածին շուրջանակի. ի սին սօսաւիւն՝ արհաւրօք ականջէ, մահատիպ, նիհար, եւ ի հոգս տխուրս դէմք նորա հանապազ խորշոմեալ։ Լուռ կայ, հառաչէ, եւ սրտառուչ յոգւոց հանէ, չկարացեալ ծածկել զխիղճ մտացն՝ որ զաղիս նորա կեղեքեն։ Անախորժ են նմա համադամք. որդիք նորա փոխանակ յուսոյ՝ ազդեն ի նա սոսկումն. զի թշնամիս իւր զնոսա ոխերիմս արար. չիք կենաց նորա վայրկեան մի աներկեւան, եւ ի ճապաղիս արեան այնոցիկ՝ յորոց կասկածէ՝ յերկարաձգէ զկեանս իւր։ Զառնու անմիտն ի միտ՝ զի անգթութիւն, յոր ապաւինի, նոյն զնա կորուսցէ. յընտանեաց նորա ոք, հանգոյն նմին կասկածաւոր, փութասցի փրկել զաշխարհ ի ձեռանէ մարդակերպ գազանին։

ՖԵՆԵԼՈՆ. Տելեմաք

## Զ. ԱՆՏԻՈՊԷ

Եթէ շնորհեսցեն ինձ դիք զհայր իմ, եւ ներեսցեն ընտրել ինձ հարսն, ընտրեցից զԱնտիոպէ։ Յափշտակէ զսիրտ իմ լռութիւն նորա եւ համեստութիւն, կալ առանձին եւ պարապել միշտ ի գործ, ճարտարութիւն յասուեայս եւ յասղնեգործութիւն, հոգ նորա ի տնտեսութիւն՝ որք ի մօրէ մնացեալ, արհամարհել նորա զսնոտի պաճուճանս, եւ չյիշել երբէք՝ թէ արդեօք եւ անգիտանալ զգեղ իւր։ Ի հրամայել Իդոմենեայ կալ պարագլուխ դստերաց կրետուհեաց պարս յօրինելոյ ի ձայն սրնգաց, թուի նա միւս այլ Ասողիկ գեղածիծաղ պար առեալ ի շնորհաց։ Յելանել նորա յորս յանտառս ածեալ ի հօրէն, թուի Արտեմիս մեծավայելուչ եւ դիպաղեղն ի մէջ յաւերժահարսանց. հիանան ամենեքին ընդ նա, ինքն եւեթ անիրազեկ։ Ի մուտս նորա ի մեհեանս դից՝ բերելով ի գլուխ զդիցանուէր սպասս ի կողովս, նա ինքն է գոգցես դիցուհին բնակեալ ի մեհենի անդ։ Քանի՜ երկիւղած եւ կրօնասէր տեսանեմք զնա ի նուէրս զոհից ի հաշտութիւն դից, ի քաւել զմեղս կամ ի բաց շրջել չարագոյժ հմայս։ Եւ յորժամ երեւի ի հոյլս կանանց ասեղն ի ձեռին ունելով ոսկի, թուի դիցուհին ինքնին Աթենաս առեալ ի յերկրի զկերպ մարդկեղէն առ ի գեղարուեստս զմարդիկ վարժել։ Յորդորէ նա եւ զայլս ի վաստակ, անուշէ զերկս նոցա եւ զձանձրոյթ ի ձայն իւր քաղցրիկ՝ զդիցն գեղգեղելով հրաշապատում վէպս, եւ ասղնէգործ ճարտար կիտուածովքն ընտիր ընտիր նկարուց յաղթեալ։ Երանի՜ որում վիճակեսցի բախտ կցորդելոյ ընդ նմա հարսանական քաղցր զօդիւ. ի վտանգէ կորստեան եւեթ նորին եւ յերկարակեաց քան զնա լինելոյ երկիցէ։

*Մենտոր ասէ. Տեսանեմ եւ ես, ո՛վ Տելեմաքէ, հեզ է արդարեւ Անտիոպէ, անպաճոյճ եւ զգօն. ոչ ամօթ համարի վաստակել ձեռօք, յառաջատես է եւ խնամող ամենայնի, գիտէ լռել, եւ գործէ յար առանց շտապոյ. պարապեալ միշտ ի գործ՝ այլ ոչ տագնապի, զի ի դէպ ժամու առնէ զամենայն. բարեկարգութեան տան հօր իւրոյ նորա են պարծանք, որով առաւել քան թէ գեղովն պարծի: Թէպէտ նմա յանձն է հոգ ամենայն, եւ պարտ է նմա մերթ խրատել, մերթ մերժել զաղերս, եւ մերթ խնայել ի ծախս, որ ատելի կացուցանեն զտնարարս, սակայն սիրելի է նա ամենեցուն, զի չեն ի նմա կիրք, ոչ յամառութիւն, ոչ թեթեւամտութիւն, եւ ոչ անձնահաճ կամք որպէս յայլս ի կանանց. ակնարկութեամբ եւեթ յայտնէ զկամս իւր. ամենայն ոք երկնչի ի տհաճելոյ զնա. տայ նա ճշգրիտ զպատուէրս, եւ զհնարաւորս եւեթ պատուիրէ. կշտամբէ հեզութեամբ, եւ ի կշտամբելն իսկ քաջալերէ: Հանգչի ի նա սիրտ հօր իւրոյ որպէս ուղեւոր պարտասեալ ի տօթոյ ընդ հովանեաւ ծառոյ ի փափուկ դալարւոյ: Այո՛ Տելեմաքէ, գանձ է Անտիոպէ արժանի խնդրելոյ ի տար աշխարհս: Որպէս ի սպասս մարմնոյն եւ միտք նորա ոչ սնոտի զարդուք պճնին. երեւակայութիւն նորա, թէպէտ եւ աշխոյժ, նուաճի ի զգօնութենէն. զկարեւորս եւեթ բարբառի. եւ ի բանալ բերանոյ նորա՝ ողոք բարեհամբոյր եւ շնորհք ինքնազարդք բղխեն ի շրթանց նորա: Ի խօսել նորա լռեն ամենեքին, եւ ինքն շիկնի. կամի իմն դադարել ի սկսելոցն բանից յորժամ տեսանէ յակճիռս կացեալ զայլս ի լսել. եւ դուն ուրեք եղեւ մեզ լսել խօսելոյ նորա:*

**Ֆենելոն. Տելեմաք ԻԲ.**

### 3. ԽՈՐԱՄԱՆԳՈՒԹԻՒՆ

Արդ խորամանգութիւն ըստ իւրում նկարագրին՝ թուի լինել կեղծիք բանից եւ գործոց առ ի չարն։ Եւ խորամանգ այն ոք է, որոյ առ թշնամիսն մատուցեալ՝ խօսել կամի ընդ նոսա, որպէս այն թէ ոչ ինչ ամենեւին ունիցի խէթ ընդ նոսա. եւ յերեսս գովէ զնոսա, որոց ի թիկանց դարան գործէր. ընդ վնաս նոցա տրտմի ընդ նոսա, եւ չարախօսացն իւրոց թողութիւն շնորհէ։ Յաղագս անձին բամբասանաց եւ առ զրկեալս եւ առ զչարեալս հեզութեամբ խօսի։

Եւ որ ստիպաւ տեսանել զնա եւ խօսել ինչ կամիցին, պատուիրէ դառնալ անդրէն յայլում ժամու. եւ պատճառի՝ թէ այն ինչ եկեալ է, եւ թէ օրն տարաժամեալ է եւ ինքն տկար։

Եւ որ փոխ ի նմանէն խնդրիցեն եւ հանգանակ ժողովիցեն. Տուրեւառ վաճառաց ոչ է, ասէ։ Եւ յորժամ ոչինչ վաճառիցէ. Շահավաճառ, ասէ, բարւոք ընթանայ։ Թէ լսէ ինչ, չլսելոյն առնէ. եւ թէ տեսանէ չհայելոյն։

Ոչ երբեք ասէ յայտ զոր գործէն, այլ թէ՝ Խորհուրդ ի մտի ունիմ. եւ թէ խոստովան ինչ ուրեք լինիցի, Մոռացեալ եմ ասէ։ Է ինչ զոր՝ Տեսից, ասէ, է զոր՝ Զգիտեմ, եւ է ընդ որ՝ Զարմանամ, եւ է ուրեք զի՝ Եւ ես ինքն զդոյն խորհիմ, ասէ։

Միով բանիւ, ճարտար է միշտ յայս ձեւս խօսից. Է՛հ ոչ հաւատամ, ոչ կարծեմ, զարմանք է. եւ յաւելու թէ՝ Այլ յայլմէ եղեալ եմ. եւ թէ՝ Այլ ոչ պատմեցաւ ինձ. Նոր եւ չքնաղ իրք են առ իս. Ե՛րթ այլում ումեք ասա. քե՞զ արդեօք անհաւատացից՝ եթէ նմա եղից մեղ, ոչ գիտեմ, տարակոյս է ինձ։

Այլ զգո՛յշ լեր, մի՛ վաղվաղակի հաւատասցես այս-

պլխսի ձայնից եւ պատ ի պատ բանից եւ շատախօսութեանց, քան զոր չիք ինչ գտանել չար։ Ի կեղծաւոր եւ ի նենգամէտ բարուց առաւել պարտ է զգուշանալ՝ քան յիժից։

**Թէոփրաստոս. Նկարագիրք**

## Հ. Ի՞նչ է Զուգակշռութիւնն (Paralélle).

Պ. Զուգակշռութիւնը կը կայանայ երկու անձերու բարուց մէջ գտնուած նմանութիւնը կամ տարբերութիւնը նկարելու և ի վեր հանելու մէջ։

Հետեւեալք զուգակշռութեան օրինակներ են.

### Ն. ՌՈՒՍԻՆԵԱՆ ԵՒ ՆԻԿՈՂՈՍ ՊԱԼԵԱՆ

*Քինէի կը դաւանէր զինքն աշակերտ Նիկողոս Պալեանի։ Ինքն իսկ էր աւիւն եւ յափշտակութիւն, մինչդեռ Ռուսինեան անխռով խորհրդածութիւնն էր. յոր անքթիթ աչօք նայէր մին, խանդավառ արձակէր միւսն ականողխ. մին ձեւին յարեալ մանաւանդ՝ միւսը հոգւոյն։*

*Միոյն համար իրականութիւնը միայն կար, եւ ինչ որ թուաբանական ձեւի մի չէր կրնար վերածել կամ երկրաչափական գիծերու ճշդութիւնն ունենալ՝ սխալ էր. գեղեցկութիւնը համաչափութեան մէջ կը փընտռէր եւ ուղղութիւնը կանոնաւորութեան մէջ։ Միւսը՝ իրականութենէն վեր ճշմարտութիւնը կը փնտռէր, համաչափութենէն դուրս համաձայնութիւնը ու կանոնէն դուրս արդարութիւնը, եւ բնական հետեւութեամբ, այս աշխարհէն դուրս աշխարհ, այս կեանքէն դուրս կեանք եւ այս էակներէն դուրս էակ։ Մին անսայթաք ընթանար գիծերով շրջապատեալ, միւսը խոյանար՝ տատանեալ ի փոթորկաց եւ ի շանթիցն հարուածեալ՝ երեւակայութեան բացած*

*սփիռներուն մէջ.... այլ բաղձում այն էր որ թեւերն ածելով կ'իջնար գտնել իւր բարեկամն ու պատմել իր տեսածները որ տեսիլներ էին ու զգացածներն որ ազդեցութիւնք էին. եւ է՛ զի բարեկամն այլ՝ յափշտակեալ վերանար բարեկամին թեւերով եւ այսպէս գիրար գտնէին ու ի միասին աշխատէին. մին խմաստուն ու միւսն ալ գրեմ թէ մարգարէ, մի եւեթ ունենալով նպատակ ... բարին։*

**Գ. Օտեան**

## ԱԼԻՇԱՆ ԵՒ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ

*Պէշիկթաշլեան, իբր բանաստեղծ, Հ. Ղ. Ալիշանէն անմիջապէս յետոյ կը գայ, որ հին եւ նոր Հայոց առաջին քերթողն է թերեւս։*

*Թէ բանաստեղծութիւնն մտքին գինովութիւնն է, որպէս կ'ասէր Իզզէտտին-ապիւլ-Ֆօտայիլ - Ապտէլ-Վահապ-Ամատէտտին-ալին-Իպրահիմ-էլ-Սէնճանի, ուրեմն ի՞նչ աւելի հետաքրքրական քան իրարու քով բերել եւ բաղդատել երկու մեծ գինովներ, այսինքն երկու մեծ քերթողներ, որպէս Ալիշան եւ Պէշիկթաշլեան։ —*

*Երկուքն ալ բանտուած են այն ոսկիէ վանդակին մէջ որ կը կոչուի «ոտանաւոր». մին արծիւ է, միւսը աղաւնի։ Վանդակը. զոր արծիւը նեղ կը գտնէ, լայն է աղաւնիին։ Ուր արծիւը ստիպուած է ինքն իւր մէջ ամփոփուիլ, աղաւնին հոն ազատ կը շարժի։ — Ալիշան խիտ եւ հոծ իմաստներով կը լնու իւր տողերը. Պէշիկթաշլեան լայն ասպարէզ կը տայ իմաստներուն, եւ ինչ որ մի տողով կը բացատրէ արծիւն Ալիշան, սա բազմաթիւ տողերու մէջ կ'ընդլայնէ զայն մեղմիկ։*

*Երկուքն ալ կ'երգեն։ Ալիշանի երգը գոռում, Պէ-*

չիկթաշլեանինը ճլուըլիւն է։ Մի ջրվէժ է Ալիշան, որ ոռնալով ժայռէն վար կը նետուի, փրփուր եւ կոհակ կը ժայթքէ դէպ յերկին, եւ քարերը ծեծելով, խութերու վրայէ ցատքելով կը վազէ անհեղամռունչ, կարծես մի յաւիտենական խոչընդոտի դէմ կռուելով, հայհոյելով. բարձրէն վար կ'ոստնու, աւելի վեր թըռչելու համար. եւ այս ելեւէջը իւր քերթուածներուն յատակագիծն է։ — Պէշիկթաշլեան մի առուակ է, որ խոտին տակ դըդըշելով կը սահի, չհոսիր՝ կը ծաւալի, մերթ հոս, մերթ հոն մի արեւի ճաճանչ կը հաւքէ իւր ծոցին մէջ եւ դարձեալ մարգերու տակ կը թաքչի աննշան, եւ մի ոլորուն ստուերի պէս՝ հեզաշարժ բեկբեկներ յօրինելով՝ ինքն իւր մէջ կը խայտայ։

Ալիշանի քնարը սեւ պատանի մէջ թաղուած է կիսովին. կրօնաւորի պատանն է այն, որ, իբր անկողին Պրոկրուստի, բանաստեղծին խանդը կը ծայրատէ։ Պէշիկթաշլեան չունի այս նախակապը։ Ուստի, երբ Պէշիկթաշլեան Աստղիկին կը նայի, Ալիշան հառաչելով Արեգին կը դառնայ....։

Երկուքն ալ ունին հանճարի մեծ աչքերը, որովք խորերու մէջ կը յառին անդադար։ Կարծես Աստուած վեհութեան կնիքը կը դրոշմէ այդպիսի բիբերու վրայ, որք մի բացխփիկով եւ մի կշիռով՝ ով գիտէ քանի անհուն խոհեր կը ծրարեն։ Անգո՜ւթ հանճարներ, որք կը հաւքեն ինչ որ գեղեցիկ, ինչ որ գողտրիկ, ինչ որ վսեմ է, կը կապտեն բնութիւնը, եւ ապագային ոչինչ կը թողուն կոյս. անյա՜գ մեղուներ, որք անձնիւր վարդի հիւթը կը ծծեն, չոր թերթեր միայն կտակելով յաջորդներու...։

**Մ. Ձերազ** (Գրական փորձեր)

ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ ԵՒ ԴՈՒՐԵԱՆ

*Բանաստեղծ մը նախ իր հոգւոյն մէջ դտնելու է այն յոյզն զոր կամի ունկնդրին հաղորդել. Թերեւս այդ ալ բաւական չըլլայ, եթէ ազնիւ ձիրք մը չբունէր բանաստեղծին սրտին մէջ, երբ ցաւ մը չմրմռար հոն։*

*Այդպիսի կիրքով սովոր են երգել մեր քանի մը Ռուսահայ տաղերգուք, Պատկանեան, Նալբանդեան եւ ուրիշներ, որոց ոտանաւորներէն հայրենավառ խանդ մը կը շնչէ։*

*Այդպիսի սրտով կ'երգեն ահաւասիկ Պէշիկթաշլեան եւ Դուրեան, ամենուն սիրելի զոյգ մը վաղամեռիկ բանաստեղծներ, իրենց գողտրիկ տաղերուն մէջ։ Իրենց սիրոյն, ցաւերուն, ճակատագրին համանմանութիւնքը կարծես իրենց քնարներն ալ կը ներդաշնակաւորէն։*

*Երկուքին ալ Մուսայն կը սիրէ Թաւուտները, առուակները, սոխակն ու կուսանը։ Երկուքն ալ մօտանց կը նշմարեն կենաց վերջալոյսը։ Քանի՛ սիրուն տենչք, քանի՛ գեղեցիկ յոյսեր պիտի թաղուին անլոյս հողին տակ, քանի՛ մրմունջք, քանի՛ տրտունջք պիտի շոգիանան սրտամորմոք տաղերու մէջ յաւերժանալու համար։*

*Երկուքին ալ ոգիքը կը սիրեն մենանալ ազատերեւնոճեաց ներքեւ, նստիլ դամբանին սնարը, սուզել իրենց աչքը գերեզմանէն անդին, չեղիլ իրենց էութենէն, վերանալ, տարուիլ անծանօթ աշխարհ մը, եւ անջրպետէն անդին դարձունել երկրաւոր նայուածք մը, անդին ցաւոց հովիտը, եւ սիրելիներ որոնել ու խօսիլ յաւիտենականութեան եզերքէն։*

*. . . եւ բազմելով շիրմիս վերայ*
*Եկ գոչեցից առ նա, եկ, չեմ նոյն յորմէ խորշէիր դու.*
*Տե՛ս, վի՛մարդ գեղեցկացոյց զիս մահ, արար զիս տարփելի*

Մինթէ դարձեալ ատիցես զիս եւ անդրագոյն քան
ըղձլիրիմ...

Լուր ինձ Հրանոյշ...
Չեմկենդանի, եւ է՞ր փակես զաչսըդ զիս ոչ տեսանել,
Չեմ կենդանի եւ է՞ր ի բաց խոժոռ ըզդէմսըդ շրջես·
Ենկեալ չեմ գիշերագըոս ձեր գըգուանաց դընել կրծիմս
Եւ ոչ համայն զօրութեամբ մեռելութեան եւ դամբանին
Ամբաւութեան խմոյ սիրոյս փոխան ըզսէր քո պահանջել
Զոր կենդանեաւս ինձ զըլացար, մինթէ մահո՞ւս տացես
շընորհ։

Ուր աւելի Պէշիկթաշլեան մելամաղձոտ եւ փափուկ, Դուրեան աւելի ջղային խառնուածք մը, պատանեկան տիոց կորով մը կը բերէ իւր ողբերուն մէջ, ինչպէս հոս.

«Ողջո՜յն քեզ, Աստուած դողդոջ էակին՝
Շողին՝ մըթիթին՝ ալւոյն ու վանքին,
Դու որ ճակտիս վարդն ու բոցն աչերուս
Խլեցիր թըթռումն շրթանց, թռիչն հոգւոյս,
Ամպ տըւիր աչացս, հեւք տըւիր սըրտիս,
Ըսիր մահուան դուռն ինձ պիտի ժպտիս,
Անշուշտ ինձ կեանք մը կազմած ես ետքի
Կեանք մ'անհուն շողի՝ բոյրի՝ աղօթքի,
Իսկ թէ կորընչի պիտի իմ հուսկ շունչ
Հոս մառախուղի մէջ համր՝ անշըշունչ,
Այժմէն թո՛ղ որ շանթ մ'ըլլամ դալկահար՝
Պըլլուիմ, անուանդ մըընչեմ անդադար,
Թող անէծք մ'ըլլամ քու կողըդ խըրիմ,
Թող յորջորջեմ քեզ, «Աստուած ոխերիմ»։

Ո՞վ չէ արտասանած Պէշիկթաշլեանի Քնար եւ Տիրիմը, Ցեսին հառաչքը կարդալով։ Ո՞վ Նորատի բանաստեղծին ալ, Ցաւը, Մահը, Ցուշքը կարդացած է առանց արտասուելու։

Պէշիկթաշլեանի համար նմանող մ'է կ'ըսեն ու կ'անցնին շատերը. մենք ալ այնպէս կը ճանչենք զինքը, ինքն իսկ չէնք կարծեր որ ծածկել ուզած ըլլար երբեք իր հետեւողութիւնը: Բայց նմանողութիւնը միթէ երբէ՞ք մահացու մեղք մը դարձաւ ի գրագէտս, ո՞չ ապաքէն ամենքն ալ մեծ ու պզտիկ, աւելի կամ նուազ նմանողներ են: Միթէ Ուլֆի նմանելէ (*) փախչելու համար՝ Պէշիկթաշլեան մը Մուռի թաղմանը հետեւողութեամբ Հայ քաջորդւոյն զմայլելի եղերերգը զգուշանալո՞ւ էր գրել:

Ինչո՞ւ ուրեմն հանճարները հանճարներու հետ հաղորդակցին, շփուին, է՞ր գոհ չըլլալ ուրեմն անհարթ հանճարներէն եւ թողուլ որ բանաստեղծը յաճախէ Տանթէի, Շիլլէրի, Շէքսփիրի, Պայրընի, Լամարթինի պէս հոյակապ վարպետներուն դպրոցները, եթէ ազգային բանաստեղծութիւնը բնաւ օգուտ մը պէտք չէ քաղէ այդ յաճախումէն:

Պէշիկթաշլեան նմանող մ'է, այո, բայց աննման նմանող մը. իսկ Դուրեանի մէջ բաղդատաբար աւելի անկախ ոգի մը կը տեսնենք, բանաստեղծական ոգի մը՝ որ իւր սնունդն իւր մէջ կը գտնէ:

**Մ. Նորիկեան**

### Ե. Դիմագրութիւն

Հ. Ի՞նչ է Դիմագրութիւնն.

Պ. Դիմագրութիւնը կը նկարագրէ մարդոյ մի կամ անասնոյ մի արտաքին կերպարանը:

Հետեւեալ օրինակներն ուշ ի կուրծս ընթեռնուլ:

---

(*) Շառլը Ուլֆ, քերթող անգղիացի որ Ճօն Մուրի, անգղիացի զօրապետին, մահուան վերայ՝ Թաղումն Ճօն Մուրի վերնագրով քերթուած մի յօրինած է:

## ԽՈՍՐՈՎԻԴՈՒԽՏ

Սակայն հոն ամենէն տխրաշարժ միանգամայն եւ սիրաշարժ երեւոյթն էր՝ աւանդութեան ցուցածը։ Իբրեւ դիցակերպ ոգի մը, ուրհի մը այն մեռելատիպ միայնութեանց, կէս սեւ կէս ճերմակ, թէ ոչ յաւերժահարսն՝ գոնէ գիշերահարսն հեզաճեմ, որ լուսնին ծառէ ծառ անցուցած շուքերուն հետ սահելով կուգայ լռիկ մնջիկ իր ցորեկուան հովանոց՝ գիշերուան մենանոցը, սաղարթապատ սարքիմայից տակ, անշուշտ յՆրասխ վազող առուակի մը քով. որուն հոմաձայն հոմավանկ կարկաջանքն՝ իր համանման մտածմանց եւ անդաձմանց սիրելի արձագանգք են. — Ինքն տրտմութեան եւ լուսնին գոյներն առած՝ փափուկ ծնօտը կու հանգչեցնէ արծաթափայլ ծղեացը վրայ. եւ գրեթէ անշարժ անշունչ կու նայի կիսաբաց աչօք, որոց ոչ սեւութիւնը, ոչ արտասուքը եւ ոչ դիտած կէտը կրնայ նշմարուիլ. — աւելի մելամաղձիկ Մել-պոմենի մարմարեայ անդրի մը կարծուէր՝ յանկարծ հանդիպողի մը, քան կենդանի կոյս մը, եռանդուն օրիորդ մը, ազնուազուն պայազատ մը,... դստրիկ մը Խոսրովու, քոյրն Վահանայ Գողթնացւոյ։...

Հ. Ղ. Ալիշան (Յուշիկք)

## ՏԵՐՄՈՍԻՐ

Մինչդեռ մտայոյզ ի խորհուրդս յայսոսիկ՝ մտանէի յանտառ ուրեք նսեմաստուեր, եւ ահա յանկարծ տեսի զումն ծերունի՝ մատեան ի ձեռին, ճակատ նորա լայն եւ ճաղատ՝ դոյզն ինչ խորշոմեալ, մօրուք սպիտակափառ մինչ ի գօտին իջանէր, բարձրադիտակ եւ մեծավայելուչ, երեսք նորա դեռ եւս կայտառ եւ կարմրադեղ, աչք հրացայտք եւ սրատեսիլք, ձայն քաղցրաբարբառ, եւ զրոյցք պարզ եւ ախորժ։ Զէր

իմ երբեք տեսեալ այնպիսի ոք ծեր պատկառելի. եւ էր նա Տերմոսիր քուրմ մարմարաշէն մեհենին, զոր թագաւորք Եգիպտոսի կառուցին Ապողոնի յանտառի անդ. եւ գիրքն, որ ի ձեռին նորա, էին քաղուածոյք օրհներգութեանց դիցն։

Ֆենելոն. Տելեմաք Գիրք Բ.

## ԱԹԵՆԱՍ

Եւ իբրեւ վախճան եղեւ պատարագացն, եմուտ Տելեմաք զհետ Մենտորի ի մուայլ անտառակին՝ որ մերձ կայր, եւ անդ տեսանէր զնա յանկարծ յայլակերպս։ Խորշոմք ճակատուն անհետ լինէին որպէս ստուերք՝ յորժամ այգ վարդամատն բանայ զդրունս արեւելից, եւ բոցափայլ զեզերս երկնից պայծառացուցանէ։ Ականողիք նորա խորինք եւ դժնեայք փոխէին ի կապուտակ երկնագեղ ի լոյս աստուածեղէն շողեալ. անյայտէին մօրուսք նորա ալեբեկք եւ անյարդարք, եւ երեւէին ի դէմս նորա տիպք վեհք եւ ազնուականք, գեղեցիկք եւ վայելուչք՝ յոր զօշոտէին աչք Տելեմաքայ։ Կերպարան կնոջ ողորկ եւ գողտրիկ քան զծաղիկ նորափթիթ՝ վառ առեալ ի շողիցն արփենից, եւ վարդ կարմրագեղ ի սպիտակ յառեալ շուշան ի նմա երեւէր։ Ծաղկէր ի դէմս նորա ընդ անթառամ մանկութեան վեհափառութիւն պարզ եւ անարուեստ. բուրումն ամբրոսական ի վարսիցն ծածանելոց ծաւալէր. ձորձք նորա փայլէին որպէս զերփնունակ ճառագայթս՝ որք զնսեմ խորանարդ երկնից ընդ արեւածայրս երգունեն, ոսկեճաճանչ զամպս յօրինեալ։ Անկոխ գարշապարօքն ի յերկիր գնայր դիցուհին թեթեւընթաց, որպէս հաւ օդահերձիկ ընդ երկին սլացեալ. ճօճէր ի հզօր աջումն նիզակ փայլականշոյլ՝ ահարկու քաղաքաց եւ ազգաց գոռ սպառե-

բազմողաց, յորմէ Արէս իսկ արդեօք պակուցեալ սարսէր։ Բարբառ նորա հեզ եւ քաղցր, բայց զօրաւոր եւ յորդորական. եւ բանք նորա որպէս նետք հրաչէկք թափանցիկք ընդ սիրտ Տելեմաքայ, որ ազդէին ի նմա վէրս իմն չգիտեմ որպէս ախորժելիս. եւ զսաղաւարտիւ նորին չարագործ հաւն աթենական կայր դրուագեալ, եւ զլանջօքն փայլատակէր այծենական ասպարն ահեղ.

Նոյն. Ի Եմին. Գիրք ԻԴ.

## ԱՂԷՔՍԱՆԴՐ

Եւ յորժամ եհաս ի չափ, եղեւ անդամազեղ, բարենշան երեւելի, հարուստ եւ զօրաւոր խաղալեօք կապելովք յօդապատ ընդ միմեանս. սակայն զօրութեամբ քաջ քան տեսլեամբ ուժգնագոյն էր, քանզի կերպարանք մարմնոյ նորա միջին իմն էին։ Մորթն պաղպաջուն էր, այլ ի վերայ այտիցն նոյնպէս եւ ի լանջացն վերայ կարմրութիւն ցանեալ. հերս խարտեաշս ունէր գանգրագեղս, ունչս կոտմնկէս աչս ծաւիս պէսպէսս, զի պատմի իմն թէ ահեակն կապուտակ էր եւ միւսն թուխ։

Կուինտոս Կուրտիոս Ռուփոս. Պատմ. Աղէքսանդրի

## ՁԻ

Եթէ դո՞ւ ադուցեր ձիոյ զօրութիւն, եւ զգեցուցեր զահ ընդ պարանոցաւ նորա. արկեր զնովաւ սպառազինութիւն, եւ փառս լանջաց նորա զյանդգնութիւն։ Որոտայ ի դաշտի՝ եւ դափր հատանէ, եւ ելանէ ի դաշտ զօրութեամբ. ի պատահել նետից՝ արհամարհէ, եւ ոչ դարձցի յերկաթոյ։ Ի վերայ նորա շողան աղեղն եւ սուսեր, եւ շարժիւն վահանի եւ նիզակի. եւ բարկութեամբ ապականէ զերկիր։ Եւ ոչ

*հաւատայ՝ մինչեւ փող հարկանիցի. եւ իբրեւ փող հարկանի, նա վաշ վաշ կարդայ. ի հեռաստանէ առնու զհոտ պատերազմի՝ վազս առնելով եւ փռնչելով։*

**Յովբ. Գլ. ԼԹ. 19**

ՁՈՒԿՆ ՎԻՇԱՊ

*Շուրջ զատամամբք նորա ահ, փոր նորա վահանք պղնձիք, յօդք նորա իբրեւ զվէմ գայլախազ՝ մի զմիոյ կնի կցեալ, եւ օդ ոչ անցցէ ընդ նա։ Այր զեղբօր զհետ երթիցէ. զմիմեանց կալցին, եւ մի՛ մեկնեսցին։ Ի փռնչելոյ նորա փայլատակունք հատանին, աչք նորա իբրեւ զտեսիլ արուսեկի։ Ի բերանոյ նորա լամպարք բորբոքեալք, եւ հատանին անկանին շանթք հրոյ։ Ընդ ռընգունս նորա ծուխ ելանէ հնոցի հրոյ կայծականց։ Անձն նորա կայծակունք, եւ բոց ի բերանոյ նորա ելանէ։ Ի պարանոցի նորա բնակէ զօրութիւն, առաջի նորա կորուստ ընթանայ։ Անդամք մարմնոյ նորա մածեալք. եթէ զեղցէ ի վերայ նորա ոչ խլրտասցէ. զի սիրտ նորա սալացեալ է իբրեւ զվէմ, եւ հաստատեալ կայ իբրեւ զսալ դարբնաց անշարժ։ Ի խլրտել նորա՝ ահ գազանաց եւ չորքոտանեաց եւ զեռնոց երկրի։ Եթէ պատահեսցին նմա արդունք, ոչ ստնանեն զէնք եւ նիզակք։ Քանզի համարի զերկաթ յարդ, եւ զպղինձ իբրեւ զփայտ փուտ։ Ոչ խոցոտէ զնա աղեղն պղնձի. համարի զումբաքար խոտ, եւ իբրեւ զեղէգն համարեցան նմա ուռունք. ծաղր առնէ զշարժումն հրալից։ Անկողինք նորա տէգք սրեալք. ամենայն ոսկի ծովուն ընդ նովաւ իբրեւ զկաւ անբաւ։ Եռացուցանէ զանդունդս իբրեւ զկաթսայ, համարի զծով իբրեւ զոչինչ, եւ զտարտարոսն անդնդոց իբրեւ զգերի մի. համարեցաւ զանդունդս իւր ճեմելի։*

**Նոյն. Գլ. ԽԱ. 5.**

## ՀԱԶԱՐԱՆ ԲԻՒԼԲԻՒԼՆ

*Բաղիշոյ գարունը ունի սքանչելի առանձին ճաշակ մը. այդ ձորը երջանկացոյց զիս տեսնել տալով Հազարան բիւլբիւլն յիշատակեալ հէքեաթներու մէջ, զոր տեղացիք կ'անուանեն նաեւ Տուտի խումրի. լսեցի իւր զմայլելի երգերը, զորս կ'երգէր սուր, զուտ, բարձր դայլայլով, որ կը լեցնէր ձորն եւ անտառն. արդարեւ Հազար եղանակ գիտէ գեղգեղել, սարեկի մը մեծութեամբ, աչեղ, լանջքն, թիկունք եւ գլուխը փայլուն ոսկւոյ դեղնութեամբ, թեւերը սեւաթուխ, ծանր եւ վսեմ նայուածք մը ու շարժուածք մը ունի, թռիչը արագ է, բայց ոչ մացառի փոքրիկ բիւլբիւլի նման վժիկ վժիկ ու ճըռճըռ, եւ ոչ անոր պէս զկվզկկ, ոստոստիկ ու մարդոց անտեսող. սա ընդհակառակն կարծես հաճոյք կը զգայ ցուցնել իւր գեղն, եւ կ'ախորժէ երգել, երբ մարդ կը լսէ։*

**Գ. Վ. Սրուանձտեանց.** Համով-Հոտով (*)

## ՍԸՀԱԿ ԹՌՉՈՒՆ

*Բաղշոյ ձորի ծառերուն վրայ, ամէն իրիկուն երբ արեւը մար կը մտնայ, թփերու մէջէն մի ողորմուկ, սեղմուկ ամչկոտ աղջկան մը ձայնի նման, սրտի դպչող չվոց մը կը լսուի, «սըհակ, սըհակ, սըհակ...» երիցս կը կրկնուի, քիչ մը կը լռէ, կը թուի թէ՝ արձագանքի մը կամ պատասխանւոյ մը կ'սպասէ, ապա անյոյս իր սպասածէն՝ կը կրկնէ ու կը կրկնէ «սըհակ, սըհակ, սըհակ...» եւ այսպէս մինչեւ առաւօտ։ Գըտըրտիկ,*

---

(*) Հայրենանուէր բազմարդիւն վարդապետին սոյն նոր երկն որ ընդ մամլով է եւ յետ սակաւ աւուրց ի լոյս պիտի ելնէ, Հայաբնակ գաւառաց՝ ընդ որ շրջեցաւ ինքն ի վերջին ամս, տեղագրութիւնք եւ այլն են, զգայուն ոգւով եւ բանաստեղծական նկարագեղ պատկերներով ի գիր առնուած. գործ արդարեւ համով հոտով։

*կատար գլուխ, վախկոտ, անձկոտ այս թռչնիկն ո՞վ է հարցուցի օր մի բարեկամէս, — «Վա՜, չգիտես դու, քոյր մը ու եղբայր մը եղեր են որբուկ. Իրիկուն մը Սահակ իր քրոջ ծամերը կը սանտրէր, յափշտակուեցաւ յանկարծ, արծի՞ւ էր յափշտակողն թէ գէշ գազան՝ Աստուած գիտէ, ճչալու ձայնին հետ, սիրտ կ'ելնէ քրոջ, Աստուած՝ ինձ հաւքու թեւ տուր, թռնիմ իմ աղբերուկ գտնեմ։ Աստուած թեւ տուեր աղջկան, ու դեռ սանտրն է՛լ վեր գլխուն, այն օրէն ի վեր ծառեր ու դռներ կը թափառի, լեռներ ու անտառներ կը թռի ու կը կանչէ «սըհա՜կ, սըհա՜կ, սըհա՜կ»։*

Նոյն. Ի Եմին.

## ԱՅԼ ՕՐԻՆԱԿՔ ԴԻՄԱԳՐՈՒԹԵԱՆ

Դիմագրութիւն Հայկանուշայ. — Հ. Դիւց. Դր. Գ. 38.
» Բեթորայ. — Ի Եմին. Դր. Ը. 1018
» Խուցաբանդ ճիւաղի. — Ի Եմին. Դր Թ. 31
» Աստղկան. — Ի Եմին. Դր. Ժ. 725
» Վախտանգայ եւ Վարդենւոյ. — Ի Եմին. Դր. ԺԵ. 591
» Աղամայ եւ Եւայի. — Միլտոն Կորս. Դրխ. Գիրք Դ. 260
» Օձի. — Ի Եմին. Գիրք. Թ. 477

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ՔԱՂՈՒԱԾ ԻՄԱՍՏԻՑ ՁԵՒԵՐՈՒ ՎԵՐԱՅ

### ՀՐԱՀԱՆԳ 1.

Սոյն հրահանգին մէջ իմաստից ձեւերը որոշել.

### ԿԱԳ ԸՆԴ ԱՅՐ ԵՒ ԸՆԴ ԿԻՆ

*«Եթէ ես ըսեմ՝ այո, ինքը կ'ըսէ՝ ոչ. առաւօտ եւ երեկոյ, գիշեր եւ ցերեկ կը քրթմնջէ։ Երբեք, երբեք հանգիստ չունիմ նորա հետ։ Մոլեգին մէկն է, դեւ մի է։ Այլ, ո՛վ եղկելի, ըսէ ինձ. ի՞նչ ըրի քեզ։ Ո՛վ երկին, այն ինչ անմտութիւն էր որ կին առնել զքեզ ինձ. է՞ր խեղդամահ չեղայ մանաւանդ։ Ջեմ մեղադրեր*

զքեզ թէ որչափ ծախուց պատճառ կը լինիս ինձ, թէ որքան նեղութիւն կը կրեմ հայթայթելու համար իմ պէտքերն. բայց կ'աղաչեմ ու կը պաղատիմ քեզ, թող զիս որ աշխատիմ հանգստեամբ, ապա թէ ոչ՝ պիտի մեռնիմ, եթէ...: Դողացի՛ր, ու մի պայրացուներ զիս: Կ'արտասուէ նա, ո՛վ բարեսէր հոգի. անշուշտ ես եմ անիրաւն: Քաջ է. կ'ենթադրեմ թէ այնպէս է: Այո, շատ բուռն, շատ կրքոտ եմ: Բիւր անգամ փափաքեցայ որ տգեղ ոք լինէիր: Անիծեցի, ատեցի այն նենգաւոր աչերդ, եւ այն խաբուսիկ կերպարանքդ որ զիս յիմարեցուց: Բայց, ըսէ ինձ, միթէ լաւ եւս չլինէ՞ր քաղցրութեամբ ամոքել զիս: Մեր որդիք, մեր բարեկամք, մեր դրացիք, ամէն մարդիկ կը տեսնեն մեր ընտանեկան յոռի վարմունքը: Կը լսեն նոքա քո աղաղակներն, քո տրտունջներն եւ քո նախատինքներն որով կը կոծես զիս. տեսան զքեզ, երբ մոլորեալ աչօք, հրացայտ դիմօք եւ հերարձակ գլխով կը հալածէիր զիս եւ կ'սպառնայիր ինձ. սոսկմամբ կը խօսին քո այն վիճակին վերայով. դրացուհին կը հասնի, զամէն ինչ կը պատմեն նմա. անցորդը ունկն կը դնէ, կ'երթայ այլուր զայն յեղյեղել: Նոքա պիտի կարծեն թէ չար ու վայրենի մէկն եմ, թէ ամէն բանի կարօտ կը թողում զքեզ: Գնա, աշխարհ անիրաւ չէ. չարութիւնը չար գործողին քով կը մնայ: Աւա՜ղ, հէգ մայրդ ինձ այնչափ անգամ ըսաւ թէ իւրեան պիտի նմանիս. այժմ ի՞նչ պիտի ըսէ, եւ ի՞նչ կ'ըսէ. որովհետեւ կը տեսնէ նա ամէն ինչ որ կը կատարուի: Այո, կը յուսամ որ ինձ ունկնդիր պիտի լինի. եւ կը լսեմ որ կը կշտամբէ զքեզ՝ որ պատճառ եղար իմ թշուառութեանս, «ո՛հ, իմ հէգ փեսայս, կ'ըսէ նա, դու լաւագոյն բախտի էիր արժանի:»

**Մարմոնթէլ**

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳԻՏԵԼԻՔ ՁԵՒՈՑ ԿԻՐԱՌՈՒԹԵԱՆ ՎԵՐԱՅ

**1.** Հ. *Ուստի՞ պէտք է որ բղխին ձեւք.*

*Պ. Ձեւք, որպէս զի գեղեցիկ լինին, պարտին բղխել բնութեամբ ի նիւթոյն, որպէս նաեւ յերեւակայութենէ և զգացումէ որոց բարբառքն են։ Պէտք է ինքնին ծնին, եւ ինքնաբերաբար բղխին հոգիէ մի որ յուզուած է ի տեսիլ առարկայի իրիք։ Չէ պարտ բնաւ կասեցուցանել իւր մըտածմանց ընթացքն առ ի խնդիր ձեւոց. զի եթէ ձեւք, նման զարդուց, խորհրդով և մտածութեամբ դրուած լինին, գէշ արդիւնք մի յառաջ կը բերեն։ Մի մեծ սխալ է նկատել թէ ոճոյ ձեւերն նիւթէն անջատ իրեր են, և, որպէս ժապաւէն մի կցեմք զգեստուն, կարեմք յեռուլ և զայնս նիւթոյն։ Ֆենելոն ունայնախօս և զրաբան կը համարի զայն որ փայլուն պարբերութեանց և հանճարեղ դարձուածոց միայն լինի ի խնդիր. քանզի զայն ոք արժան է ընթեռնուլ և ունկնդիր այնմ լինել որ կը գործածէ զխօսս վասն մտածման, և զմտածումն վասն ճշմարտութեան և առաքինութեան։*

**2**Պ. *Ի՞նչպէս և ո՞ւր պէտք է ձեւերն ի կիր արկանել.*

*Պ. Այն պարագային մէջ իսկ յորում ձեւք բնականաբար կը բղխին ի նիւթոյն, պարտ է զգոյշ լինել չուայլ լինելէ։ Ձեւք, որպէս կ'ըսեն Կիկերոն և Կուինտիլիանոս, աչք են ճառին, այլ պէտք չէ որ սփռուած լինին աչք բովանդակ մարմնոյն վերայ։ Ձեւոց յոգնախուռն բազմութիւնն չէ ար-*

դինք բարւոք ճաշակի. զի կը պատրուակեն իմաստն, և, ըստ բանից Արիստոտելի, առեղծուած մի կ'ընեն գրուածն: Նաեւ մէն մի ձեւ իւր պատշաճ տեղն ունի. է որ՝ յատուկ է համոզելու, է որ՝ կիրք շարժելու և է որ՝ մեր գաղափարներն գեղեցկացունելու: Սակայն պէտք է որ միշտ նիւթէն բղխին. զի գեղեցկագոյն ձեւք իսկ ցուրտ են և թոյլ ու անջիլ երբ նիւթէն բղխած ու ներշնչուած զգացումներ չեն բացատրեր:

3[դ]. Հ. Այս ձեւերն գտնելու համար ի՞նչ բանի հարկ է դիմել.

Պ. Եթէ մեր միտքը չզօրեր գտնել այս ձեւաւոր լեզուն, ի զուր է մտնել ի փորձ: Երեւակայութիւնն ստացական կարողութիւն մի չէ այլ ձիրք բնութեան: Մարթ է զայն յատկել, զօրացունել. այլ՝ ուր ոչն գոյ, չէ մարթ բնաւ ամեներին ածել զայն ի գոյ, և մեր բոլոր ճգունք ձեւազարդ յօրինելու համար մեր ոճն, եթէ մեր հանճարն ինքնին չտանիր մեզ յայն, պիտի թուին անշնորհ և բռնազբօսիկ, և տաղտուկ պիտի ազդեն միայն: Ուսումնասիրել եւ ճանչել իւր մտաց զօրութիւնն, հետեւիլ բնութեան, գեղեցկացունել զայն առանց բռնազբօսութեան. այսոքիկ են ահա խորհուրդք զորս կուտամք այնոցիկ որք կը ցանկան յառաջադէմ նկրտիլ ի գեղեցիկ դպրութիւնս:

ՎԵՐՋ

ԱՌԱՋԻՆ ՄԱՍԻՆ ԳՐԱԳԻՏՈՒԹԵԱՆ

ՈՃՈՑ

# ԾԱՂԿԱՔԱՂ ՀԱՏՈՒԱԾՔ

# ՅԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԳՐԱՑ

## 1. ԼԵԶՈՒ ՆԱԽՆԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԻ ՀԱՅՈՑ

*Կամելով խօսիլ համառօտիւ զՀայ լեզուէն, աւելորդ կը համարինք յիշել ոմանց պնդելը ժամանակաւ թէ Հայերէնն այն աստուածատուր լեզուն է զոր խօսեցան նախ անուանեալ նախածնողք մեր յեդեմական դրախտին, եւ ապա սերունդք նոցա մինչեւ ի խառնակութիւն լեզուաց, եւ որ յետոյ Նոյայ միջոցաւ անցաւ ի նախնիս մեր Հայկ։*

*Այսպիսի կարծիս պաշտպանել թերեւս ներելի էր դար մի յառաջ, մինչդեռ լեզուաբանական ուսումը դեռ չկար։ Յորմէ հետէ ծնաւ՝ լեզուաբանութիւնն, եւ ծանօթ լեզուք բաժնուեցան դաս դաս իբրեւ ուրոյն ընտանիք, գիտունք ջանացին որոշել զտեղի Հայերէնին ի կարգս լեզուաց։ «Հայք,» ասէ Րիդդէր, «գիտնագոյնք անգամ՝ ի նոսա, որպէս Ինճիճեան, Զամչեան եւ Աւգէր, հնացեալ հմտութեամբ,* mit veralteter Gelehrsamkeit, *կը ջանան ցուցընել, բայց ի զուր, թէ Հայերէնը մարդկային ազգին նախկին լեզուն է։ Հնագոյնք յեւրոպացի քննչաց, յանուանէ Շրէօտէր եւ Աւտէլունկ, առ տգիտութեան, չկրցան ծանօթ լեզուաց մէջ տեղ մի տալ հայերէնին, ուստի Գալպի կովկասեան ինքնագլուխ լեզու մի համարեցաւ Հայերէնը։ Աւելի հնագոյնք, Ագոլութ եւ Դրոմլէր ազգակից համարեցան հայերէնը խափտերէնի, մինչ ինքեանք այս երկուց լեզուաց եւս անգէտ էին։ Վաղուրեմն Ստեփանոս բիւզանդացի Փռիւգերէնի նման*

կը համարէր այս լեզուն, հաւանականապէս, ասէ Բէդէրման, վասն զի Արարատ ի գիրս Սիբիլլայից սխալմամբ դրուած է ի Փռիւգիա։ Բայց որովհետեւ փռիւգերէնն այնպէս անծանօթ է, ինչպէս նմին համացեղ կարծուած հին Թրակերէնն ընդ որում այլք ազգակից համարեցան հայերէնը, հայ լեզուին փռիւգերէնի հետ նմանութիւնն այնչափ անստոյգ է, որչափ կարծիք Ստրաբոնի, որ զՀայս, եւ զԱրիս իսկ, ոչ միայն բարուք, սովորութեամբ, մարմնոյ կազմութեամբ, այլ եւ լեզուաւ կը համարի նմանս ընդ Սեմականաց, Արաբացւոց եւ Ասորւոց, սա պատճառաւ միայն զի գտանէր զնոսա խառն բնակեալս ի Միջագետս։ Պալլաս հայեցեալ յարդի հայերէնն միայն, դրաւ Հայոց լեզուն ի կարգս Դուրանեան լեզուաց, իբրեւ միջին իմն ի մէջ Թաթար կամ Թուրք բարբառոց եւ կովկասեան լեզուաց։ Լաքրոզ զհայերէնն համարելով նոյն ընդ հին լեզուին Մարաց, աւելի մօտեցաւ ճշմարտին, մանաւանդ զի ըստ Նայմանի մեծագոյն մասն բառից Մարաց որ գտանին առ Հերոդոտեայ՝ կը մեկնուին հայերէնով։ Զարմանք չէ այսչափ հակառակ կարծիս տեսանել զհայերէնէն որ հարեւանցի միայն ճանցուած էր, մանաւանդ այնպիսի ժամանակ. մինչ Գլաբրոդ անգամ ձայներու արտաքին նմանութենէ միայն կը դատէր լեզուաց ազգականութիւնը, զոր գիտել՝ լեզուին բովանդակ քերականական կազմութենէն միայն հնար է։ Բէդէրման եղեւ առաջին որ եցոյց հաւաստեաւ զազգականութիւն հայերէնին ընդ հնդեւրոպական լեզուաց։ Հըմուտ լեզուաբանն Բոդդ կ'ընդունի զայս, եւ Նայման կը համարի իբրեւ արդէն ապացուցեալ» (Բիդ. Արեւմտ. Ա.ս. Մասն Գ. 578)։ Բայց ինչպէս ճանչցան գիտունք թէ հայերէնն տոհմակից է լեզուաց

հնդեւրոպական ցեղին։ Սեմական լեզու մը ճանչնալ, որպէս ասէ Ռընան, դիւրին է քան հնդեւրոպական մը. բայց եւ այնպէս հնդեւրոպական լեզուք եւս ունին որոշ նշաններ որ չեն կրնար վրիպիլ գիտնական մտադիր դիտողութենէ։ Հայերէնի ցեղակցութիւնն ուրիշ հնդեւրոպական լեզուաց, հնագունից եւ հեռաւորագանից հետ անգամ, որպիսի են սանսքրիտն, յոյնն եւ լատին, այնպէս յայտնի եւ ներքին է, զի նմանութիւնն որ կայ ի մէջ սոցա եւ հայերէնին՝ չկարէ լինել արդիւնք ոչ պատահման եւ ոչ փոխառութեան։

Թէպէտ բնութեամբ հնդեւրոպական, է սակայն Հայերէնն այնպէս ուրոյն եւ անկախ, իբրեւ զՍանսքրիտն, զՅոյնն եւ զայլս ի համացեղից իւրոց, մինչեւ յիրաւի է կոչել զնա յատուկ անուամբ իբրեւ արմենական ճիւղ ի մէջ հնդեւրոպական ցեղին։ Չունենալով հնագոյն դարերէ գրաւոր մնացորդներ, ենք եւ պիտի մնանք ի հարկէ անգէտ, թէ ինչ փոփոխութիւններէ անցաւ եւ ինչ ազդեցութիւններ կրեց հայերէնն յընթացս, չէ յայտ, որչափ դարուց, մինչեւ հասաւ այն աստիճան յորում կը գտնենք զնա յանգին մնացորդս առաջին Հայ մատենագրութեան անուանեալ ոսկեղէն դարուն, որ է առաջին կէս հինգերորդ դարուն, իսկ եւ իսկ յետ գիւտի հայերէն դպրութեան։ Նայելով սակայն գիտնական անաչառութեամբ մատենագրական յատկութեան վերոյիշեալ մնացորդաց լեզուին, անհնար է չսքանչանալ. Հարստութիւն, մաքրութիւն եւ ընտրութիւն, բանաստեղծական զարդ, ճաշակ եւ փիլիսոփայութիւն որ կը տեսնուին այն չքնաղ մնացորդաց լեզուին մէջ՝ կ'ենթադրեն ազգային քաղաքական եւ մտաւոր բարձր վիճակ մը որչափ կրնայ մտածուիլ յայնպիսում հնութեան ժամանակի։

*Հինգերորդ դարուն առաջին կիսուն Հայերէն մատենագրական լեզուն, զոր, բառին անձկագոյն նշանակութեամբ, Թարգմանիչք մեր ոչ թէ հնարեցին՝ այլ ուսան, եւ որոյ օրինակն ունինք յեւս հնագոյն հատակոտորս ինչ երգոց վիպասանաց մերոց որ գէթ իբր երեք դար յառաջ էին քան զԹարգմանիչս մեր. թէ եւ Հայու միայն զգալի է այս, է սակայն եթէ ոչ հրաշք գէթ հրաշակերտ, եւ միմիայն նշան զոր թողած է Հայ ազգն իւր վաղեմի մեծութեան։ Անհնար էր լեզուին հասանել յայն չափ կատարելութեան՝ առանց մատենագրական մեծ շարժման։ Մատենագրական նշանաւոր շարժում մը դնել Հայոց մէջ յառաջ քան զգիւտ գրոյն, թէպէտ մատենագրական շարժումն լեզուի մը յանգիր ժամանակին չէ անօրինակ ըստ Մաքսմիւլլէրի, եթէ դժուարին է, եւս առաւել դժուարին է դնել թէ Հայերէն լեզուն, առանց ամենեւին այնպիսի շարժման, հասաւ յայն աստիճան մինչեւ կարողացնել զԹարգմանիչս մեր թողուլ մեզ այն հրաշալի մատենագրութիւնը։ Իցիւ բախտը որ, յետ կորուսանելոյ մեր այն լեզուն, տուաւ մեզ այն մատենագրութենէն առատ մնացորդներ, տայր մեզ յարգել ըստ արժանւոյն այն լեզուն, որոյ աղդեցութեամբ միայն հնար է որ եւ իցէ բարւոքումն յարդի լեզուի մերում։*

**Ա. Գարագաշեան** (Քննական Պատմ. Հայոց)

## Զ. ԵԹԷ Կ՚ՈՒԶԵՍ ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԱՂԷԿ ԳՐԵԼ, ԳՐԱԲԱՐ ՊԷՏՔ Է ԳԻՏՆԱՍ

*Ստոյգ է որ գրաբար լեզուն, եթէ՛ հնութեամբը եւ եթէ՛ դասական մատենագրութեամբն ամէն ժամանակ սրբազան է եւ միշտ ազնուութեան կնիք ու կերպարանք մ'ունի վրան. բայց մեք այս առաւելութիւնները յեղյեղելով դեռ բաւական յանձնարարական մը*

տուած չենք ըլլար հասարակաց կարօտութեան դարման բաղձացողներուն։ Պէտք է ուրեմն որ դիտենք տեսնենք թէ մեր ներկայ եւ ապագայ գրականութեան եւ մանաւանդ դպրոցներուն օգտակար մանաւանդ թէ հարկաւոր ալ չէ՞ գրաբարի ընդհանրական ծանօթութիւնը։

Գրաբարի հակառակորդ կողման պահանջմանցը գըլխաւոր չափաւորութիւնն է՝ որ առանց գրաբարի ուսումն աշխարհիս երեսէն ջնջելու՝ սահման կտրուի երկու լեզուաց մէջ։ Իրաւացի պահանջում՝ քանի որ սահմաններու հատմունքը բանաւոր են եւ խոհեմական. քանի որ ազգին ընդհանրութենէն դուրս չենք տարագիր ըներ գրաբարը, եւ սահման ցուցըներ իրեն՝ վանքերու որմունքը կամ ճեմարաններու սրահները. ինչպէս եղած ակնարկութիւններէն կրնայ հասկածուիլ։ Այո՛, կ՚արդարանան դժգոհութիւններն որ կը բամբասեն գրաբարի լծոյն խստութիւնը, աւելորդ ծանրաբեռնութեան տուած յոգնութիւնը, ցամաք յարատեւութեան բերած տաղտկութիւնը, անկենդան լեզուի մը կենդանեաց սահմաններուն մէջ յածելուն դժպատեհութիւնը. — բայց կ՚արդարանան մինչեւ որոշ սահման մը, մինչեւ որ ցայժմ տիրած գործնական սխալ մը՝ իրաց ուղիղ տեսութիւնն արգիլելէն դադրի։

Զէ թէ լոկ պարզ համարման մը վրայ յեցած հաստատ կը մնայ գրաբարի կարեւորութիւնը, չէ թէ միայն տեսականապէս մտածելով վաղեմի սրբազան վսեմութեան ներկայացուցիչ, եւ անհնանալի հնութեանց մշտնջենաւոր աւանդապահն է՝ հասարակաց կեանքէն վեր, այլ նաեւ մեր օրըստօրական գործնական կենաց մէջ ալ ինքն է առաջնորդ, քանի որ ըստոյգ կը մնայ՝ թէ հասարակաց կեանքն ազգային

մատենագրութեան կամ գրականութեան հետ սերտիւ կապուած է։ Այդ «աւելորդ ծանրաբեռնութիւն» կոչուածն՝ այնպիսի շահաւէտ ծանրաբեռնութիւն է, ինչպէս իւրաքանչիւր մշակ իւր անդոցն ու ծառերուն համար կը բաղձայ որ ցողունները հակին եւ ոստերը ճմլին բերոց բեռանը տակ։ Առանց այն «ցամաք» աշխատութեան՝ չենք մտածեր թէ ինչչափ ցամաք կը մնան մտքերն ու գրիչները, եւ առանց այն «անկենդան» գրաբարին՝ ուստի՞ ունի իւր կենդանութիւնն աշխարհաբարը։ Պատմութիւնը բարձրաձայն կ՚աղաղակէ թէ Նոր աշխարհքս, Նոր Եւրոպա չկըրցաւ գիտութեանց եւ արուեստից անկածութենէն ելլել եւ յառաջադիմութեան ճամբան կոխել՝ մինչեւ որ չդարձաւ իրաց դարմանն իւր հնութեանցը մէջ չփընտըռեց։ Հոն գտաւ ակնաղբիւրը, հոն ճաշակաց ազնուութիւն, հոն գաղափարաց առատութիւն, հոն նոր կեանք եւ կենսական ոգի՝ որ իւր ներկայ գործունէութեանը մէջ պիտի թափանցէր։ Ասիկա այնչափ անմեկնելի եւ դժուարաւ բացատրուելու գաղտնիք մըն է՝ որչափ նոյն իսկ ազնիւ ճաշակն անմեկնելի եւ դժուարաւ ցուցուելու բան է։

Բայց մեզի բաւական է, կ՚ըսուի, մինչեւ հիմայ եղած փորձը, եւ բաւական ցաւալի են դպրոցներու մէջ կորսուած տարիները։ — Այո՛, վայրապար անցան դպրոցական տարիները, ուսողներուն եւ ուսուցիչներուն ժամանակն ու համբերութիւնը մէկտեղ մաշեցնելով, եւ մենք չկրցանք գոնէ լեզուին ուսումն աւանդել. ասոր վրայ՝ եղած փորձառութիւնն ինքնին բաւական է եւ ուրիշ վկայ չուզեր, ինչպէս յառաջ տեսանք։ Սակայն պակասութիւնը գրաբար սորվելուն ու սորվեցընելուն վրայ չէր, այլ առանց դիւրացուցիչ պատրաստութեան, առանց ծանօթ լեզուի վրա-

յէն քերականութեան ուսումն աւանդած ըլլալու՝ յանկարծ քերականութիւն եւ գրաբար մէկտեղ սորվեցնելն էր սխալմունքը. (եւ արդէն յայտնի է որ գրաբար հայերէնն ալ շատ պարզ ու դիւրին լեզուաց կարգէն չէ։) Իսկ թէ աշխարհաբար լեզուի քերականութիւն սորվելէն ետքը ինչչափ կը դիւրանայ գրաբարը, ամենայն ոք կրնայ ինք իրմէ գտնել։

Բայց մենք աւելի յառաջ կ'երթանք եւ կ'ըսենք թէ գրաբարն անհրաժեշտ հարկաւոր է՝ ոչ միայն գրաբարի համար, այլ մանաւանդ աշխարհաբարի համար ալ։

Աւելորդ է հոս ճառ մը խօսիլ աշխարհաբարին գրաբարի հետ ունեցած կապակցութեանը եւ մանաւանդ անհամար կարօտութեանց վրայ՝ որոնք արդի լեզուն գրաբարէն պիտի լեցնէ, որմէն ինչպէս իւր ծնունդն առած է, նոյնպէս դեռ իւր զարդարանքը մանաւանդ թէ դեռ հոգին ու շունչը կ'առնու։ Ոչ այնչափ ապահովութեամբ կրնայ աստեղագիտութիւնն զմոլորակն արեգակէն արտադրութիւն ցուցընել՝ որչափ լեզուագիտութիւնը զաշխարհաբարը գրաբարէն. այն տիեզերական մարմնոյ զանգուածը՝ թէեւ իւր բոլորական կերպն առած, թէեւ ինքնակաց ամբողջ մը ձեւացած, եւ կրնայ ինք իրմով դառնալ թաւալիլ, բայց առանց իւր արեգականը միասնականութեան մշտնջենաւոր խաւարի մէջ թաւալիլ մըն է առանց տածիչ ջերմութեան, առանց շնչոյ եւ կենդանութեան, եւ այն վայրկենէն որ նոյն կենդրոնական զօրութիւնը զինքը թողու՝ հաւասարակշռութիւնը կորսընցուցած՝ քայքայման վիճակի մէջ է։ Առանց գրաբարի՝ որ Նոր լեզուին այլեւայլ շառաւիղներուն կեդրոնն ու զօդիչն է, հարկ է որ նախ իսկական անիշխանութիւն (anarchie) տիրէ գործողներուն զանազան

ուղղութեանցը մէջ, որուն կից հետեւորդ է քայքայումն, երբ իւրաքանչիւր ըստ մտի կատարելագործութիւն մէյ մէկ նոր խանգարում աւելցընէ։ Իսկ մեզի ամէն բանէ յառաջ այն կապը պէտք է՝ որ բազմութեան մէջ միութիւն, եւ միութեան մէջ զօրութիւն յառաջ կը բերէ։

Դարձեալ աշխարհաբարի որպիսութեան չափը՝ մեր գրաբարի հմտութեանն աստիճանն է. որովհետեւ միշտ ստոյգ կը մնայ՝ թէ նոր լեզուի մը բոլոր գանձը հնոյն մէջն է, եւ հինն ստացողը տիրած է նորոյն վըրայ։ Ուստի կրնանք մեզի հաստատուն առած մը կազմել. Եթէ կ՚ուզես աշխարհաբար աղէկ գրել, գրաբար պէտք է գիտնաս. եթէ կ՚ուզես աշխարհաբար քաջ ու հիմնովին գրել, գրաբար պէտք ես քաջ ու հիմնովին գիտնալ. մանաւանդ թէ նոյն իսկ աշխարհաբարը հիմնովին հասկընալու համար հարկ է գրաբար գիտնալ. թող տաղաչափութեան մասն ալ՝ որուն կազմութիւնն ըստ խմիք գրաբար կրնայ ըսուիլ։ Հանապազօրեայ փորձն ամէն տեղ կը ցուցընէ թէ ի՛նչչափ յողդողդ պէտք է ըլլայ անոնց ամէն քայլափոխը, ի՛նչչափ երկբայական անոնց յաջողութիւնը՝ որոնք հինը հիմնովին չեն ճանչնար, եւ ո՛րչափ յաճախ իրենց բազմապատիկ կարօտութեանցը մէջ աջ կամ ձախ կը սայթաքին՝ առանց ընթերքնին որոշ գիտնալու։ Մէկ խօսքով՝ կրնանք համարձակ հաստատել թէ այսօրուան օրս առանց գրաբարի աշխարհաբար չըլլար։ Բաւական աղէտալի եղած է միշտ այն յատակագիծներուն գործադրութիւնը՝ որոնց մէջ յառաջադիմութեան գաղափարն ապստամբութեան գաղափարին հետ կից ըմբռնուած է։ Գրաբարի հովանւոյն տակ բարգաւաճելու սկսած աշխարհաբար մը յանկարծ ապստամբութեան դրօշն որ կանգ-

նէ անխոհեմութեամբ, ուշ կամ կանուխ կը սախրոտի խոստովանիլ թէ այն փորձը ծանր արժեց իրեն. որմէ կրած վնասներն իրօք ալ անդարմանելի կ'ըլլային եթէ վերջապէս յետին ապաւէնը չկարենար դառնալ իւր թօթափած լծոյն տակ մտնել:

**Հ. Ա. Այտընեան. Քննական Քերականութիւն.**

## 3. ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ ՄԱՐԴՈՑՆ

*Ո՞վ ի հաւատացելոց՝ իր կրօնական եւ պատմական ուսմանց սկիզբը չէ լսած, չէ սորված. բայց անգամ մ'այլ հրաշալի նախամարգարէին գրոց գլուխը, եւ կարդա քու սկզբանց սկզբնաւորութիւնը, մարդոյն ստեղծագործութիւնը:*

*Եթէ ուզես, մտացք վրայ հեծած՝ թռիր մինչեւ քու հայրենիքդ, եդեմական սահմանները. եւ դեռ դրախտին մէջ չի մտած՝ անկէ դուրս եւ քիչ մը հեռու (բայց մի՛ մինչեւ ի Դամասկոս) (*), ընտրէ՛ դարատափ կամ ձորավայր մը. դիցուք թէ ըլլայ մեր հին Սըրմանց, (թերեւս եւ Սերմանց) լեռներուն մէջ, որ հիմա Պինկէօլ կ'ըսուին. եւ անկէ վերանալով պատմական ժամանակաց սկիզբը, տե՛ս նկատէ հոն իջած՝ յառաջ քան ի Սինա, եւ յառաջ քան ի Քորեբ՝ մէկ մեծ թեթեւ ու շարժուն բրգան պէս բան մը, իբրեւ ամպով, ծխով, լուսով, բիւրեղով շաղուած. որոյ միջէն կարծես տեսնել մարդկային կերպարանաց ուրուական մը, որ ծիրանի՛ գօտւոյ նման ընդարձակ գիրկ ու թեւեր շարժելով, եւ իր ստորոտը եղած կաւային հողի կոշտ մը քրքրելով՝ յիրաւի քեզի մեզի նման նիւթական կերպարանք մը վեր կու կանգնէ: Առջի*

(*) Վասն զի ոմանք զԱդամ ի Դամասկոս ստեղծուած կ'ըսեն, եւ անկից, կ'ըսէ մէկն, Աստուած ձեռքը Ադամայ ճակտին վրայ դրած՝ քշեց քանի մը ժամուան մէջ հասուց յԱյրարատ:

ստեղծուածներէն տարբեր եւ ազնուագոյն կենդանւոյ մը կաղապար կ'երեւի ատիկայ. հազիւ երկու թաթով գետինը կոխած, ուղղաձիգ կու վերանայ երկնադիտակ բոլորակ գլխով. երկու կողմէն թեւեր արձըկած, ոչ թռչելու յարմար, այլ իբրեւ փարելու իրեն նմանւոյ մը հետ, կամ թէ նոյն իսկ իրեն ստեղծողին՝ երբ ճանչնայ զայն։ Տեսածնիս դեռ անկատար կաղապար մ'է. անշարժ, անյարդ, անզարդ պատկեր մը, բայց Աստուծոյ պատկեր ըլլալ գուշակուի. կաւակերտ կարմրակերտ արձան մը, որ կարծես թէ ներսէն կենդանանալու աշխատելով՝ մանր քրտան կայլակներ կու թորէ բոլոր ղանդուածէն դուրս, զոր երեկոյեան զովագին հողմիկն կամաց կամաց ցամքեցընելով կու ճերմըկցընէ, կ'ամփոփէ. եւ իբրեւ հեռուէն մօտեցընելով աչքիդ՝ հետզհետէ յայտնագոյն կու ցուցընէ մարդկային կերպարանք. նախ եգիպտական արձան մը կարծես զայն, վերջը կովկասեան կերտուած մը, յետոյ մօմէ մարդ մը. հիմա բուն մարդ ըսել չըսել չես գիտեր, վասն զի բան մ'է, բայց ոչ կենդանի եւ ոչ մեռեալ, ոչ ի քուն եւ ոչ արթուն. այլ այնպիսի՝ որ ոչ անուն ունի եւ ոչ ճիշդ պատկեր մը՝ մեր հիմակուան դաղափարաց մէջ։ Իսկ հրաշագործ ճարտարապետն՝ իբր թէ պահ մը կիսկատար թողլով իր ամենէն զարմանալի շէնքը՝ կու դիտէ անոր չափակցութիւնը, եւ ծանրութեամբ ու մտածմամբ կ'ուզէ այդ կաւեղէն պատկերին ազդել ողորկութիւն, գոյն, շարժում, շունչ, կեանք, զգացում, բան եւ հոգի. եւ այս ամեն ըսածներս՝ իր դիտելուն եւ հաճելուն առեն՝ կ'ազդեն, կ'երեւին իր ձեռակերտին վրայ․․․։ Տես, ի՞նչ շուտ շուտ այդոր արտաքին երեւոյթն կակղած կոկած սկսաւ փայլիլ, հետզհետէ մոմագոյն, մոխրագոյն. շուշանագոյն, ծիրանեգոյն,

վերջապէս մարմնագոյն. եւ այնքան բարակ ու փափուկ, որպէս թէ թափանցիկ մաշկ մը միայն ծածկէր ներքին զարմանալի մեքենայն, եւ իբրեւ ապակւոյ մը տակէ ցուցընէր կապուտաթել ջղեր եւ երակներ...։ Ահա յանկարծ բոլորակ գլխէն ինչուան ուսերը ընձուեցան արձըկեցան գունդ գունդ խոպ խոպ փունջեր, բայց իբրեւ պղնձի անդրիի մը վրայ՝ անշարժ են. աղօտ աղօտ արշալուսէ մը ծագած առաւօտու պէս յանկարծ կ'երեւին բարակ թարթափք եւ յունից կամարք, որոց ներքեւը երկու մարգարտափայլ գոգք կան, մէջ տեղուանքն սեւ ադամանդ. – անշուշտ ճանչցար աչքերը. բայց անոնք զքեզ չեն ճանաչեր, քեզի չեն նայիր, չեն շարժիր. սառնամած լճակներ են, ծածկուած ակունք են, որ կ'ուզեն լոյս առնուլ եւ լոյս տալ...։ Եղիցի՛ ուրեմն լոյսն, անհամբերութեամբ կանչես. եղիցի՛ լոյս ի վերայ այդ սքանչելի դաստակերտիդ. եղիցի՛ դա կենդանի պատկեր Աստուծոյ...։ Եւ ահա եղեւ լոյսն կենդանի։ — Կու տեսնե՞ս, անդրին մարդ կ'ըլլայ. կ'ըլլայ ըսելու չիմնար, կաւէ կաղապարն՝ Ադամ եղաւ։ Ի՞նչպէս եղաւ, ուսկի՞ց եկաւ այն ճառագայթն, այն՝ գոյներն, այն շարժումն... Դեռ վայրկեան մը, րոպիկ մը, պիկ մը առաջ պատկեր էր, հիմա անձն է։ Վասն զի հրաշագործն՝ աստուածային երագութեամբը դպաւ այդոր ճակտին, եւ մէկէն արձանին մեքենաներն սկսան շարժիլ։ Դիտէ՛ դա գանգուր գիսակներն՝ ի՞նչպէս բարդ բարդ կու ծփան. նայէ դա շիկորակ շրթանց շարժմունքը, դա զմրուխտէ աչաց հրեղէն թաւալմունքը, երկխորշեայ ռնգանց բարակ շնչառութիւնը, դա գեղեցիկ գլխոյն հեզիկ պտոյտքը, դա ջաջուռ թեւոց թափ տալը. դա դռոյթ տուող ոտից դոփիւնը, որ ոչ միայն անդրին իր պատուանդանէն կտրեցին, այլ

բոլոր անձին ներքին ազդուածքէն ուժ առած՝ այնպէս սաստկութեամբ մը գետնին թունդ կու տան, որ օդապարիկ գունտէն աւելի շոյտ եւ աւելի բարձր պիտի ցատքէր յերկնից միջոց, թէ որ դեռ ճակտին վրայ դրուած չըլլար մատն աստուածային. որ իբրեւ ամեհի երիվար մը՝ սանձով, կամ ծխով հողմով զինուած պատրաստ նաւ մը՝ խարսխով, դեռ բռներ է զայն՝ բայց այնպէս մը կ'երեւի՝ թէ հազիւ եւ ոչ ընդերկար կրնայ համբերել բռնուածն:

Իսկ աստուածպետականն յետին հաճութեան ժպիտ մ'նայլ տալով՝, իր անքննելի ծոցէն կու փչէ նորաշէն պատկերին վրայ շունչ մ'այլ. շունչ բանական, աննիւթ եւ անապական, որով բոլորովին կ'ըլլայ կու կատարուի մարդն. եւ հաղորդ, աստուածային զօրութեան, աստուածային երագութեամբ մը ճանչնալով ինքզինքը, ինչպէս եւ ուստի ըլլալն, միանգամայն աչքով եւ շրթամբք, թեւօք եւ ծնգօք, սրտիւ եւ բանիւ եւ հոգւով կու կանչէ՝ ԱՍՏՈՒԱԾ ԻՄ:

Հ. Գ. Ալիշան. Յուշիկք

## 4. ՏՈՒՆ ԵՒ ԸՆՏԱՆԻՔ

Ընտանեկան կեանքին եւ տան շինութեան բուն հիմնաքարեր կը համարուին հայր եւ մայր: Ո՜րչափ սքանչելի զարմանալի են ամուսնական պարտիզին մէջ այս երկու մանանեխի փոքրիկ հատիկները, որ ըստ Աւետարանի առակին՝ երթալով աճելով մեծ ծառ կը լինին եւ իրենց բազմապատիկ ճիւղերը կը համասփռեն բոլոր աշխարհը: Վասն զի, ամուսնական արմատէն ընտանիքը կը հաստատուի, ընտանիքէն ժողովուրդ, ժողովուրդէն այլ եւ այլ ազգերը, ազգերէն իշխանական պետութիւնները, եւ պետութիւններէն ընդհանուր մարդկային համաշխարհական ըն-

կերութիւն։ Ցորմէ դիւրաւ կ'իմաստասիրեմք թէ մեր ընկերական աշխարհին բովանդակ շէնքը ամուսնական եւ ընտանեկան պատուանդանին վերայ հաստատուած է. ժողովրդոց ոտքը եւ պետութեանց գահերը նորա վերայ դրուած են. եթէ քանդուի այս պատուանդանը՝ ժողովուրդ եւ գահերը ի միասին կը տապալին. այնուհետեւ ոչ եւս կայ, ոչ աշխարհ, ոչ ադամորդի, ոչ կեանք, եւ երկիր կը դառնայ նոյն առաջին վիճակը, «Երկիր աներեւոյթ եւ անպատրաստ»։

Ոչ ոք կարէ ժխտել թէ այս այսպէս չէ. աշխարհիս հին ազգաց պատմութիւն, արդի ընկերական վիճակը եւ մեր ազգին կեանքը՝ այս ամէն կ'ապացուցանեն թէ ոչ միայն մարդկային սեռի աճումն, այլեւ ժողովրդոց, ազգաց, հայրենեաց եւ թագաւորութեանց բաղդը ընտանեկան կեանքէն կախումն ունի. թէեւ մեր ընկերական երջանկութեան եւ թշուառութեան կան արտաքին ուրիշ այլեւայլ պատճառները, բայց իմաստուն խելամտութեամբ նկատելով աշխարհիս իրողութեանց սկիզբն, միջոց եւ վախճանը. կը տեսնամք որ աշխարհիս չարեաց ու բարեաց սկզբնածնունդ մայր ընտանիքն է։ Հապա ընտանեկան կենաց թէ չարութեան եւ թէ բարութեան պատճառն ո՛վ է. դորա պատճառն եւս շատ մօտ եւ յայտնի է. այսինքն ծնողք՝ հայր ու մայր, որոց հպատակութեան տակ կ'ապրի ամբողջ ընտանեկան գերդաստանը։

Տուն եւ ընտանիք մի փոքրիկ թագաւորութեան երկիր ու սահման է. որոյ նահապետական աթոռին վերայ կը նստին ծնողք. հայրն իբրեւ թագաւոր, եւ մայրն իբրեւ թագուհի. եւ կը կառավարեն հպատակ ընտանիքը. սոյն ընտանեկան պալատին ու թագաւորութեան մէջ, ոչ ստրկան կայ, ոչ սուր, ոչ բռնութիւն, ոչ գաւազան. այլ ամենուն տեղ, հայրական

սէր եւ մայրական գորովն է . դաստիարակ եւ խրատ՝ ծնողաց կենդանի օրինակն է։ Այս օրինակը այնչափ բարի ու տպաւորիչ է, որ գիտես թէ լուսարուեստին պէս թափանցիկ կերպով ծնողաց պատկերը նոյնատիպ կը հանէ իւր զաւակաց վերայ. եւ զաւակները այդ սկզբնական տիպարն առնելով կը մտնեն ժողովուրդին եւ ընկերութեան մէջ։ Այնուհետեւ տարածել կը սկսի օրինակէ առ օրինակ . եւ այսպէս ընտանեկան կենաց բարի եւ չար օրինակներէն , ժողովուրդին կեանքը կը բարւոքի կամ կը պեղծանի , կը շինուի կամ դայթակղութեամբ կը փլչի , կենդանի կը մնայ աշխարհիս վերայ կամ կենդանւոյն կը մեռնի , եւ իւր յիշատակ կը բարձուի աշխարհէս։

Ժողովուրդ եւ ազգերը միայն հացով չեն ապրիր . թագաւորութեամբ եւ ազատութեամբ չեն բարձրանար , այլ առաւել բարոյական կեանքով . եւ այդ կենսական կեանք տուողը ընտանիքն է։ Ուշադիր եղիր , եւ ես նկարագրեմ քեզ։

Ժողովուրդը կը յառաջադիմէ՝ իւր առաջին քայլը ընտանեաց սրահէն կ'առնու . եթէ կը լուսաւորի, իւր լոյսը ընտանեկան ճրագէն է . եթէ կը միանայ , իւր ոգին եւ կապն ընտանիքն է . եթէ կը զօրանայ , իւր ուժ եւ բազուկն ընտանիքն է . եթէ կը հարստանայ իւր գանձարան եւ գանձապետն ընտանիքն է . եթէ իւր տուն եւ սեղան բարելից եւ առատ է , արդիւնաբեր անդաստանը ընտանիքն է . եթէ դրախտի գետերը կը վազեն իւր հրապարակը , աղբիւրը դրախտի ընտանիքն է . եթէ իւր կարասները լի են գինւով՝ կը խմէ կ'ուրախանայ , խաղողաբեր այգին ընտանիքն է . եթէ բարեծնունդ զաւակներով օր ըստ օրէ բիւրապատիկ կ'աճի , իւր նախածնող խնամատար ընտանիքն է . եթէ աշխարհիս ծանրակիր լուծերէն

ազատիլ կ՚ուզէ, թող գիտնայ ու հաւատայ թէ իւր փրկիչ ձեռքն ընտանիքն է. եթէ կը բարձրանայ ու կը փառաւորի՝ իւր փառաց տաճարն ընտանիքն է. Եթէ հայրենիքէն վարեալ հեռացեալ է եւ կրկին իւր հայրենիքը երթալ կ՚ուզէ, նորա ուղեցոյց առաջնորդ ընտանիքն է. եթէ իւր հին կորուստները գտնել կ՚ուզէ, թող չորոնէ զայն օտարին հրապարակը, զի իւր կորուստն ընտանիքին ծոց պահուած է. եթէ իւր զաւակները բարեկիրթ քաղաքացի պատրաստել կ՚ուզէ, իւր բարեկրթութեան առաջին համալսարան ընտանիքն է. եթէ այս աշխարհիս վերայ երջանիկ ապրիլ կ՚ուզէ, թող հաւատայ, որ երջանկութեան կեանք բղխող աղբիւր ընտանիքն է. եթէ երկրէս յետոյ երկինքն եւս ժառանգել կ՚ուզէ՝ պահելով իւր հայրենի կրօն, հաւատ, եւ եկեղեցին, այո՛ այդ սուրբ աւանդները անեղծ անկորուստ պահելու խորանն ընտանիքն է. զի այդ գանձը եւ Աւետարանի անգիւտ մարգարիտը աշխարհիս չահավաճառութեան հրապարակին մէջ, կառավարութեանց դահլիճներու մէջ, գիտութեանց ճեմարանաց մէջ անկորուստ չեն պահուիր, այլ միայն դորա հաւատարիմ աւանդապահն ընտանիքն է։

Տեսա՛ր մտադիր ընթերցող, այս նկարագրին մէջ քեզ յանդիման բերի. թէ ո եւ իցէ ժողովուրդը իւր բարոյական կենաց տիպարը ուղղակի ընտանիքէն կ՚առնու, եւ պարծանօք ցոյց կու տայ աշխարհի թէ ինքն բարեկիրթ ընտանեաց զաւակ եւ ժողովուրդ է։

Տեսնանք նաեւ սորա հակադիր պատկերը, եւ աւագ աչքով նկատեմք. որ չարաբաստ ապերջանիկ ժողովուրդը իւր կեանքի զեղծումները դարձեալ նոյն ընտանեկան պատկերէն կ՚ընդօրինակէ եւ ի տես կը հանէ աշխարհին հրապարակը. եւ ահաւասիկ ցուցնեմ քեզ։

Ժողովուրդ եթէ կը զեղծանի կառավարութեամբ՝ իւր զեղծմանց սկզբնաւորութիւնը ընտանիքէն է. եթէ բարոյական կենդանի կեանք չունի՝ մեռելութիւն ընտանիքէն է. եթէ դէպ ի կորուստ կը դիմէ, իւր կործանման ճամբայ բացող ընտանիքն է. եթէ ծունկեր կթոտ են. իւր քայլերը յառաջ չեն երթար, լքումն ու կաղութիւն ընտանիքէն է. եթէ Պրոպատիկէ աւազանին քով կեցած դեռ կը դանդաղի երբ ուրիշ հիւանդ ազգերը ողջացան ու գնացին. ո՛հ, ես գիտեմ զայն անդամալուծող ձեռքն ընտանիքն է. եթէ երկու ձեռքով կը հարստահարուի՝ մէկ ձեռքն ընտանիքին է. եթէ արտաքին թշնամիներէն պաշարուելով ափշած է, իւր ներքին մերձաւոր ու բարեկամ թշնամի իւր տան ընտանիքն է. եթէ աշխարհիս կեանքի ճանապարհին մէջ ուղղութիւն չունի, յոռութիւն ընտանիքէն է. եթէ Եւրոպիոյ կախարդիչ նորասիրութիւնք զինքը պիտի կողոպտեն անխնայ, թող զգաստ լինի ու տեսնայ որ մեծ կողոպտիչ ձեռք իւր ընտանիքն է. եթէ իւր զաւակներ օր ըստ օրէ հացի կարօտ թշուառ կը լինին, այդ քաջ յայտնի է որ ընտանեկան մշակները անաշխատ հեղգ եւ անհոգացող են. եթէ առանց տնտեսութեան առանց նախատեսութեան կը վատնէ իւր վաստակ եւ գանձը, ո՞վ չի գիտեր թէ չռայլութեան տնտեսապետն ընտանիքն է. եթէ իւր զաւակները առոյգ ազնուածնունդ չեն, ուրեմն ընտանեկան սերունդն հիւծելով ստրկացած է. եթէ իւր օրիորդք եւ երիտասարդք վարակած են մաշողական ախտով, ո՛հ, դոցա մահ եւ գերեզման փորող ընտանիքն է. եթէ կորաքամակ լինելով ազատ պարանոցն ստրկացած է, սորա պատճառն եւս շատ յայտնի է, որ Մակարէ եւ Շամունէ մեռեր են։ Ի վերջոյ եթէ ժողովուրդ, կրօն, հաւատ, եկե-

ղեցին՝ կը թողու, Աստուածպաշտութեան պարտիքները սրտէն կը հանէ եւ կը դառնայ դէպ ի Ջրհեղեղին դարը, անբարիշտ կեանք կը վարէ, գիտցիր այդ ապականութիւնը կայենի դստերաց հետեւող ընտանիքէն է։

Խրիմեան Հայրիկ. Դրախտի ընտանիք

## 5. ԲԱՆԱՍՏԵՂԾԸ ՄԻ ՎՍԵՄ ՄԱՐԴ Է

Բնութիւնն եւ ընկերութիւն գեղեցիկն կ'ընծայեն գրեթէ միշտ խառնեալ եւ աղօտացեալ թերութեամբք, անկատարութեամբք. գաղափարականն կը ծածկի յաճախ ձեւերու տակ որ կ'սքօղեն զնա, եւ անցնիւր ոք միեւնոյն աստիճանաւ չունի գեղեցկին յղացումն եւ զգացումն, աստի՛ ճարտարք եւ բանաստեղծք, առանձնաշնորհեալ չքնաղ հոգիներ զորս Աստուած ճոխաբար օժտել է գեղեցկութեան բնազդմամբ. Հոգիներու երկնային բնագաւառին մէջ յաւիտենական եւ բացարձակ գեղեցկին լուսոմն ողողուն ու շլացեալ՝ կու գան յաշխարհ, կ'երթան խուժանին մէջէն յափշտակեալ, յերկինս ճակատ շողապսակ, ակնկառոյց յանտես ինչ՝ յիտէականն, եւ կը ծռին մերթ ընդ մերթ, եւ մի գրոց, մի վրձին, մի կտնտոց կամ մի գրիչ՝ զոր ունին ի մատունսն՝ կը մարմնացնէ յանկարծ իւրեանց տեսիլներն, եւ դարք կու գան սխրանալ այդ երկի առջեւ, եւ մի ճառագայթումն որ կը բղխի ի նմանէ նոր լոյս մի կը սփռէ մարդկութեան վերայ։ Բանաստեղծն, ճարտարն մի վսեմ մարդ է. Աստուած նորա ճակտի ետեւ վառել է հանճարոյ ջահն, եւ սրտին մէջ դրել է ազնիւ զգացումներու կայծակըն. իւր հոգւոյն ճարակն է գեղեցիկն, եւ գեղեցկին կարծես մի յատուկ զգայարանքն ունի։

Այդ քուրմն իտէականին. ո՞վ գիտէ իւրեան պէս ընթեռնուլ իեռօղլիֆներն որոց տակ գաղափարն կը ծածկի ի բնութեան։ Ուստի ուրկէ ռամիկն կ'անցնի անտարբեր կը տեսնեմք զնա կանգ առած ընդ երկար, յառած մտախոհ եւ զմայլուն մի խոտի շիւղոյ վերայ կամ մի ցօղոյ կաթլի որ պերկին կը ցոլացնէ. խորհուրդն որ կայ յամենայնի՝ մերկ է իւր աչաց առջեւ որ կը շողան մի նորանշան հրով. կը հասկանայ ամէն ինչ որ կ'ասեն գունոյ, ձայնի, ձեւոյ լեզուով առարկայք եւ էք առարկայք եւ էք արարչութեան. — ճառագայթներն երկնից, մրմունջք անտառին, ծաղկունք դաշտին եւ ծփանք ծովուն։ Ուստի. երբ ամբոխին մէջէն կ'անցնի, ծանր, կը կարծուի թէ ոչ ումեք կը նայի, բայց մի դիտող է նա՝ ոյր ակնարկ արագ ըմբռնումն մի ունի, եւ դէմքեր չեն զոր կը տեսնէ, այլ հոգիներ։ Յաճախ դուրս կ'ելնէ ընկերութենէն եւ ներկայէն, կը խորամխի այն ամայութեանց մէջ որք կը կոչուին բնութիւն, շիրմաստան, անցեալ, եւ որք աւելի բազմամբոխ ընկերութիւններ են իւր համար. եւ կը թափառի պատմութեան մոխիրներուն մէջ, մահարձանաց շուրջն կամ թաւուտներու խորն, եւ այդ ստուերաց մէջէն խոհրդաւոր ճառագայթներու անցն կը նշմարէ։ Մերթ կը սիրէ նստիլ Ովկէանու եզրն կամ անդնդոց, եւ կամ կը մագլէ կ'ելնէ յանմատոյց ինչ բարձրութիւն ուր միակ է արծուոյն, ամպերուն ..... եւ անհունին հետ։ Ի՞նչ կ'ընէ նա. — կը խոկայ, կ'երազէ, կ'ընթեռնու, կը հասկանայ, կ'զգածի կը խօսակցի աներեւոյթ ոգիներու հետ՝ զի երբեմն կը շարժին իւր շրթունք կամ Աստուծոյ հետ՝ զի իւր իւր աչկունք կը յափշտակուին երկնուղերձ. գեղեցիկն, վսեմն կը ճարակի, առ այսպէս իմն ասել. կ'արբենայ լուսով, բուրով, գունով, երգով, գեղեցկին սը-

պաւորութիւններով կը լնու հոգին, Նոր եւ աղնուա-կան խորհրդոց եւ զգացմանց հեղեղ մի կ'ողողէ իւր միտքն ու սիրտն, եւ կամ իւր յղացմունք կը մարմ-նանան իւր երեւակայութեան մէջ ձեւերու տակ զոր գտաւ ի բնութեան կարող թարգմանելոյ տեսիլն զոր ունէր ի մտի։ Մի հզօր եւ աստուածային ոգի, զոր ներշնչութիւն կ'անուանեն, որ մարգարէից համար Ե-հովայի շունչն էր եւ Յոյն պուէտից համար Ապողոնի ազդումն, զոր կ'զգան յինքեանս ամէն ճշմարիտ բա-նաստեղծք, եւ որ լիօք սէրն է գեղեցկին, սէրն, ամէն արգասաւորութեան այն խորհրդաւոր պատ-ճառն, այսինքն դարձեալ Աստուծոյ ոգին, կը յու-զէ, կը ջեռնու ի նմա եւ կ'ստիպէ զնա արտա-յայտել տեսիլներն որք իւր երեւակայութեան մէջ կը նկարուին, զգացումներն որովք կը թրթռայ իւր սիրտն, քնար կենդանի։ Եւ յայնժամ ինքն եւս կը պատկերէ, կ'երգէ, կը խօսի, — կ'ստեղծէ. այո, զի հանճարն մի զօրութիւն է ստեղծիչ, եւ իւր գործն մի աւելի կատարեալ եւ աւելի անխառն բացատրու-թիւնն է գեղեցկին, գաղափարականին յստակագոյն ձեւացումն. զի այս է սահման եւ պաշտօն արուես-տին (եւ արուեստ ասելով կը հասկանամք գեղարուեստն) — գաղափարական գեղեցկին բացատրութիւնն, զտե-լով զայն անկատար կամ երկրորդական ձեւերէ, եւ տալով նմա գծերու եւ գոյներու մի այնպիսի ամ-բողջութիւն, որ գաղափարն ներկայացնէ իւր զուտ գեղեցկութեան մէջ, — որչափ հնար է, զի ձեւն միշտ քօղ մի է եւ քօղն կը թագուցանէ. աննիւթ հոգեաց աշխարհին մէջ միայն պիտի տրուի մեզ նկա-տել զբացարձակ գեղեցիկն իւր մերկութեան մէջ անծածկոյթ։

**Ռ. Յ. Պէրպէրեան** (Գեղեցիկն եւ Գեղարուեստ)

## Ե. ԱՆՍԱՀՄԱՆ ԺԱՄԱՆԱԿ ՈՐՈՒՆ ՉԱՓՆ Է ԻՄԱՑԱԿԱՆՈՒԹԻՒՆ

*Անհուն էին առջեւ անհամար տարիներ, բիւր դարեր իբր րոպէ մի, անցեալ, ներկայ եւ ապառնի իբր հայլի կ'ընծային. մինակ շլամիտ մարդս կ'կարօտի քայլել եւ տեսնել ժամացոյց ի ձեռին եւ ակնոց աչքին։ Երանի՛ թէ գոնէ այս զգուշութեամբ ուղիղ քայլէր։ Տակաւին կ'գտնուին շատ մարդիկ եւ ազինք որոնք տարիներ, դարեր անցուցած են այլ դեռ տղայ են, որոց անցեալը մութ ու աղէտալի, ներկան վիրաւ, ապագան անէութիւն է։ Ասոնք մարդկութեան հրեշներն են որ իրենց բնական ուղեցոյցէն զուրկ են եւ անդունդէ անդունդ կ'գլորին մինչեւ որ անհետանան կամ կատարեալ անասնային կենաց աստիճանին հասնին։*

*Այո՛, մարդիկ եւ ազինք շուքի պէս կ'սահին կ'անցնին եւ իրենց էութենէն լոկ ափ մի հող կըթողուն երբ հոգեկան կեանքէն, երկնային շունչէն, որ է միայն յարատեւ եւ անմահ, զուրկ են։ Սակայն մարդկային հոգեշունչ մասը, սակայն ժամանակն անյողդողդ եւ անսասան են։ Ցաւիտենականութեան նկատմամբ ի՞նչ է տարի մը, դար մը. ո՛չ ինչ. աննշան եւ անհեթեթ չափ մը, տիեզերական անդուլ շարժումն իբր ճանկով կեցընելու փորձ մը։ Փորձ մը, որ անզօր է դարձեալ մարդկային տկարութեան ակներեւ ցոյց տալ այն անդունդն որ էր եւ կայ պատմական ժամանակէն առաջ եւ ինչ որ պիտի լինի մեզ աներեւոյթ աշխարհի մը մէջ։*

*Բայց ի՞նչ կ'ըսեմ, նոյն իսկ արդի պատմութիւնն իր ժամանակագրական ձեւը կ'փոխէ. պատմութիւնն որ դարաւոր սերնդոց այլեւայլ հանգամանաց համբարը կ'աւանդէ մեզ, որ մեր տկարութեան նեցուկը պիտի լինի եւ մեր կենաց իմացական շրջանը պիտի*

ընդլայնէ, պատմութիւնը կ՚ըսկսի ոչ միայն դէպք եւ անձնականութիւն չճանչել, այլեւ ժամ ամիս, տարի, թէեւ այժմ մամուլն ամենաչնչին իրողութիւն մը իսկոյն պատահած ժամին եւ վայրկենին կ՚արձանագրէ։

Ի՞նչ է այս զարմանալի յեղափոխութեան պատճառը. — Մարդկային ազգին իմացականութեան անընդհատ շարժումը դէպ յառաջ, իր անմահ ճակատագրին, յաւիտենական ճշմարտութեան, որ է անբաժան, դիմելու իղձն ու շարժումը, հոգեկան եւ մտային անսովոր լուսաւորութիւններէ նոր թուական, նոր ժամանակ փնտռելու հակումն, որով կ՚բացատրուի, չէ թէ այս ինչ կամ այն ինչ դարու, այլ անեզր ժամանակին ոգւոյն հետեւելու դրութեան իմաստը։

Բայց միտքս ժամանակս գերբնապէս լուծել չէ. գերբնականութեան մթնոլորտին մէջ թռելու սովորութիւն չունիմ. շատ իմաստասէրներ ընկած են այն եթերական գագաթէն, եւ գետնի վրայ եւս սկսեր են երազել եւ վհուկի տեղ անցնիլ։ Այլ կ՚ուզեմ պարզօրէն ըսել որ պատմութիւնը կը սխալի երբ արդէն պատահած կամ պատահելիք որ եւ է բան իր ժամանակին յատուկ կարծելով՝ նոյն ժամանակին թըւականովը կ՚յիշէ։ Օրինակի համար. կարդա՛ Պղատոն, քննէ՛ Սոկրատէս, Պաքօն ու Քանդ։ Անշուշտ չես հետաքրքիր իսկոյն իմանալ թէ ասոնք երբ ծնան եւ երբ մեռան, այլ կ՚զմայլիս որ ժամանակիս հանճարներն ու հոգիներն են եւ անոնց անմահական ներգործութիւնը միտքդ եւ հոգիդ կ՚զգայ, եթէ արդէն զգալու ընդունակ են։

Հետեւապէս կան հին մարդիկ որ ներկային, ապագային մէջ, յաւիտեան կ՚ապրին, ասոնք տիեզերական սեպհականութիւն են. ծննդեան եւ վախճանման վկայագիր չունին։ կան նոր մարդիկ որ դիակնե-

րու հետ կ'ապրին, ասոնք գիշերասէր կենդանեաց ցեղէն են։

**Մ. Մամուրեան** (Վ.rojr). Հայկական նամականի

## Դ. ՅԱՌԱՋԱԴԻՄՈՒԹԻՒՆ ԵՒ ՄԱՄՈՒԼ

*Որոնք որ քիչ շատ կ'ուսումնասիրեն մարդկային մըտքի զարգացման պատմութիւնը, կը պարտաւորին հաստատելու թէ յառաջդիմութեան ոգին փրկաւէտ եւ անդիմադրելի շարժում մը կը տայ ընկերական աշխարհին։*

*Այս ոգին դարերէ, նա մանաւանդ տասնութերորդ դարուն վերջերէն եւ տասնեւիններորդին սկիզբներէն ի վեր կը ծնի այնպիսի քաղաքական եւ ընկերական երեւոյթներ որք ժողովրդոց անցեալը եւ ներկայն քըննող, դատող եւ աւելի բարեկարգ եւ հանգիստ ապագայի մը պայմանները ուրուագրող իմաստասէրներուն ուշադրութիւնը կը գրաւեն։*

*Այս զարմանալի երեւոյթներուն գրեթէ առաջինն է բնութեան, տեսանելի աշխարհի, կեանքի եւ իրականութեան քննութենէն եւ ուսումնասիրութենէն արտադրուող նոր գաղափարներու առջեւ մարդկային հին մտքին յամրաբար այլ անընդհատ նահանջելն եւ նոր մտքին կազմուիլն ու ծագիլը, գաղափարներ որք գիտութեան եւ փիլիսոփայութեան, ինչպէս նաեւ ընկերային վերանորոգմանց համար նորանոր հորիզոններ կը բանան։*

*Թէ՛ քաղաքական, թէ՛ ընկերական եւ թէ՛ գրական բարեշրջումներու ոգին ճիշդ այս երեւոյթով կ'ըմբռնուի եւ կը մեկնուի։*

*Այս մեծ փոփոխութիւնը, որ ժողովրդոց բարօրութեան եւ լուսաւոր ճակատագրի մը նկատմամբ անհաշուելի հետեւանք ունի, անշուշտ պէտք է վերագ-*

թել այն ուղիղ գաղափարաց եւ այն ազնիւ զգացմանց, զոր կրօնական, քաղաքական եւ գրական համոզմանց տէր միտքեր եւ սիրտեր քաղաքակիրթ ընկերութեանց ծագումէն ի վեր առ ոչինչ գրելով հալածանքը, զոհողութիւնը, մահը իսկ, համարձակած են յայտնելու իրենց երկրին ընկերական հիմնադրութեանց, մարդերուն եւ իրերուն վրայ, եւ որք թելադրուած են մարդուս նիւթական եւ բարոյական շահերը բանաքարող տխուր իրողութեանց տեսարանէն։

Մարդկային նոր միտքին կազմուելէն կ'արտադրի պարտք մ'որ է ցոյց տալ մինչեւ հիմա իբր ճշմարիտ եւ իբր օգտակար ընդունուած գաղափարները եւ իրերը, սովորութիւնները եւ օրէնքները, մարդուս վարքը եւ բարքը վերաքննելու, սրբագրելու եւ վերանորոգելու կարեւորութիւնը։

Հին միտքը, կամ լաւ եւս է ըսել, աւելորդապաշտութեանց, նախապաշարմանց, սին եւ անհեթեթ տեսիլներու աւանդարանն առանց քննութեան, կրաւոր հնազանդութեամբ, դիակի յատուկ համակերպութեամբ կ'ընդունէր աստուածպետութիւնը, աւատական բռնակալութիւնը, միապետական իշխանութեան երկնային իրաւունքէ բղխումը, գահին եւ խորանին բացարձակ հրամանատալութիւնը, սուտ գիտութիւնը, ամուլ գրականութիւնը եւ այն ամեն օրինաւոր սեպուած հիմնադրութիւնները զոր նենգամիտ կամ պարագաներէ ստիպուած օրէնսդիրներ աշխարհակալութեան եւ ժառանգական իրաւունքի վրայ կռթնող զօրաւորներու աջակցութեամբ հաստատած են նախապատմական ժամանակներէ ի վեր։

Նոր միտքն այս ամեն հնաւանդ իրերուն խուզարկու աչքով կը նայի, պետական եւ եկեղեցական գերիշխանութեանց արարքը եւ ընթացքը զննութեան

մաղէն կ'անցունէ, հին ու փուտ ստութիւնները կը հերքէ, արդարը եւ ճշմարիտը, օգտակարը եւ գեղեցիկը կը հրապարակէ իբր անհրաժեշտ պիտոյք մարդկային ցեղի նիւթական եւ բարոյական կենաց, եւ ամենուրեք մարդուս գործողութեանց գովելի եւ ստուգապէս օգտակար շարժառիթներ ցոյց տալով՝ ընկերային նոր աշխարհի մը հիմերը դնելու կը նկրտի։

Այս ջանադրութիւններն արդէն ունեցան գործնական եւ մեծամեծ արդիւնք որմէ մարդկութիւնն բաւական է օգտիլ, մասնաւորապէս գաղղիական յեղաշրջումէն ի վեր։

Երկրային եւ երկնային ամեն տեսակ իշխանութիւններ մարդուս մարմինը եւ հոգին առանց համարատուութեան եւ անկախ կառավարելու սովորութիւնը կ'ստիպուին հետզհետէ մոռնալու։ Կրթութեան եւ դաստիարակութեան ազդեցութեամբ կազմուած այժմեայ միտքերն ու սիրտերը կառավարուելու պարտաւորութեան հետ նաեւ կառավարելու իրաւունքը եւ կարողութիւնը կ'ստանան, եւ ընկերութեան ստորնագոյն խաւերէն ելնող անշուք անհատը լուսաւորութեան եւ յառաջդիմութեան շնորհիւ կրնայ ոչ միայն իշխանութեան մինչեւ գագաթը մատչիլ եւ կառավարողի պաշտօն վարել, այլ նաեւ հոն գտնուողներուն վրայ հսկել, հաշիւ պահանջել ու միանգամայն իր ժամանակի մարդերուն եւ իրերուն վրայ կարծիքը յայտնել՝ չարը դատապարտելով, բարին ջատագովելով, մարդկային մթութիւնները փարատելով եւ ամենուրեք լոյս սփռելով։

Արդ՝ այս լոյսը սփռելու, երկնային եւ երկրային խնդիրներու, բարոյական եւ նիւթական շահերու, մարդկային կեանքին ամեն գործերուն մէջ ճշմարտութիւնը ստութեան, արդարութիւնը անիրաւութեան, գեղե-

ցիկը ադեղին դէմ պաշտպանելու, լաւ գաղափարաց, լաւ զգացմանց հունտերը միտքերու եւ սիրտերու մէջ սերմանելու եւ ծլելու, մէն մի յառաջդիմական քայլէն անմիջապէս ետք ուրիշ քայլ մը հարկը զգացնելով ագէտ եւ թշուառ դասերու լուսաւորութեան եւ բարօրութեան նպաստելու համար մշակուած եւ յղկուած միտքն անընկճելի աջակից մը գտած է։

Այս աջակիցն է մամուլը։

Ստուգիւ տիտանեան աջակից որ ընկերական Պրիարէի մը դերը կը խաղայ, եւ անարդարութեան սահման մը դնելով՝ անոր քմահաճութեանց հոսանքը կը զսպէ, եւ ժողովրդոց համար հրապարակելով նոր հոգի մը՝ անոնց անկապտելի իրաւունքը կը նուիրագործէ։

Լուսաւորութեան ծաւալման շնորհիւ այս իրաւունքները, այս շահերն ամենուրեք մի եւ նոյն հանգամանքը, մի եւ նոյն կարեւորութիւնը ստանալու եւ ընդարձակուելու կը միտին իւր անհրաժեշտ հետեւանք մարդուս անհատական զարգացման, եւ քանի որ հրապարակային թերթերու պարտաւորութիւնն է այս շահերուն վրայ հսկել, ամեն երկիրներու, աւելի կամ նուազ զարգացած ազգերու մէջ այս պարտաւորութեան գրեթէ մի եւ նոյն պայմաններով գործադրուիլըն անհրաժեշտ է։

Կան երկիրներ, ինչպէս Ամերիկա եւ Եւրոպայի մեծագոյն մասն, ուր լրագիրները տէրութեան մէջ տէրութիւն մը կազմած ըլլալու չափ զօրութիւն ունին, եւ՝ իբր այն՝ իրենց այս բարոյական ազդեցութիւնը կը տարածեն քաղաքական իշխանութեան ամեն ճիւղերուն վրայ։ Ներհուն եւ զգայուն գլուխներ մարդուս բարոյական եւ նիւթական ամեն շահերը եւ գործերը հանրական օգտակարութեան տեսութեամբ կը նկատեն, եւ այս մասին իրենց գրիչը՝ գոգցես սու-

րի սպառնական յատկութիւնը ստանալով՝ շատ պարագաներու մէջ մտատանջութիւն եւ անհանգստութիւն կը տայ վարչական մարմիններու, ոստիկան մարմիններու, եւ Լուի Հնգետասաներորդը կը հարկադրէ թնդանօթին գոռիւնը գրչին ճռինչէն նախամեծար համարելու։

Սուր գրիչներու ճռինչը, յառաջադէմ ազգերու հըրապարակային թերթերն այս զօրութեան տէր եղած են ճշմարտապէս ըմբռնուած հրատարակութեան եւ վիճաբանութեան շնորհիւ։

Օրէնսդիր ժողովներու վիճաբանութիւնները, վարչական մարմիններու տնօրինութիւնները, գործադիր իշխանութեան որոշումները, հասարակաց կրթութեան պաշտօնատան ծրագիրները, դատարաններու վէճերն ու վճիռները, կրօնական իշխանութեան արարքն ու ընթացքը, գիտութեանց եւ արհեստից, գրականութեան, ճարտարութեանց եւ գեղարուեստից վերաբերող գիւտերն եւ իրողութիւնները, ներքին եւ արտաքին քաղաքականութեան նկատմամբ կարեւորութիւն ունեցող ամեն պատահարներն եւ լուրերը կանոնաւորապէս, արագապէս, ուշադրութեամբ եւ դըրամական զոհողութեամբ կը հրատարակուին օրական կամ շաբաթական կամ ամսական լրագիրներու, հանդէսներու, հաւաքածոյներու եւ ուրիշ պարբերական թերթերու մէջ։

Խմբագիրները, գրագէտներն իրենց գրիչը այս ամեն բարոյական շահերու պաշտպանութեան յատկացնելը բաւ չեն համարիր. հանրական օգտակարութեան տեսութեամբ ըմբռնուած նիւթական շահերը նոյնպէս ի նկատի կ'առնուն, եւ՝ յանուն հասարակաց կարծեաց եւ զգացմանց՝ կը պահանջեն որ տուրքը տրամաբաշխական արդարութեան սկիզբին համեմատ

բաշխուի։ Տէրութեան ելմտացոյցն անկեղծ եւ մեկին
կերպով պատրաստուի, դրամագլուխներու շրջաբե-
րութիւնը տնտեսագիտական օրինաց համեմատ կանո-
նաւորուի, բանուորին վարձքին քանակութիւնն իր
աշխատութենէն արտադրուած արգեանց համեմա-
տութեամբ սահմանուի, աղքատութեան եւ մուրա-
ցութեան դարման տարուի, անգործ կիներու եւ պա-
տանիներու զբաղում պատրաստուի, ճամբորդներու
եւ ապրանքի փոխադրութիւնն աւելի խնայողական
դրութեան մը վերածուի, դատական իշխանութեանց
դրամական պահանջումներուն խստութիւնը մեղմուի,
խառնաշփոթ վարչութեան մը շարժական գործիները
պարզ դրութեամբ մը վերակազմուին, ծայրայեղ կեդ-
րոնացման մ'անպատեհութիւններն եւ աստիճանական
ապակեդրոնացման մ'առաւելութիւններն ըմբռնուին,
գիւղերու մէջ նախակրթական դպրոցները բազմա-
պատկին, երկրագործական դպրոցներ, արուեստա-
նոցներ հիմնուին, ընկեցիկներու եւ պիտակներու ներ-
կայն եւ ապագայն ապահովուին, աղքատներուն, հի-
ւանդներուն, խելագարներուն խնամք տարուի, ճան-
բաներու եւ փողոցներու կանոնաւորութիւնն եւ մաք-
րութիւնը հսկողութեան ներքեւ առնուին, երկա-
թուղիներն երկրին ամեն կողմը տարածուին եւ իրա-
րու հետ հաղորդակցութիւն ունենան իբր մի եւ նոյն
մարմինի կենսատու երակները, նաւահանգիստները
բարւոք վիճակի մէջ պահուին, վերջապէս աշխատու-
թեան, կրթութեան եւ բարեկեցութեան սահմաննե-
րըն ամեն տեղ ընդարձակուին։ Այս ամենը պահան-
ջելով չեն մոռնար կրօնական եւ քաղաքական նախա-
պաշարումները եւ վնասակար աւանդութիւնները հա-
լածել, տգիտութեան դէմ կռուիլ, առաքինութիւնը
գգուելու ատեն մոլութիւնը ապտակել, երկդիմու-

թիւնը նշաւակել, զեղծումները ջնջելու աշխատիլ՝ անձնական կռիւներէ կարելի եղածին չափ զգուշանալով, իրենց խմբագրական կամ գրագիտական արժանապատուութիւնը առաւթուր չկոխելով, համոզելու կամ համոզուելու անկեղծ դիտաւորութեամբ եւ ազատ վիճաբանութեամբ, մարդկային գործ մը քննելու առեն՝ զայն արդարացնող դիտաւորութիւնը չմոռնալով, եւ հրողութիւն մը դատելու ժամանակ զայն արտադրող պարագաները մեկուսի չթողլով։

**Գր. Չիլինկիրեան. Ուղեւոր. Ի Կ. Պոլիս (Նամակ Ե.)**

## 8. ԱՍՏՈՒԱԾ, ԼՈՅՍ, ԱԶԳ ԵՒ ՀԱՅՐԵՆԻՔ

**ԱՍՏՈՒԱԾ.** *Ահա մի բառ զոր ոչ ոք եւ ոչինչ կրնան ջնջել մարդկային սիրտէն, մի բառ որ, աշխարհի առաջին օրէն ի վեր, ամեն մարդկային ճակատ խոնարհեցուցած է իր առջեւ։ Անհնար է ուրանալ. քանի որ գործ կայ, գործաւոր ալ կայ։ Անհնար է վարանիլ. կա՞յ միտ. — ուրեմն կայ ճշմարտութիւն. կա՞յ սիրտ. — ուրեմն կայ հաւատ. կա՞յ հոգի. — ուրեմն կայ Աստուած։*

**ԼՈՅՍ.** *Ահա մի բառ որ քաղաքակրթութիւն կը նշանակէ։ Հին իմաստասէրներն իրաւունք ունէին երբ ազնուութիւնն խաւար կ'անուանէին, գիտութիւնն լոյս։ ինչ որ ճշմարիտ է, լոյս է. ինչ որ սուտ է, խաւար է։ Խաւարն ահ կ'ազդէ, ազնուութիւնն կը նախապաշարէ։ Մութին մէջ գաճաճն սկայ կը թուի եւ խլուրդը ճիւաղ. ազէտին համար ձիւնն պատուհաս է եւ անձրեւն հրաշ. Խաւարն վայրենիներ կ'արտադրէ, լոյսն քաղաքացիներ։*

**ԱԶԳ.** *Ահա մի բառ զոր ներելի չէ արհամարհել։ Զուր այս գաղափարի դէմ կը մաքառի մի եսական կամ ճապաղ իմաստասիրութիւն. ազգային զգացումն բնական է եւ օգտաւէտ։ Օգտաւէտ, զի շատ մեծագործութիւններ, շատ առաջդիմութիւններ կը պատ-*

ճառէ։ Բնական, զի մարդ, իւր ընտանիքէ յետոյ, կը սիրէ այն ընտանիքներ որք իւր ընտանիքի միջոցերն եւ յոյսերն ունին, իւր ընտանիքի լեզուն կը խօսին, իւր ընտանիքի Աստուածն կը պաշտեն. ի՞նչ է մի ազգ, թէ ոչ մի ամբողջութիւն համանման գերդաստաններու։ Ո՞վ կրնայ ըսել թէ ազգասիրութիւնն մարդասիրութիւն չէ. միթէ ամէն իւր ազգ մարդկային սեռի մի մասն չէ՞ ներկայացուներ։ Ընտանիք, ազգ, մարդկութիւն, արդար սանդուղ, անխզելի շղթայ։

ՀԱՅՐԵՆԻՔ. Ահա մի բառ որ կը թրթռացունէ ամէն զգայուն սիրտ։ Թող այս գաղափարի առջեւ լռեն անձնասէր ձկտումներ եւ անմարմին վերացումներ, զի վսեմ մարդեր կը ստեղծէ նա, վսեմ խորհուրդներ կը ներշնչէ եւ վսեմ գործերու կ՚առաջնորդէ։ Իսկ թէ բնական է այս զգացում, անասուններուն հարցէք զայն, ոչ ոք կրնայ ասել թէ մի «թիւր դաստիարակութիւն» ով նախապաշարուած լինին նոքա։ Հարցէք անասուններու, եւ Ալէն Շառգիէ պիտի պատասխանէ ձեզ։ Փորձեցէք քանդել մի բոյն, փորձեցէք լուլել մի որջ. արծիւն իւր մագիլ պիտի ցցուէ իսկոյն, առիւծն իւր ճիրան. մին իւր կտուցով «Հայրենիք» պիտի ճչէ, միւսն իւր երախով «Հայրենի՛ք» պիտի մռնչէ։ Տուն, հայրենիք, երկիր. ահա ինչ կարգով կը սիրէ մարդ իւր բնակավայր։

**Մ. Չերազ** (Ազգային դաստիարակութիւն)

## Թ. ԳԻՇԵՐ

*Խաղաղական ժամ պարապոյ էր անդոր,*
*Եւ տիեզերք պատեալ ի քօղ սեւաթոյր.*
*Բնութիւնն համայն անկեալ ի խոր ի թըմբիր*
*Վաստակաբեկ հանգչէր ի քուն եւ երկիր.*
*Համատարած սեւադէմ մութն ահաւոր*

Բազմէր իշխան յաղջամըղջին յիւր աթոռ,
Խեռայր ընդ լոյս եւ ընդ արփին լուսավառ,
Կամէր զի սղառ լիցի երկիր իւր աւար։
Մակաղէին խաշինք յարօտն ի դալար,
Եւ օդականք առեալ ի յոստս ըզդադր.
Լռքեալ լերինք, լռքեալ եւ դաշտք ամայի,
Միայնութիւն բնակէր միայն ի յերկրի.
Փունջք խուռներամ ծաղկան վարդից կոտորակ,
Մարգարտաշար լըցեալ շաղով կենսունակ,
Ի սիւք հեզիկ ծածանէին վէտ ի վէտ,
Բուրումն անոյշ ծաւալանայր խընկաւէտ։
Գիշերախօս անդուստ եւ-այն երգեցիկ
Եղանակէր գեղգեղ ի յիւր դայլայլիկ.
Նա միայնակ արարածոց յանդիման
Ի լռութեան ժամու կացեալ մեզ թարգման,
Օրհնաբանեալ հաստչին ըզվեհ սքանչելիս,
Ցերկինս նըմա վերառաքէր դըրուատիս,
Ո՛վ նազելի թըռչնիկ ճարտար երաժիշտ,
Քոյդ երգ սիրոյ դիւրիչ ոգւոյ բազմավիշտ.
Ո՛վ ամոքիչ սըրտից զեփիւռ ըղձական,
Մինչդեռ զերկիր պատեալ է քօղ սըխրական,
Եւ բընութիւն համայն սքօղեալ ի մըթար,
Ո՛հ, դուք միայն, դուք աշխարհիս մըխիթար.
Սակայն երկին շողայր վըսեմ վառ ի վառ,
Ջահազգեստեալ եթերաճեմն էր կամար.
Արծաթափայլ դըշխոյն ի գահ բոցակէզ
Ճեմէր դաշտին լայնածաւալ յասպարէզ.
Անդ պաղպաջուն հոյլք գընդից շուրջ պարաւոր,
Բոլորելով ակումբ ի կարգ գեղաւոր,
Ոսկեճաճանչ ակնապարար ի զարդու
Պատուասիրեն ըզնա շըքեղ ի սպասու.
Ո՛հ, երկնաճեմ աստղունք ի փայլ լուսազգեաց,

*Դուք ճառագայթք աստուածային վեհ փառաց,*
*Մինչդեռ ի խոր նընջեն ի քուն տիեզերք,*
*Լուռ են երկինք երկիր եւ ծով եւ այերք,*
*Դուք ի գովեստ անցեալ վեհին ի հանդէս,*
*Կապուտագեղ ընդ սըրարշաւն ասպարէզ,*
*Մըշտամըրմունջ երկնից քընարք բազմաղեայ*
*Երգաբանէք զարքայն յաւէժ Ողիմպեայ.*
*Ո՜հ, ես ի թաւ յայս դարեւանդ հովասուն,*
*Ուր ի ծործորս խաղայ վըտակ կարկաջուն,*
*Ուր ի համբոյր ըզծաղկանց բոյլըս քընքուշ,*
*Շուրջ թեւածեալ զըգուէ զեփիւռ փաղաքուշ,*
*Խորհըրդազգաց առեալ ըզնիստ ես աստէն,*
*Տէր, ամայի կացեալ երկրիս համօրէն,*
*Ի ձեզ աստղունք ի ձեզ յառեալ զաչս ի վեր,*
*Ի հոգեզուարճ թըմբիր պըշնում ընդ եթեր.*
*Այլ դուք մարմինք արդեօք իցէք օդապարք,*
*Եթէ զուարթնոց լուսեղինաց հուլից պարք.*
*Աստղունք աստղունք, մինչ ի գիշեր զովագին,*
*Նըշոյլք ի ձէնջ կաթեն ի շաղ ցօղագին,*
*Յարշաւասոյր լուսաշաւիղ ձեր ի ճեմ*
*Ի ձեզ զանմահ ծընունդս երկրի նըկատեմ.*
*Ո՛վ իմ Հայոց չըքնաղ երկիր դրախտավայր,*
*Տես զի որդւոցըդ դիւցազանց վեհից պար*
*Երկնապարիկ յեթերս աստեղք բազմահոյլ,*
*Ոսկեծըղի փայլեն յաւէժ ի նըշոյլ։*

**Մ. Պէշիկթաշլեան**

## **10.** ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆ ԵՒ ՅԱՌԱՋԱԴԻՄՈՒԹԻՒՆ

*Աղքատութիւնն ու տգիտութիւնը մահացու ախտեր են որ մարդկութիւնը կը մաշեցնեն. իսկ աշխատութիւնն եւ լոյսը յառաջ կը մղեն զայն՝ մեծ հանդիսացնելով։ Անհատական գործողութեանց լուրջ եւ*

ւարատեւ ամբողջութիւնն ազգաց կեանքը կը կազմէ. Հետեւապէս որ եւ է աշխատութեան տուրք մերժել՝ նոյն իսկ ամենափոքրիկ մաս մի, հիւլէ մի, գոյութիւն մ'է ի վնաս այդ ընդհանուր յամրաքայլ գործողութեան, ազգաց կացութեան նկատմամբ ոճիր մ'է։

Կեանք՝ կը նշանակէ մտաւորական եւ բարոյական կարողութեանց կիրառութիւն։ Ո՞վ արդեօք իրաւունք ունի անշարժութեան, կորստեան, մահուան դատապարտել ինչ որ նախասահմանուած է գործելու, բեղմնաւորելու եւ տեւելու։ Բարոյական մարդասպանութիւն մ'է այդ, զի մէն մի մարդ պատասխանատու է իւր անձին, խղճին եւ ընկերութեան։ Ոչ ուրեք այնչափ գործելիք կայ որչափ այն ազգին մէջ որ իւր խաւարապատ անցեալը կ'ուզէ թօթափել՝ մեծ ազգաց լուսաւոր կեանքով ապրելու փափաքելով. զի ամենայն ինչ քանդելու է վերաշինելու համար, եւ առաջին գործաւորներն իրենց աշխատութեան նահատակները կ'ըլլան, ու իրենք եւս փլատակ կը մնան դիզուած փլատակաց ներքեւ։ Քանդելու գործողութիւնը դժուարին է, իսկ վերաշինութեանն՝ եւս առաւել. զի անփորձութիւնը, հակառակութեան ոգին, խաւարը, մրցումն ի հանդէս կ'ելլան. եւ այդ հակառակ կրից ընդհանրումէն, գիշերուան եւ լուսոյ կռիւէն կը ծնանի խառնակութեան հրէշը, որով ինչ որ կ'սկսէր ծագիլ, բղխիլ, բարձրանալ, ապրիլ, կորստեան կը դատապարտէր, եւ հարկ կ'ըլլայ վերստին պարապիլ գործոյ մի շինութեան որ մասամբ յառաջացած էր, նոյն դժուարութեանց ենթարկուելով, նոյն վտանգաց, նոյն կռիւներու, այն ձեռնարկին շարունակութիւնը ուրիշ ձեռաց յանձնելու հարկ կ'ըլլայ, ինչպէս եւ յարատեւութեամբ ու յուսահատ մրցմամբ յաղթանակելու պաշտօնը։

Մէն մի սերնդեան պարտքն է յաջորդ սերնդեան յառաջադէմ աշխատութիւն մի թողուլ. այո՛, նուիրական պարտքն է յառաջադիմութեան քայլ մ'առնել տալ։ Վա՛յ այն սերնդեան որ թեւերը կուրծքին վրայ կապած կը նայի անգործ եւ «ոչի՛նչ» կը պատասխանէ ապագային՝ երբ սա իր ժամանակին գործածութեան համարը կը պահանջէ։ Այդ մեղկ սերնդեան ծոյլ կացութիւնը ժամանակին վրայ գողութիւն մ'է, յառաջադիմութեան վրայ յափշտակութիւն մ'է։ Շատ իսկ կայ գործելիք։ Անցելոյն աւերները աւլելու է, գործադրուածը՝ հաստատելու եւ կատարելիքը ի գլուխ հանելու. ժամանակը սուղ է. մենք վերջին հրաւիրեալներն ենք ի խնջոյս լուսաւորութեան, հարկ է որ մեր տեղերը պատրաստենք եւ արժանավայել կերպիւ գրաւենք զանոնք։ Որչափ պաշտօնը մեծ ըլլայ՝ նոյն համեմատութեամբ եւս ըլլալու է անձնուիրութեանց եւ զոհողութեանց մեծութիւնը. հետեւապէս նոյնչափ դատապարտելի են անհոգութիւնն ու անիշխանութիւնը։

Ազգային յառաջադիմութեան խնդիրը վտանգի ենթարկուած է. ապագայ սերունդը կը մօտենայ. Նըզովք պիտի կարդայ եթէ դատարկ ձեռամբ ներկայանանք իրեն։ Պէտք չէ խրտչիլ դժուարութեանց առջեւ, այլ գործել եւ միշտ գործել, ու մարդկային սանդուղին մինչեւ վերջին բազրոտները, մինչեւ ռամկին (plebe) իջնալու է։

Ռամիկը նեխոտ ցնցոտիքն է որ գիշերը զխըշտեակ ունի իբրեւ անկողին, եւ ցերեկը՝ զանօթութիւնն իբրեւ ընկեր։ Ռամիկն այն գարշահոտ բազմութիւնն է որ հացի կը կարօտի, եւ որ իրարու վրայ կոթնած՝ գլուխը կը ցցուէ ուրախ մարդկութեան հանդէպ, իբրեւ մսահատ անհեթեթ ուրուական։ Եւ ոչ բնա-

կան կայծ մի կ՚ոգեւորէ զայն, զի մարդկութեան ըն-ւաստագոյն արտայայտութիւնն է։ Բայց եթէ կռիւ յեղափոխութիւն ծագի, այն ժամանակ կենդանի մըրուրը գազանաբար դուրս կը ցայտէ, եւ ընկերութեան վրայ կը տարածէ յուսահատութիւնը, լրբութիւնն, անասնութիւնը, սրտմտութիւնը, զորս անօթութիւնն եւ աղքատութիւնը դիզած եւ բարդած էին ժամանակներէ ի վեր։

Այդ ցնցմանց մէջ աշխատութիւնը մտցնելու է՝ անօթութեան վերջ տալով. այդ խաւարի բոյնին մէջ լոյս ծաւալելու է. այդ մարդկային հօտին մէջ հոգի մ՚արթնցնելու է իւր էութեան եւ կարողութեան գաղափարը տալով իրեն, բարոյական անշարժութեան գարշահոտութեամբն ապականեալ բազմութեան մըղում տալու է, յուզելու է, հո՛ն կեանք տարածելու է։ Ոչ ոք կ՚զբաղի կենաց այս թշուառ եւ անծանօթ մարտիրոսներով՝ որք կուգան, կը հիւծին, կ՚անցնին առանց եւ ոչ մէկու մ՚ուշադրութիւնը գրաւելու. տիղմն է այն որ կը սահի, կ՚երթայ, դիւրաջինջ սեւ հետք մի թողլով։

Գրեթէ ամէն բանով կ՚զբաղինք, ամէն բանի վրայ նայուածք մի կ՚արձակենք. բայց ո՞վ արիութիւնն ունի առանց զզուանաց, մինչեւ գարշաբոյր ռամկին մօտենալու, ու ժանտահոտ քուրջերու ներքեւ տեսնելու փտիտ, հալեւմաշ մարմիններ, եւ անասնոյ ներքեւ եղբայր մի ճանչնալու։

Մա՛յտա, խոնարհեցուր աչքերդ մինչեւ խուժանին. անոր համար գործէ, անոր աշխատութիւն տո՛ւր, յուսոյ ճառագայթ մ՚եղիր, ձայնդ բարձրացուր, հասարակաց ուշադրութիւնը գրաւէ այն ժահաբոյր վայրերուն վրայ՝ ուր մարդկութիւնն անօգնական կը լըլկի, առանց հացի եւ առանց հրոյ կը մեռնի։ Անոնց

համար ընկերութիւն մի հաստատէ, հաւաքէ անոնց ապիկար զաւակներն՝ այն սեւ ծաղկունքն թշուառութեան որք՝ դարձեալ ՚ի՛ ըսեմ, կեանքէն կը ճանաչեն ցերեկը միայն անօթութիւնը, գիշերն՝ հողն անկողին եւ ձմեռը՝ ցուրտը։ Ապաստան մի հաստատեցէք անոնց համար։ Գոնէ դժբաղդութեան ժառանգորդները բնակարան մի ունենան որ ցերեկին պատառ մի հաց գտնեն, հրոյ կայծ մ՚իրենց սառնաբեկ մարմինները ջերմացընելու, եւ մտաւորական շող մ՚իրենց մտքերը լուսաւորելու, որ վերջապէս գթութեան ոգին գտնեն մարդկային ձեւին ներքեւ։ Այդ փոքրիկ էակները փոխանակ ցամքելու, հիւծելու եւ մեռնելու տառապանաց մէջ, փոխանակ իբրեւ ընկերային վէրք օր աւուր աճելու, եւ ապականելու մարդկային մթնոլորտը, զարգանան ընդհակառակն, աշխատին, մտածեն. փոխանակ խաւարին՝ լոյս ըլլան. Թող մահը կեանք արտադրէ։ Յայնժամ բոլոր այդ կենդանի զանգուածն որ ընկերութեան համար կորսուած կը համարուէր, զօրութեան նոր աղբիւր մի կը գոյացնէ, աշխատութիւնը կ՚աւելցնէ, բանականութիւնը կ՚աճեցնէ մտածելու, եւ հոգիներու թիւը կը բազմապատկէ զգալու, սիրելու, գթալու եւ ծառայելու համար։

Ջարն արմատախիլ ընելու է. ռամիկը չարն է որ կը բուսնի անընդհատ ապականակիր ջուրերու մէջ՝ թունաւոր շունչը ամենուրեք տարածելով։ Իջի՛ր ուրեմն մինչեւ հոն, եւ սփոփելով կը բժշկես, հիմնաւոր ախտը կը ջնջես։ Ոչ մէկ ախտ ինքնին կը բուժի նոյն պայմաններու մէջ մնալով. ընչոյ մի, հոգւոյ մի պէտք կայ դարմանը գտնելու համար։ Այդ շունչն, այդ հոգին եղիր, Մա՛յտա. ուրիշ շունչերու, ուրիշ հոգիներու միացիր, մաքրէ գարշահոտութիւնը, եւ կմախք մարդը՝ կենդանի մարդոյ վերածէ։

**ՏՆ. Տիւսար. Մայտա**

## 11. ՊԱՅՐՆ

Հէ՛գ մեծ Պայրընն, եթէ՝ հնարաւորմամբն անհնարաւորին՝ յաշխարհ գար այսօր վերստին, արդեօք պիտի գտնէ՞ր այն «անմարդաձայն եւ անկոխ անտառներն հեշտալի՛» զորս երգելով կնքեց Չայլդ-Հարօլտի քերթուածն հրաշալի։ Մարդն՝ աստուածային նոր հրամանաւ մը գոգցես՝ անհամեմատ կերպիւ «աճեցաւ եւ բազմացաւ» կէս դարու մէջ, բնակարանաց ու վարժարանաց ու գործարանաց փոխարկեց բոլոր այն կոյս անտառներն։ Ինչ որ կար երկրիս մակերեւոյթին վրայ, փոխուեցաւ կերպարանափոխուեցաւ. երկրիս արգանդին մէջ գտնուածն ալ, հեղուկ թէ՛ հաստատուն մարմին, փայլուն թէ՛ տոկուն հանքային, ա՛յն ալ արտաքս հանուեցաւ, գործեաց ներքեւէն ու գործարանաց մէջէն անցաւ, փոխուեցաւ ու ձեւափոխուեցաւ։ Տե՛ղ մը չը մնաց, ո՛ Պայրըն, ուր չը լսուի մեքենայից ճռնչիւնն. ու քա՛ն մը չը մնաց, որ չը կրէ մարդոյն ժպի՛րհ ձեռաց հետքն. Ալպիօնն, ուրկէ խո՛յս տուիր, ծովերն իր ծածանուտ քաղաքներով եւ ցամաքներն իր ձեռարհեստական ու գեղարուեստական գործերով ու գլուխ-գործոցներով կը ծածկէ. Յունաստանն, ոյր օգնութեան փութացիր, դիւցազամբք ու դիցարժան արդեամբք ծածկուած այն գերտպանծ Յունաստանն, ուրկէ բուրմունք ու նուագունք էր երբեմն յերկինս կը բարձրանային, այսօր կը ծածկուի ծխաշունչ գործարաններով ու սատանասո՛յլ շոգեկառքներով. եւ գերեզմանիդ շուրջ՝ ի Միսօլօնկի՝ գործեաց ու գործաւորաց աղաղակներով ահա կը խեղդուի բնութեան՝ զոր «շա՛տ սիրեցիր՝» ձայնն զմայլելի խանդաղատելի՛։ Հապա՛ ես, ո՛ Պայրըն, հա՛պա ես որ, ծնրադիր օր մը պատկերիդ առջեւ,

գեղատիպար ու գեղահանճար դո՛ւ բանաստեղծ գերագո՛յն, դառնահառաչ նուագացդ արձագանգ ըլլալ երդուեայ կե՛անքս ողջոյն, ես ըզքեզ ահա կը քննադատեմ՝ որպէս քննադատեցի Պօղ եւ Վիրգինեն. կամ մանաւանդ կ՚ուզեմ ես քննադատել զքեզ, եւ չեմ համարձակիր...: Այլ իմ ունկնդիրքս կ՚իմանան իմ դեդեւումս. եւ այս պատանիք՝ որք դեռ յոյս ունին — եւ յաւէտ ունենային —, Ալֆրէտ մը Միւսէի նման՝ անձնաւորեալ դո՛ւ Յուսահատութիւն՝ քեզ դէմ գանգատելով կը գանգատին, քեզ դէմ՝ որ դառնագին երգոցն ունկնդրեցին խռովագին.

Զի՛ հեշտալիք են անտառք անմարդաձայնք եւ անկոխք,
Քանի՜ զմայլիչ է ոգւոց ափըն լըռին մենաւոր.
Ընկերութիւն է անդէն, զոր ոչ խռովեն այլ ամբոխք,
Ի խոր խաղացըս ծովուն, յորում ալիք դաշնաւոր (*):

Այսպէս երգեցիր ո՛ Պայրըն, եւ այսպէս ա՛լ դու կեանք վարեցիր: Եթէ չեմ եմ ժտեր, ես զոր մոգեցիր գերանուագ քնարաւդ ու գերեցիր, այլ իմ ունկընդիրք աղդուապէս կը բողոքեն ընկերամարտ դառն նուագացդ ու կենացդ ընդդէմ: Հոգւով չափ այս ուսանողք յարեալ են կենաց վարդապետութեան, զոր կը քարոզէ Դրական իմաստասիրութիւնն: Իմ ունկնդիրքս ընկերութիւն կը խնդրեն, ո՛չ ալեաց եւ օդային ոգւոց, այլ մարդոց եւ կենդանի հոգւոց կենսաւէտ ու փրկաւէտ ընկերութիւնն. Իմ ունկնդիրք կը փնտռեն ամբոխն, հոծ ամբոխն իրենց նմանեաց՝ հոծ ընկերութիւնն ըլլալով պայման մեծագոյն յառաջադիմութեանց. մարդկային շահուց ներդաշնակութիւնն նախընտիր նոքա կը համարին՝ դաշնաւորութենէն ալեացն ովկիանին. Ծովուն ու հովին մնչիւ-

(*) Ուղեւորութիւն Չայլտ—Հարոլտի. Թարգմանութիւն Ալիշանի:

նէն եւ Թռչնոց ճռուողիւնէն աւելի հեշտալուր կը գտնեն Ռոսինիի եւ Պէթովընի երաժշտութիւնն, եւ սոխակին երգէն գերադասեն՝ Հոմերի դիւցազներգութիւնքն ու Հանրի Հայնի քնարերգութիւնքն. անկոխ եւ անմարդաձայն անապատներէն աւելի կը սիրեն բազմամբոխ քաղաքներն ու բազմակոխ պողոտաներն, ոյց վրայէն ազգք ազգաց հետ կը խօսակցին, ոյց վրայէն կ՚ընթանան քաղաքակիրթ մարդիկ ու կը սուրան քաղաքակրթութեան գործիք, — հանրակառք ու շոգեկառք, նախնական եւ արհեստական նիւթք, ի մի բառ **Հարստութիւնք**: Իմ ունկնդիրք կը գոչեն **Յառաջադիմութիւն**, ապա եւ **Ընկերութիւն** ու **Հարստութիւն**. Եւ արձագանգն այս ուսումնասրահին շուրջ ու համայն աշխարհի մէջ կը կրկնէ ցնծաձայն — **Ընկերութիւն** եւ **Հարստութիւն**, ապա եւ **Յառաջադիմութիւն**:

**Ե. Տէմիրճիպաշեան.** (Գր. եւ Իմաստ. Շարժում)

## **12.** ՈԳԻ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ

### ԳՈՒԹ

Եդեալն յաղեղ հաստատութեան լայնալիր
Նետ տեառն՝ ի գունտս ուղղեալ պատրաստ էր ի թիռ.
Եւ մահացուաց համակելոց, յահ ու դող,
Հայէին ոչ աչքն ի շանթհերձն երկնից քող:
Սեա՛ւ էր օր, կամ՝ սեա՛ւ արեւ.... Նա՝ գայր Տէր.
Յերկունս մահու երկիրս հեծէր տագնապէր:
«Մի՛, մի՛ ի սա, այլ յիս Տէր, յիս», գոչեաց ձայն
Լուռ յաշխարհէս, ՚նդ ամպս եւ ամպրոպս ամենայն.
Մինչ Անմահին աչքն ուղղեցան մերս ի կոյս
Ո՛հ հրաշալեացս, մատաղատունկ կայր մի կոյս
Իջեալ ի գուճս, աղերսարկու ի ժայռն անդ
Ուր զառաջինն դիպելոց էր երկնից շանթ:

*Բարձրաւանդակ էր վայրն՝ եւ սեպ զառ ի վեր,*
*Ուր հողմն 'նդ կուսին խոպոպսն անցեալ թըռանէր.*
*Մինչ ձիւնափայլ այտիցն եկեալ ընդ բոլոր,*
*'Նդ ականողխ գնային ոլոռն չիթքն ի ստոր*
*Անդ զառաջեաւ, ուր կայր սպիտակ մի կուտակ*
*Ոսկերց մարդոյ, եւ որդնալիր սկաւառակ։*
*Գիճին աստեղք աչացն այսպէս դէպ ի վեր,*
*Մի ձեռն ի կուրծս, ուր սիրտ տրոփէր բաբախէր,*
*Բարձրացուցեալ միւսովն ըզդառն ըզբաժակ՝*
*Ուր դեռ ծըխէր գառինն ուխտի սուրբ վիժակ,*
*«Երդմնեցուցեալ ըզքեզ ի սա, գոչէր, Տէ՛ր.*
*«Ցիս ըզշանթիսդ եւ մի զաշխարհն սատակեր»,*
*Եւ նոյնհետայն դըղըրդեցաւ երկրիս գունտ,*
*Փայլ եւ խաւար, նետ տեառն յերկնից էջ յանդունդ,*
*Իբր ծիր հըրոյ շուրջ բոլորեալ զաշխարհաւ*
*Անց առ կուսին, 'ւ ի հրատըն կոյս շեղեցաւ։*
*Հողմք, շանթք, եթերք, նա՝ տիեզերք կացին լուռ,*
*Շուարեալ պահ մի յահ եւ մահու ի սարսուռ։*
*Ապա յամպոց որոտաձայն ել բարբառ.*
*«Տամ քեզ, ահա, ժառանգութիւն զայդ աշխարհ,*
*«Ո՛ դուստր իմ գութ. զայդ իմ վրիժուց կապտեցեր՝*
*«Լեալ քաւութիւն մեղուցելոյն ընդ եպեր»։*
*Ցայս ձայն ուխտի երկիրս թնդաց կրկնակի,*
*Եւ անմահից գունդք կրկնեցին «Եղիցի՛»։*
*Եւ ապա կոյսն եւ եդ զբաժակն ի վէմն անդ*
*Ուր խորանն էր ուխտի Տեառըն անվըկանդ.*
*Եւ երիցըս երկիր եպագ մինչ ի հող,*
*'Ի անդէն բարձաւ յաչաց մարդկան սեաւ մի քող...*
*Յետ միջաւուր նոր օր էր եւ նոր արեւ,*
*Ի Գողգոթա երփըն կամար շուրջ զիւրեւ։*

**Ե. Ոսկան**

## 13. ՀՆՈՒԹԻՒՆՔ ԱԹԵՆԱՑ

*Այլ եւ քանի՜ փառաւոր են աւերակք հնոյն Աթենայ, այն կիսակործան շինուածք զոր կը տեսնես յարեւելակողմն արդի քաղաքին, ի միջնաբերդին մանաւանդ, զոր Յոյնք Ագրո՛բօլիս կ'անուանեն, մեծագործութիւնք ամենայնիւ, արժանաւորք արդարեւ դիւցազանց ժամանակի, մեծագործութիւնք՝ որ կարեն մասամբ պատմական արժէք մ'ընծայել Հոմերական վիպաց։ Երեսուն եւ աւելի դարուց ահագին ժամանակամիջոցն անշուշտ պատկառանօք պիտի սահէր առ ստորոտովք այդ պանծալի յիշատակարանաց, եթէ աւերիչ չարաղէտ արկածք խնայէին ի դոսա։ Այդ փառաւոր նշխարք մնացուածոց, որ մարդկային ազգին քաղաքակրթութեան վառարան եղած էին երբեմն, այդ մեծաշուք օթեվանք, ուր դրած է զիւր գահոյս վեհափառ ոգին աշխատասիրութեան Հելլենաց, արդ եւս կը ծաւալեն կարծես զիւրեամբք վեհութիւնք եւ շուք երկնային, զի խրախուսանօք, որ կը վառեն գողցես զոգին Հելլենաց եռանդագինս մրցել ի գործ յառաջադիմութեան, ի գործ լուսաւորութեան ժողովրդոց, եւ նկրտել լինել ի համարի քաղաքակիրթ ազգաց Եւրոպիոյ։*

*Զանց առնելով սակայն թուել մի առ մի զամենայն նշխարս հնութեանց՝ կը նշանակեմք աստ զգլխաւորսն, որ են՝ Միջնաբերդն եւ որ ինչ ի նմա, Բագոսի թատրոնն, Ողիմպական Արամազդայ մեհեանն, Թէսէոսի տաճարն եւ Սոկրատայ բանտն յորոց ոմանց շինուածքն անեղծ են գրեթէ ցայսօր։*

*Միջնաբերդն կառուցեալ կայ ի բարձրաւանդակի ուրեք զոր կը պատեն կիսաւեր պարիսպք շուրջանակի. տարածութիւն Միջնաբերդի չէ աւելի քան զմի հազա-*

րամէթր քառակուսի, քաղաքն համայն, նաեւ ընդ աղօտ լոյս Պիրէոն տեսանելի են ի Միջնաբերդէն, զորոյ ստորոտովք չպակասին շինուածք հասարակաց, եւ որ տասն վայրկենի հեռաւորութիւն եւեթ ունի յԱթենայ, ընդ որ կը հայի ի հարիւր յիսուն մէդր բարձրութենէ, իբրեւ հսկայ անարի կամ որպէս պահապան մի վիթխարի, ալեւոր եւ խորշոմեալ ընդ ժամանակօք յոքնաթիւ դարուց: Սեանց եւ խոյակաց անթիւ բեկորք կան աստ անդ ցիր եւ ցան, կիսափուլ շինուածոց վերայ ուրեք ուրեք սքանչելի են քանդակք եւ փորածոյ զարդք, գործք ճարտար մատանց, ընդ որս կը հիանայ ուղեւորն մտախոհ: Այլ քանի՜ խնամով կը պահին այդ ամենայն նշխարք. մի չնչին քարի բեկոր յոյր վերայ թէ նշանախեց մի լինի փորագրեալ՝ անմատչելի է ձեռաց հակառակ թախանձագին խնդրանացս եւ խոստմանց, անողոք պահապանն որ կ՚ընկերանայ այցելուին չհաճեցաւ թոյլ տալ ինձ հատանել առնուլ մի նշանակիր քարի կտոր, թէպէտ առանձին էաք բոլորովին: Այո՛, այսչափի երկիւղածութեամբ կը պահպանեն Աթենացիք զյիշատակարանս իւրեանց հոյակապ նախնեաց:

Ի մէջ այլոց նշանաւոր է ի Միջնաբերդին Աթենասայ տաճարն (Բարթհէնոն), որոց մեծագործ սիւնքն, թէպէտ մեծաւ մասամբ կիսականգուն, պատկառանս կ՚ածեն մարդոյ. քառանկեան ձեւով է այս շէնքն՝ շուրջ պատեալ ի քառասուն եւ ութ մեծաբերձ սեանց, յորոց ոմանց պատուանդանքն եւ եթ կը մնան. Հարիւր քսան քայլ երկայնութիւն եւ վաթսուն քայլ լայնութիւն չափեցի ես անձամբ շրջելով. հարկ է ասել թէ համակ մարմարիոնէ կառուցեալ է շէնքն եւ այնպիսի մեծամեծ վիմօք, զորոց իւրաքանչիւրն երկոտասան լուծք եզանց հազիւ ձգել կարեն թերեւս:

Հարիւրաւոր անդրիք եւ կիսարձանք եւ այլ զարդարուն քանդակք զետեղեալ են Միջնաբերդի յատուկ թանգարանին մէջ, զորմէ պիտի խօսիմք ի կարգին։

Բաց յԱթենասայ տաճարէն, որ մեծագոյն զարդն է Միջնաբերդի, կան նաեւ մի քանի հոյակապ դրունք եւ այլ արձանօք զարդարեալ ինչ ինչ շինուածք, ոմանք կիսափուլ եւ այլք բոլորովին կործանեալ։

Մինչդեռ անծանօթ էր շոգւոյ զօրութիւնն, եւ կը պակասէին հետեւաբար՝ մեքենայք, որովք յանչափս կը բազմապատկի մարդկեղէն զօրութիւնն, հիացմամբ կը լնու մարդ, երբ կը խորհի թէ ո՞րպէս հնար եղած էր յայնժամ ա՛յնչափ անհնարին ծանրութեամբ քարեր բառնալ հանել ի վեր յամրութիւն եւ ի զարդ Միջնաբերդին, որոյ քարինքն իսկ կը պատմեն յիրաւի զմեծութիւն եւ զփառս նոյն Աթենայ։

Միջնաբերդի հարաւային ստորոտն է Բաքոսի թատրոնն, աւերակք այս շինուածոյն չեն ինչ նշանաւոր զարդիւ, պատուական հնութիւնք զոր գտած են անդ, որպէս կը հաւաստեն, փոխադրեալ են այլուր, զի անպատսպար է տեղին՝ գոլով արտաքոյ պարսպաց Միջնաբերդին։ Ամփիթատեր ձեւով է այս շէնքն անյարկ ամենեւին. դեռ եւս կը մնան մարմարեայ աղեղնաձեւ նստարանք, եւ պատուհանաւոր բարձր պարիսպ մի, որ կը թուի լինել ընդարձակ շինուածոյ մի մնացորդն, կը հատանէ ի հարաւոյ կուսէ զբոլորութիւն նստարանացն, որ վերուստ ի վայր կը նեղին աստիճանաբար եւ կը յանգին ի տափարակ տեղի ուրեք կէս բոլորշի, ուր, որպէս կերեւի, կռփամարտիկք յունաց եւ առիւծամարտիկք կ'ելնէին ի հանդէս ուժոյ եւ քաջասրտութեան իւրեանց։

Ի սմանէ սակաւ ինչ հեռի, դէպ ի հիւսիսային արեւելակողմն Միջնաբերդին, ի հարթ վայրի ուրեք,

կը բարձրանայ մեհեանն Ողիմպական Արամազդայ, կամ մնացեալ սիւնք ինչ բարձրաբերձք այնր մեհենի որ, եղո՛ւկ, աւերեալ է բոլորովին։ Ի մասնէ դատելով զամբողջն՝ կարեմք ասել թէ հնոյն Աթենայ չքեղագոյնն էր այն շինուածն հոյակապ, արժանաւոր վեհ անուան ամպրոպայինն Արամազդայ, զոր, ո՛ գիտէ քանի՛ բիւրք բիւրուց մահկանացուաց փառաբանեալ են օրհնութեամբք եւ երգօք արուեստականաց եւ ողջունեալ զոհիւք եւ հենհերօք յոյր ազգերց։ Այս աւերածոյն եւս փոխադրեալ են նշխարք ի թանգարանս, եւ կը մնան եւեթ մի դուռն քանդակօք զարդարուն եւ խուն ինչ ի բացեայ, մի քանի սիւնք իբր քսան մէթր բարձրութեամբ եւ մի եւ կէս մէթր տրամագըծաւ. թէ եւ միակտուր չեն սիւնքն, բայց հոյակապութիւն նոցին եւ գեղեցկագործ քանդակք գեր ի վերոյ են քան զամենայն բեկորս շինուածոց հնոյն Աթենայ։

Ցարեւմտակողմն Մի՟նաբերդին, ի տափարակ տեղւոջ ուրեք, կառուցեալ է Թեսէոսի տաճարն. շինուածս այս անեղծ է մնացեալ դրեթէ իւր կամարակապ յարկաւն հանդերձ, յոյր վերայ մի փոքր լուսինջոյց եւեթ կայ յարեւելեան կուսէ զօրէն ատրուշանի, եւ սեամբքն որ շուրջ կը պատեն զնա արտաքոյ։ Պահապան ոք եմոյծ զիս ի ներքս. պատկառեցայ անդ, երբ տեսի զարձանս Սոկրատայ, Արիստոկղէսի, Դիմոսթենեայ եւ այլոց փիլիսոփայից եւ հռետորաց, եւ դից ոմանց որպէս Զեւսի եւ Հերայի, Ապողոնի, այլովքն հանդերձ, զորս մի ըստ միոջէ կ'անուանէր ինձ ծերունի պահապանն պարծելով իմն ի նախնիս իւր։ Կիսոցն անարատ են անդրիք յոտից ցգլո՛ւխ, թէպէտ այլոցն եղծեալ ամենեւին. բայց կը պահին նոքա, կը պահին ցայսօր ա՛յնու հպարտութեամբ, ա՛յնու գոռոզութեամբ

որ յատուկ է յունական ոգւոյն, ի փառս պարծանաց Հելլէն ազին։

Բայց ե՛կ, ընթերցող, եկ ընդ իս Միջնաբերդի հանդիպակաց այդ բլրոյն վրայ, դէպ ի հարաւային—արեւմտեան կողմն… կանգ առ աստ պահ մի. այդ նկուղն փորածոյ ի վիմի, զոր կը տեսանես յերիս խորշս բաժանեալ, բանտն է Սոկրատայ, ճշմարտութեան այն հոյակապ նահատակին, որ էարբ անդ զբաժակ մահու անխռով եւ հանդարտիկ. մուտ ի ներքս մատչել ի համբոյր այդ սրբական որմոց, ույց արձագանգք նուաղկոտ իմն կրկնեցին զայն յետին նուագ զմրմունջ անմահ իմաստասիրին՝ թէ «Ճշմարտութիւն՝ Աստուած ինքն է։»

Ե. Գուրգէն. Ողեւորութիւն յԱթէնս

## 14. ԼԱՄԱՐԹԻՆ

Լամարթի՛ն, ամենէն աւելի նա է բանաստեղծ, զի հոգւոյ բանաստեղծն է նա։ Երբ իր քնարին առաջին ձայնը լսե՛լի ըրաւ, այնպէս եղաւ իբրեւ թէ առաջին անգամ կը հնչէր բանաստեղծական քնարին ձայնը Ֆրանսայի մէջ, երբ հազիւ թէ ցրուած էին քաղաքաւեր եւ աշխարհաւեր պատերազմաց ծուխերը, երբ սանձարձակ ազատութիւնն ու ապա երկաթէ դանդանաւանդն հեղձամղձուկ ըրեր էին այն մեծ ազգին հանճարը, երբ մարեր էր աւիւնն եւ ընդարմացեր էին հոգիներն ամենուն, երբ երկիւղն՝ երկիւղածութեան տեղն էր բռներ, երբ երկրաքարշ մատենագրութիւն մ'ամբարտաւան հանճարի մը խոժոռ նայուածքներէն ալ չ'ակնածելով՝ բոլորովին նուաստացուցեր էր բանաւորութիւններն ու սիրտերն եւ ապականութեան հոսանքը տղմուտ գետի մը պէս կը հոսէր կ'անցնէր այն մեծ հանճարին ոտքերուն առջեւ։ Ինչ որ Շա–

թօղուխան չկրցաւ ընել. Լամարթին ըրաւ զայն։ Անհունին մեծ հորիզոնը բացաւ ընդլայնեց այն վայրահակ հոգիներուն առջեւ՝ որք իրենց այլակերպութեանը վրայ իրենք ալ զարմացան։ Իր բոլոր տաղերուն մէջ որք երաժշտութեան մը պէս կը հնչէին, երկնից կարօտովն անձկայրեաց հոգին՝ վեր կը սլանար միշտ երկրէ։ Սէրն որ կ'երգէր աստուածային պաշտամամբ խառնուած էր. սէրն ու ամեն բան կ'առնէր իրեն հետ յեթեր կը բարձրացնէր։ Մշտամռունչ աղօթք մըն էր նա, եւ ուրիշ ի՞նչ կրնար ըլլալ բնութենէ ներշնչեալ այն բանաստեղծը. ո՞չ ապաքէն ամենայն ինչ կ'աղօթէ յաստիս, ո՞չ ապաքէն ժամեր կան, այնպիսի խորհրդաւոր ժամեր ուր ամենայն ինչ արարչութեան մէջ կը տեսնես որ աղօթքի դողով բռնուած է, թռչունը, ծաղիկը, տունկը, աւազի հատիկը, ո՞չ ապաքէն ամենայն ինչ կը սարսռայ, կ'արտասուէ ու կը պաղատի։ Եւ միայն մարդս պիտի չ'աղօթէ, մարդս որոյ վրայ կը խուժեն աղէտք, որ բոլոր բնութեան մէջ անժառանգեալ՝ ինքն է միայն որոյ մխիթարութիւնը, յոյսն ու մեծութիւնն է խօսիլ ընդ Աստուծոյ։ Բոլոր ներշնչմունք էր Լամարթին, եւ ներշնչմունք ըսելով պէտք չ'է իմանալ յախուռն եւ յանդուգն երեւակայութեան մը արշաւանքը բանին եւ իմաստութեան սահմանին մէջ, այլ հոգւոյն ցոլացմունքը իմացականութեան վրայ։ Բանաստեղծը անտեսանելին կը նշմարէ եւ ինչ որ ուրիշները կը նշմարեն նա կը տեսնէ. բարոյական մարդը կը նախազգայ, բանաստեղծը կը մարգարէանայ, իրաւունք ունէին Լատինք որ մարգարէ ու բանաստեղծ միեւնոյն բառով կը բացատրէին։

«Բանաստեղծին օրհնեալ է անունը, անիծեալ է կեանքը»։ Այն մարդը որուն անունը բոլոր աշխարհ

յուշի կը կապէր, իր քաղաքական ձախորդութեանց մէջ տեսաւ զինքը լքեալ ամենէն, լքեալ իր բարեկամներէն իսկ, բան մը որուն համար Ժիւլ-Ֆավռը մեծ հոգիներու ամենամեծ տառապանքն է կ'ըսէ։ Մեկուսի ապրեցաւ աշխարհէ, պարտքերու եւ մոռացութեան տակ ճնշեալ, եւ աս որ զէլվիրն էր երգեր եւ Ժօսլէնն էր գերեր, Դաշնակներու ու Խորհրդածութեանց գրքին հեղինակը, տեսաւ իւր վերջին օրերուն, ի նախնեաց մնացած իր կալուածները, տունն ու այգիները որոնց իր հոգին էր խառներ, տեսաւ որ մէկիկ մէկիկ ուրիշներուն ձեռքն անցան ամենքն ալ. եւ ինք որ արդէն չ'էր սիրեր զաշխարհ, զզուեցաւ աշխարհէ եւ մեկնեցաւ անտրտունջ. ինչպէս անտրտունջ կը մեկնի ով որ ալ բաժակին մրուրը քամած է եւ որ արմատ չէ ձգած յաշխարհի, ինչպէս կ'ըսէր ինք ալ հետեւեալ տողերուն մէջ.

«Ահ, լայ Թո՛ղ, լա՛յ այն մարդն որոյ ձեռք մոլեխանձ
Ցարեալ իբր ըզբաղեղ ամացն իւր բեկորաց
Վաղուան հետ կը տեսնէ իր յոյսն ալ որ կ'անցնի.
Իսկ ես որ՝ արմատ ոչ ձըգեցի յաշխարհի
Ես կ'երթամ անաշխատ այէս Թեթեւ տերեւին
Վերբերեալ շընչոմն երեկին»։

Օր մը Նորէն պիտի կրկնէ աշխարհ իւր անունը. մարդըս երկրաքարշ իրականութեամբ գոհ չը կրնար ըլլալ եւ ոչ ապականութեան եւ խենէշ զեղխութեանց մէջ ապրիլ երկար ժամանակ. պէտք է մաքուր օդ ծծէ։ Ու երբ գիտութեանց ամեն գիւտերէն ետքը եւ իմաստասիրութեան ամեն ձեւերէն ետքը՝ մարդիկ Նորէն սկսին բնտռել մեր հորիզոններէն անդին ու մեր բոլոր մթնոլորտներէն վեր՝ անապական ճշմարիտ լոյսն որ անմատչելի հեռաւորութիւններէ կ'անդրաձգի ի մեզ մեր աշխարհին ստուերներուն միջեւէն, երբ զգան

պէտքը իրենք իրենցմէ վեր բարձրանալու, նորէն պիտի կարդան զԼամառթին որ զիրենք փոխադրէ միշտ մաքուր-սփիւռներու մէջ, սքանչացնելով իրենց ա-կանջներն ու սիրտը երկնային դաշնակութիւններով որոնց արձագանգը դեռ չէ մարած ու չը պիտի մարի։

Գ. Օտեան

## 15. ՎՍԵՄՈՒԹԻՒՆ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԿՐՕՆԻ

ՍԱՆԱՏՐՈՒԿ, ԹԱԴԷՈՍ, ՇԱՒԱՐՇ, ԵՐՈՒԱՆԴ

ԹԱԴԷՈՍ. Այո՛ ինքն է ճշմարիտ Աստուածը՝ ո՛վ Թագաւոր, ինքը միայն Աստուած է։ Այս Տիեզերքս որ բիւրաւոր հրաշալեօք զարդարուած է՝ իրեն աչքին դիմացը ոչինչ է, եւ ոչնչութիւնը աւելի գեղեցիկ Տիեզերքներով լցուած է իրեն համար. ինքը ըսաւ եւ ամէն բան եղաւ. ամէն բան զինքը կը քարոզէ։ Մինչդեռ իր զօրութիւնը կը հռչակեն մրրիկք՝ որոնց մէջ ցասմամբ կը պտըտի, եւ փայլակները՝ որ իր նայուածքներէն կը թափթըփին, մինչդեռ իր զօրութիւնը կը քարոզեն ծովք՝ որ խռոված ատեննին իրենց հզօր արարչին հայելին են, եւ ուրիշ սանձ չունին իրենց անյագ կատաղութեանը՝ բայց միայն իր յունից սպառնալիքը. իր սէրը կը քարոզէ առաւօտեան անուշ հովը՝ որ իր զուարթ թեւիկներովը կարծես ծաղկանց արցունքը կը սրբէ, իր սէրը՝ անպատսպար թռչնոց ձագը՝ որ բնազդմամբ աչքերը դէպ ի երկինք կը վերցընէ բոյնէն, եւ իր սէրը դարձեալ արեւը՝ որ երկնից ընդարձակութեան մէջ կը թափառի՝ աչքերը դարձուցած դէպ ի Վեհին աթոռը, որուն կարծես հրամանացը կը սպասէ։

ՍԱՆԱՏՐՈՒԿ. Եւ ո՞ւր տեսնեմ քու Աստուծոյդ հետքերը։

ԹԱԴԷՈՍ. Քու աստուածոցդ աւերակներուն վրայ։ Ինքը յաւիտենականութեան ամպերուն մէջ ծած-

*կուած՝ Տիեզերաց վրայէն կախած է արդարութեան կշիռքը. հոն են թագերը եւ թագաւորութիւնները, իր ձեռքն է որ անյայտ ճամբաներով կ՚առաջնորդէ զմահկանացուն որ կը գոռոզանայ՝ չգիտնալով հզօր ձեռքի մը գործիքն ըլլալը, սուրը որ կը փայլի՝ կը սպառնայ՝ կը վիրաւորէ, բայց վերջապէս ինքն ալ կը խորտակի. եւ իր գործած աւերակներուն վրայ ինքն ալ կը փշրի։ Այն ձեռքը կը բարձրացընէ զմարդ ինչ-ուան ուր որ որոշած է... եւ մինչդեռ բոլոր Տիե-զերաց աչքերը դէպ ի այն հպարտը դարձած են՝ այն ամբարտաւան շէնքը կը կործանի կ՚իյնայ. ինչպէս թանձր մուխը որ խաղաղ օդին մէջ կը դիզուի՝ եւ իր մութ ձեռքին տակ արեւն անգամ կը ծածկէ, բայց հովը փչածին պէս կը ցնդէ զայն...։ Ո՞ւր ես Բա-բելոն, Նինուէ՝ քու բուրգերդ ո՞ւր են... այն ինչ լռութիւն կը տիրէ ձեր ճամբաներուն մէջ... քու փառքդ ալ անշըշունջ աւերակացդ վրայ կը քնանայ... հո՛ն ուրեմն ո՛վ թագաւոր, հո՛ն գացէք դուք ալ, ո՛վ ժողովուրդք, սորվելու համար. այն լռութիւնը ձեզի ամէն բան պատմէ. եւ կործանեալ բուրգերը աւելի սարսափեցընեն պիտի զձեզ՝ քան թէ երբ բիւրաւոր կորիճներով պաշտպանուած էին. այն աւերակներուն նայեցէք. աստուածութիւն մը անոնց վրայէն անցած է. կարդացէք թէ այն խորտակեալ պարիսպներուն վրայ ինչ գրեր է Ամենակալին մատը... «ՈՉՆՉՈՒ-ԹԻՒՆ»։*

ԵՐՈՒԱՆԴ. *Արդարեւ վսեմ եւ գեղեցիկ գաղափարք։*

ՍԱՆԱՏՐՈՒԿ. *Ի՛նչպէս այդչափ հրաշք կրնայ գոր-ծած ըլլալ Աստուած մը որ մարդկանցմէ Նախատա-լից կերպով խաչուած է։*

ԹԱԴԷՈՍ. *Նախատալի՛ց կը կոչես մարդկութեան հա-մար մեռնիլ։ Տիեզերք լի անօրէնութեամբք՝ կորստ-*

եան վիհը հասած էր․ արդարութեան սուրը երկնից երեսը կը սպառնար․․․ երբոր յանկարծ ձայն մը, «կեցի՛ր» գոչեց՝ «ահա ամենուն տեղ ես կը մեռնիմ»․ այս լսելով, սէր անպատում, Աստուած մը իր փառքը թողլով մարդ եղաւ․․․ Աստուած մը մեռաւ․․․ այն ահաւոր անդունդը որ կայ աստուածութեան եւ ոչնչին մէջ՝ սէրը լեցուց։

ՆՐՈՒԱՆԴ․ Քրիստոնէից այս գաղափարները որ կը լսեմ, կը կարծեմ թէ ասոնք կամ մէյմէկ խենդ են եւ կամ մէյմէկ աստուած։

ԹԱԴԷՈՍ․ Ո՞վ կրնայ Քրիստոնէի մը սրտին զգացածը բացատրել․ քիչ կը համարի ինքը իր Աստուծոյն սիրոյն կեանք մը միայն զոհելը։

ՍԱՆԱՏՐՈՒԿ․ Եթէ սիրոյ կրօնք կը կոչես այն որ արիւն եւ մահ կը քարոզէ՝ որչափ աւելի սիրոյ ըլլայ պիտի մեր կրօնքը որ հեշտութեամբ կ՚ըլլայ։ Գեղեցի՜կ սէր՝ որ կոյս մը իր մանկութեան վարդերը արեանցը մէջ թառամեցընէ․ երիտասարդը՝ որ հայրենեաց պաշտպան մը կը խոստանար՝ գերեզմանին մէջ իր յոյսերը թաղէ։

ԹԱԴԷՈՍ․ Քրիստոնէի մը համար գերեզմանը անմահութեան դուռն է։

ՍԱՆԱՏՐՈՒԿ․ Այդ անմահութեան դռնէն՝ շատերը անդին աշխարհ խաւրեցի․ բայց ձեր անիծեալ կրօնքը հարիւր գլխով հրէշին կը նմանի, որուն գլուխները որչափ կը կտրէին՝ այնչափ նորէն կը բուսնէր։ Ո՛հ, գիտնայի թէ արմատը ո՞ւր է, եւ խզէի։

ԹԱԴԷՈՍ․ Դողա՛․ ինքը քեզի կը լայ։

ՍԱՆԱՏՐՈՒԿ․ Այո՛, պիտի կործանի դիմացս քու Աստուածդ․ իրմէ հետք մըն ալ պիտի չմնայ երկրիս վրայ․ ես ինքնին պիտի կոխկռտեմ իր տաճարները։ Եւ ինքը պիտի չգտնայ ապաստան մը երկրիս վրայ՝

*ցորչափ ապրի Սանատրուկ, ցորչափ այս քաջայաղթ սուրը սարսափ ազդէ աշխարհիս. պիտի չլսէ ոփիչ երգեր՝ բայց զողբաձայն հեծեծանս իր հետեւողացը՝ զորս ես պիտի խողխողեմ։ Այլ եթէ ոխերիմ բաղդը՝ իրեն յափշտակել տայ զաշխարհ իմ ձեռքէս, աւերակներ միայն պիտի գտնէ՝ ուր տխուր լոյս մը պիտի արձըկեն իր հրաքորբոք տաճարները։*

ԹԱԴԷՈՍ. *Սրբազոյն խորան մը աւելի հաճոյ խունկ մ'ունի մեր Աստուածը, եւ դու զայն չես կրնար կորզել... մեր սիրտը եւ մեր արցունքը։ Զո՛րկ՝ սպաննէ՛... մեր յետին հառաչանքը քու փրկութեանդ համար աղօթք մ'ըլլայ պիտի։— Բայց գիտցիր թէ որչափ ալ անսպառ ըլլայ իր երկայնամտութիւնը՝ եթէ ինքը ցասմամբ ելլայ իր աթոռէն՝ դողան պիտի երկինք իր նայուածքէն, եւ մինչդեռ դու զարհուրած պիտի փախչիս իր առջեւ՝ խուռն կայծակունք պիտի թօթափին գլխուդ վրայ, եւ իւրաքանչիւր քայլիդ տակ նորանոր անդունդներ պիտի բացուին։ Արքա՛յ, նեղ են քեզի հիմայ Տիեզերք... եւ սակայն քիչ ատենէն բոլոր փառօքդ հանդերձ՝ քանի մը թիզ հող միայն պիտի գրաւես։*

ՍԱՆԱՏՐՈՒԿ. *Այո՛, կա՛մ անձայն երկրիս տակ՝ կամ բոլոր երկրիս վրայ իշխան. լի մանկական եռանդեամբ ելայ ես ատենով, Թադէոս. ինչպէս անտառք մրրկին դէմ՝ այնպէս խոնարհեցան ազգերը առջեւս. այն կտրիճին ոտքին տակ կը կոխկըռտուէր թշնամին՝ եւ իր արենակաթ սրոյն վրայ ԱԶԱՏՈՒԹԻՒՆ գրուած էր. այն սուրը ձեռքիս մէջ փշրեցաւ. բայց կենդանի է դեռ նոյն սիրտը։ Դեռ երիտասարդ՝ աշխարհիս հետ պատերազմեցայ եւ յաղթեցի. հիմայ ալեւոր՝ Աստուած մը գիս պատերազմի կը հրաւիրէ։ Տեսնա՛նք, յաղթութիւնը որո՛ւնն է։*

**Թ. Թէրզեան.** (Սանդուխտ ողբերգ. Արար. Ա. 4)

## 16. ԲՆՈՒԹԵԱՆ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆՆ Ի ՄԱՐԴ

Բնութիւնն համայն ներգործիչ զօրութիւն մը ունի բովանդակ մարդկութեան վրայ։ Այն փառաւոր գործը զոր առ հասարակ դաստիարակութիւն կ'անուանենք, իւր մէջ բազմաթիւ տարրներ կը պարունակէ յորոց մին կը համարձակիմ համարել բնութեան ազդեցութիւնն ի վերայ մարդկան։ Սովորաբար դիւրաւ կը ճանաչեմք ընկերային եւ քաղաքային կենաց՝ կրթիչ ազդեցութիւնն ի մարդ, սակայն արտաքոյ ընկերային աշխարհի, կայ այլ իմն աշխարհ որ գէթ մասամբ իւիք կ'իշխէ ժողովրդոց եւ անհատից բարուց եւ կը համակերպէ նոցա բնութիւնն իւր բնութեան։ Բնութիւնն ոչ թէ միայն կը սնուցանէ զմարմին մեր, քան զայս բարձրագոյն պաշտօն մը ունի նա որ է մտաւոր գործունէութեան անհուն ասպարէզ մը բանալ, աշխատեցունել եւ մշակել զմիտս, ճոխացունել զայն բազմատեսակ հմտութեամբք եւ խորհրդովք, ընդարձակել մեր գաղափարքը։ Բնութիւնն նախ զմեզ մեր անձէն դուրս կը հանէ եւ կ'ուսուցանէ անձին թէ ինքն չէ ամենայն ինչ։ Արտաքին աշխարհն նաեւ կը զարթուցանէ ի մեզ բարձրագոյն զգացմունք որք այնքան կարեւոր են զմարդկութիւնն ազնուացունելու եւ զայն ի վեր բարձրացունելու այն ստորնացեալ եւ գռեհիկ վիճակէն, յորում, աւա՛ղ, դեռ մարդկութեան մեծագոյն մասն կը գտնուի։

Բազմիցս կը խորհիմ ես թէ մինչեւ իսկ բնութեան մի աննշան եւ անզօր ծաղիկն ինչ հզօր է անոնց համար՝ որք կրթած են զանձինս ուսանելու զբնութիւնն։ Անդ՝ հովտի մը անտես խորշին մէջ իւր փափկասուն ծղօտին վրայ, նա այնքան անզօր է որ մեղմիկ զեփիւռներն զայն կը սարսեն։

Միայնակ եւ լռին իւր երփնազարդ թերթերը կը բացուին եւ ազատաբար կ'ըմպեն արշալոյսին ցօղը եւ տուրնջեան ոսկեփայլ ճառագայթները. ինչպէս միայնակ կ'ընդունի երկնի այս պարգեւներն, նոյնպէս միայնակ կը փայլեցունէ իւր գեղն ու կը սփռէ իւր սիրաբոյր քաղցրահոտութիւնն: Եզ մը կամ խոզ մը թերեւս անոր մօտէն անցնի, ո՛հ., անցնի նաեւ թերեւս գռեհիկ մը, եւ ի՛նչ է գեղափայլ եւ քաղցրաբոյր ծաղկան զօրութիւնն ի վերայ նոցա: Սակայն ինչքա՜ն հզօր է այն զգայուն եւ բանաստեղծ ոգւոյն վրայ: Մեղմաշունչ սիւքերէն սարսող այս անզօր ծաղիկն զիա՞րդ կը սարսէ եւ կը յուզէ ողջոյն անձն: Այս անբարբառ գեղեցկութիւնն զգացմանց ի՜նչ աշխարհներ իսկ եւ իսկ կը զարթուցանէ ի նմա: Նորա վրայ փայլող մարգարտանման ցօղի կաթիլք արտօսրի շիթեր կը փայլեցունեն նաեւս բանաստեղծին աչաց վրայ: Եւ ո՛չ միայն զսիրտն այլ զմիտս եւս կը յուզէ նա: Ուսուցիչ մ'է որ իւր գոյութեան եւ կենաց օրէնքը կ'ուսուցանէ այնմ որ յօժար է դիտելու, խորհելու եւ ուսանելու: Նա կարող է բռնել իմաստասիրին ձեռքէն եւ առաջնորդել զայն ի լայնարձակ եւ հոյակապ տաճարն գիտութեան:

Այսպէս է հովտին ծաղիկն: Ի՞նչ են ուրեմն անբաւութեան մէջ թաւալող այն բոցանիւթ գունդերն, որք մէն մի աշխարհներ կամ արփիներ են: Ո՞րպիսի մեծ է այն հիացումը որք նոքա կ'ազդեն մեզ: Ո՞րպիսի հզօր են կրթելու եւ ուսուցանելու զմիտս մարդկան: Սոքա կ'ընծայեն մեզ հմտութիւն եւ գաղափարք, այնքան բարձր եւ այնքան լայնարձակ որքան է այն անբաւ միջոցն յորում սփռեալ են նոքա: Կը զարթուցանեն ի մեզ այնքան վեհ եւ ազնիւ զգացմունք որոց նմանն թերեւս բնութեան մէջ ո՛չ այլ

ինչ կարող է զարթուցանել։ Բեւեռային աստղը ո-
րոյ լոյսը քառասուն եւ վեց տարուան մէջ միայն
կրնայ հասնիլ մեր աշխարհին. այսպիսի անբաւ եւ
զարհուրելի հեռաւորութեան մէջ, ովկիանու մթին
եւ խռովեալ ալեաց վրայ մոլորեալ նաւորդին ճա-
նապարհ ցոյց կուտայ, սակայն նա կ'առաջնորդէ նաեւ
գիշերուան պահերուն մէջ իր խուցին մէջ հսկող
աստեղաբաշխին, խորհրդոց եւ զգացմանց առաւել
խոր, առաւել անբաւ եւ առաւել խռովայոյզ ուրիշ
ովկէաններու վրայ։

Պարտ է մեզ ուսանել զբնութիւնն համայն, զի այն
մեծ կրթիչ մ'է. պարտ է մեզ ուսանել այն հեռակայ
աշխարհներն եւ արեգակներն եւս որք այնքան գե-
ղեցիկ առիթներ կ'ընծայեն մեզ, կրթելու եւ բարձ-
րացունելու մեր մտաւորական կարողութիւնք, պարտ
է մեզ նաեւ յարդարել մեր սրտերն փառաւոր եւ
վսեմ զգացմանց համար։ Անոնց լուսեղէն մատերն
կարող են զարթուցանել մեր սրտից վրայ այնպիսի
վսեմ եւ հոյակապ ներդաշնակութիւնք որոց նմանն
թերեւս ոչ մի կոյսի ճարտար մատունք երբեք զար-
թուցած են նուագարանաց վրայ։

Վեր յերկինս նայեցէ՛ք պայծառ գիշերուան մը մէջ,
եւ դիտեցէ՛ք այն աստեղազարդ կամարը, այն կա-
պուտակ եւ լայնարձակ գմբեթը, զոր երկին կ'ան-
ուանենք՝ առ հասարակ։ Մեծափառ տեսարան մ'է
այն որ կը պարզուի յաչս մեր, եւ զմայլելի են բիւ-
րաւոր փայլփլուն աստեղք, զմայլելի է արծաթեայ
լուսինն որ թագուհւոյ մը նման անոնց մէջ կը շարժի։
Բայց ի՛նչ է արդեօք այն չքեղ եւ անեզր կապոյտը
յորմէ կը ցոլանայ այսքան լոյս, ո՛րքան հոյակապ եւ
հրաշագեղ է այն։ Կը սիրեմ ես դիտել զաստեղս եւ
զլուսին, կը սիրեմ տեսնել եւ վայելել արեգական

ճոխ փառքն, երբ նա իւր ոսկի ճառագայթներով զամենայն ինչ կ'ողողէ. սակայն կը սիրեմ դիտել եւ վայելել նաեւ այն փառաշուք կապոյտը որոյ մէջէն կ'ընթանան այս լուսեղէն գունդերն։ Ինձ կը թուի թէ մեծապանծ տաճարի մը գմբեթն է այն, Տիեզերական տաճարի մը, որոյ սիւներն մահացու աչերն կարող չեն տեսնել, ու ինքն ամբողջովին լուին եւ անբարբառ օրհներգութիւն մ'է Յաւիտենականին, որ մեր ու ամենից Տէրն է։ Ի՜նչ խանդ, ի՜նչ բանաստեղծական աշխոյժ, ի՜նչ ահ, եւ զգացմանց ի՜նչ ճոխութիւն կ'ընծայէ նա զգայուն ոգւոյն։ Անոր վրայ Արշալոյսը իւր վարդէ մատերով կը նկարէ այն գեղապայծառ եւ փառաշուք գոյներն որոյ նմանելու այնքան կը տենչայ արուեստագէտն, անոր վրայ կը վառուին աշնանային աւուրց բոսորագեղ գոյներն, որք կը թնդացնեն եւ կը յափշտակեն մեր ոգին, անոր վրայ կը վառի արեգական փառահեղ բոցն որ կը սփռէ ամենայն ուրեք խնդութիւն, լոյս եւ կեանք, անոր վրայ կը սահին թեթեւընթաց՝ ամառնային շղարշեայ ամպերն որոց հազարաւոր նրբատեսիլ ձեւերն կը թուալին լուսափողփող երկնից վրայ։ Կ'ըղձամ գիտնալ թէ ինչ է այն, եւ ահա գիտութիւնը կը մօտենայ պատմել անոր վրայ։ Եւ չգար այն անոր գեղը ու վսեմութիւնը աղարտելու, գիտութիւնն կուգայ եւ իւր ձեռքը կը դպցունէ այս չքեղ կապոյտին, բայց ո՛չ թէ զայն աւրելու, ինչպէս բիրտ ձեռք մը կ'աւրէ փափկասուն եւ գողտրիկ ծաղիկ մը, եւ ինչպէս նիւթապաշտից ցրտասառոյց ձեռքը կը թարշամեցունէ ամենայն գեղեցկութիւն եւ վեհութիւն, այլ՝ երբ կը դպչի անոր, այն մոգական շօշափումը կը նպաստէ միայն ամենայն ինչ առաւել փառացի, առաւել սքանչելի եւ առաւել վեհ ընելու ի նմա։ Գիտութիւնը կը

պատմէ մեզ թէ այս կապուտակ կամարը բիւրեղեայ գմբեթ մը չէ, ինչպէս հիներն կը կարծէին, նա իւր վրայ չկրեր այս անթիւ աստղերն, այլ այս կապոյտը միայն մեր աշխարհին մթնոլորտն է, որով Ամենիմաստ Արարիչը զաշխարհ շրջապատած է, եւ այս կապուտակ շղարշեայ քօղն այնքան նուրբ է որ ցոյց կուտայ նաեւ մեզ ամենայն ինչ որ կը գտնուի անդր քան զմթնոլորտն անբաւ միջոցին մէջ։ Լոյսը իր ճարտար վրձինով այսօրինակ գեղազարդ կապուտով մը կը ներկէ մեր մթնոլորտը, այն հսկայական բոլորշի ձեւն զոր կը տեսնեմք յերկինս, միայն մեր մթնոլորտին ձեւն է։ Սա լայնածաւալ վարագոյր մ'է, բայց ոչ այնքան թանձր որ ծածկէ տիեզերաց փառքը մեր աչերէն։ Եւ ի՞նչ կայ վարագուրին ետեւի կողմն։ Գիտութիւնը կը պատմէ մեզ թէ անդ մթնոլորտէն վեր, տարածեալ է դատարկ, անեզր եւ անհուն միջոց մը, յորում անընդհատ կը թաւալին անհամար ահեղ գունդեր։ Եւ այս տեսութեամբ քանի՜ վսեմ է այս միջոցը, որ գոգցես վարագուրին ետեւէն կը բացուի յաչս մեր։

**Prof. Յ. Հ. Ճէնիզեան (Շարժմունք երկնային մարմնոց)**

## 17. ԱՐԱ ԳԵՂԵՑԻԿ ԵՒ ՆՈՒԱՐԴ

### Ա.

Արեւն էր ծագել, արե՜ւ հայկական,
Կարմրուկ ցոլքերով նորահաս գարնան,
Մասիսու զարկեր ճակտին ըսպիտակ
Ու շուրջ կը պատէր վարդաձոյլ պըսակ.

Թըռչնոց արթընցան երգեր քաղցրոլոր,
Ու լըցին լըռիկ դաշտերն ու ծործոր,
Ծաղկունք վերուցին աչեր ցօղալից,
Ու ծաւալեցին բոյրեր խնկալից։

Արամենակայ սօսեաց ծայրերէն՝
Անուշակ քամին անցաւ հեզօրէն,
Երասխայ ջըրերն իջաւ ալըպըղուն
Ու գըլտորակեց ալիս ծըփծըփուն։ —

Այն Նըւիրատունկ ծառոցն ի սաղարթ
Ըզբիբս իւր յառեր պարման մի գըւարթ,
Մըտիկ դընէր զի՞նչ սըլուըլան սօսիք՝
Եւ զի՛նչ պատասխան տան գետոյն ալիք։

Գլուխն ականակուռ դըրած սաղաւարտ,
Եւ լանջ կը փայլէր ի զրահ բազմամարտ.
Հըզօր յաջն ունէր տէգ մի զինչ գերան,
Ու մէջքն էր կապել ըզթուր ընդ մահուան։

Հանց աղեղ լարած թուխ լայն լայն յօնքեր,
Ճակատուն հովտին կարծես·ցանկ պատեր.
Ու գռուզ հօպոպիք ոլրելով սեւ սեւ՝
Կը ծըփան մարմար վըզին ծաղկաձեւ։

Իսկ երբ բոցափայլ աչվին եռանդնոտ
Վեր յառած հայէր յարփին անաղօտ,
Կարծես դէմ ընդդէմ յերկիր եւ յերկին
Զոյգ մի արեւներ յիրար ալըշնուին։ —

Այն Քաջին ուսոց կըռթընած քընքուշ՝
Կին մի տեսնըւէր քան շուշանն անուշ,
Ինչպէս ճիւնաթույր հեզիկ աղաւնի,
Թեւերն ամփոփած բոյնին քով թառի։

Արշալոյսն երբ գայ այգուց ցօղազարդ՝
Ոչ այնպէս փափկիկ ճակատն ունի վարդ,
Ինչպէս նէրա սուրբ այտերուն վերան՝
Բոսոր ու ճերմակ վարդեր կը ցոլան։

Կապոյտ աչուըներն՝ են ջինջ աւելի՛

Քան թէ այն գարնան մաքուր դէմք երկնի,
Ո՛չ չըկայ քըրքում մի այնպէս սիրուն՝
Որ նորա յաղթէ ոսկի մազերուն։

Չէ, նա մահացու կարծես թէ չէ՛ր կին,
Այլ երկնաբընակ հրեշտակն էր քաջին,
Որ կընոջ առել գողտրիկ կերպարանք,
Լոյս տալ աչքերուն, սըրտին՝ ըսփոփանք։

— Անուշակ քամին իջաւ մէյմըն այլ
Եւ ծածանեցան ծամերն ոսկեփայլ,
Ու երկու կաթիլ այն ծաւի աչքէն
Ընկան ինչպէս շիթք ցօղոյ երկնքէն։

Լըռեցին թըռչունք, եւ սօսեաց քընքշանք,
Լըռեցին կարկաջք, սոյլ եւ արձագանգք.
Կարծես թէ բնութիւն լըսել փափաքէր՝
Այն վեհ տարփածուաց ա՛հ վերջին խօսքեր։

Բ.

Քաջն Արա ասէր.
«Նուվա՛րդ, ո՛հ տեսե՞ր
Ի՞նչպէս ըզգլուխ շարժեն սօսիներ.
Հայոց դիւցազանց են այն ըստուերներ՝
Որ ջուրըք Երասխայ կուտան ինձ հրաւէր։

«Նուվա՛րդ, ես կ՚երթամ, բայց քեզի՛ համար.
Հրեշտա՛կ իմ անուշ, մի՛ դու ո՛հ, մի՛ լար...
Քո սէրդ է անբիծ առաջնորդող գիս,
Ու սէ՛րդ այլ ես հետ կը տանիմ սըրտիս։

«Նուվա՛րդ, թէ չ՚երթամ մահուան դիմագրաւ,
Թէ ես չըվազեմ թուր ձեռքս ինքնարշաւ,
Չէ՛, Արայդ չըլլար քեզի արժանի,
Ո՛չ վըսեմ սըրտիդ՝ ո՛չ այս արցունքի...։

«Նուվա՛րդ, ո՛հ, մի՛ լար, թէ կ'ուզէ երկին
Որ Արա մեռնի այս պատերազմին,
Արայի արիւն սէրըդ չի՛մարեր,
Այլ կարմրուկ կընիք դընէ ի սէր մեր։

«Թո՛ղ, հրեշտակս երթամ... պարտքըս լընում արդ,
Քեզ չեմ լըքաներ, քովդ եմ ես, Նուվա՛րդ.
Երկընքէն կ'իջնեմ սիրտըդ յոգւոյս թեւ,
Ինչպէս ցօղն անուշ ի վարդին տերեւ։

«Ու թէ որ չ'ըլլաս յաշխարհ բարեբաստ՝
Ըղձաս բընակցիմք յերկնից առագաստ,
Թեւ թեւի կուտամք ու սրանամք ի վեր՝
Զինչ երկու ծաղկանց այգասփիւռ հոտեր...»

— Անուշակ քամին իջաւ մէյմըն այլ՝
Ծըփեցան հարսին հոպոպք ոսկեփայլ,
Կապոյտ աչքերէն արցունք շիտ առ շիտ
Ի ծոց փեսային թափթըփին մարգրիտ։

Լուռ կային թըռչունք սօսեաց յոստ կանաչ,
Լուռ կացեր Երասխ, արգիլեր կարկաչ.
Միայն Արայի կըլըռվին գըգուանք,
Ու քընքուշ հարսին տըխուր հեծկըլտանք։

Դ.

Եւ Նուվարդ ասէր.
«Ո՛վ Արա, Արայ,
Թող յետին անգամ ամուսինըդ լայ.
Թըշուառ ամուսին՝ յորոյ քեզ ծոցէն
Երկին եւ երկիր նախանձով խըլեն...

«Եւ ի՞նչպէս հըլամ՝ որ իմ արշալոյս
Դարձաւ արդ գիշեր ու կը մարի՛ յոյս...
Արա՛, դու կ'երթաս, չ'ուզես որ վերջին

Վերջի՛ն արցունքս այլ տանիս ի յերկին։

«Ո՜հ, դու ինձ համար, փեսա՛յդ դիւցազուն,
Կը զոհես թագեր ու կենաց գարուն...
Ես ի՞նչ տամ քեզի փոխարէն, Արա՛յ,
Որ ա՛յսքան սիրոյդ արժանի ըլլայ...» —

«— Սէ՛ր միայն, գոչեց Արայն գեղեցիկ,
Սէ՛ր միայն, Նուվա՛րդ, ինձ տո՛ւր յիշելիք.
Ես գո՛հ, ո՛վ հրեշտակս, գոհ ես կը մեռնիմ
Թէ գիտնամ մընալդ ինձ հաւատարիմ։

«Թէ գիտնամ՝ որ իմ գերեզման, Նուվա՛րդ,
Պիտի չըմընայ անոք եւ անվարդ.
Ջոր հողն իմ թըրջի սիրոյդ արցունքով,
Սառ քա՛րն իմ ջեռնու սիրո՛յդ համբուրով...»—

Անուշակ քամին իջաւ մէյմըն այլ՝
Ծըփեցան հարսին դանգուրք ոսկեփայլ.
Ծաւի աչքերէն արցունք կաթկաթին,
Ինչպէս այգուն ցօղ ի թերթեր վարդին։

Լուռ կային թըռչունք, եւ Երասխ լըռեց.
Միայն թէ սոխակն անտառին սօսեաց՝
Երբեմն արձագանգ կուտայր ըլխրագին
Վերջին հեծութեանց հարսն ու փեսային։

Դ.

Արեւն երկնից անդ բարձրացել ի կամար,
Կըրակ ու բոց յերկրին երես կը տեղար,
Ամենայն ինչ վառել էր յիւր ջերմութիւն,
Ու առտըւանն էր մարել զով լըռութիւն։

Ց'Այրարատայ կանաչագեղ դաշտորայս
Երկաթագէն ծածանին զօրք ընդ ըսպայս,

*Ինչպէս հասուն ցորենի արտ ոսկեջով՝*
*Յանկարծ ծածկի սեւ մարախին գունդերով։*

*Քամին իջեր Մասեաց մըռայլ սարերէն,*
*Կը մըռընչէր սաւառնացեալ դրօշներէն,*
*Յորս էր նախշուն Շամիրամայ Աղաւնին (*)*
*Եւ Ասորի ձայնք աղխազուր հընչէին։*

*Ձայն դիւաշունչ բարբառ առջի անգամ էր*
*Որ Երասխայ լըռիկ հովիտ կը լըսէր.*
*Ու այն նախկին էր որ լերինք հայկականք*
*Ասորեստան զինուց տային արձագանգ։*

*Այն սեւագունդ զօրքերու գլուխն էր անցած*
*Կին մ'արուատիպ թագով իւր հերք սըսակած,*
*Բանակն ողջոյն դողայր ի մռունչ իւր ահեղ,*
*Աչուըներէն ցոլայր վըրէժ բոցահեղ։*

*Ինչպէս մի գետ որ լեռներէն սուրալով՝*
*Կատաղութեամբ կ'իջնէ դաշտեր աւերելով,*
*Այսպէս եւ սիրտ նէրա լըցուած սեւ սիրով՝*
*Գայր Նինուէն Արայի վրայ մըրմըրելով։*

*Գոչէր. «Թէ այն անգութ Արա գեղեցիկ*
*Չ'ուզեց լըսել իմ սիրալիր ձայն հեզիկ,*
*Թող արդ լըսէ զինուց իմ ձայն մահաբեր,*
*'Ի երկիւղ շարժէ զսիրտ իւր՝ թէ ոչ շարժէ սէր։*

*«Քաջե՛ր, ահա երկիրն Հայոց բազմաճոխ,*
*Ձեզի աւա՛ր առէ՛ք, թափէ՛ք հին ձեր զոխ.*
*Ինձ պահեցէք միայն Արայն գեղեցիկ,*
*Արայի սի՛րտ լոկ զիս կ'ընէ երջանիկ»։ —*

---

(*) Յոյն պատմագիրք կ'աւանդեն թէ Շամիրամ իւր դրօշակաց վրայ ի նշան իւր անուան Աղաւնի մը նկարել տուաւ, զոր ինքնակալք Ասորեստանեայց պահեցին։

Երբ Շամիրամ՝ Արա անուն կը հընչէր՝
Սիրոյ կըրակ մը լըպիրշ այտքըն վառէր,
Սիրտը թունդ թունդ կ'ելլէր կ'իջնէր ծուփ ի ծուփ
Ինչպէս ծովուն ջուր հողմավար շուփ ի շուփ։

Ահա հասեալ նորա յերկիր, նորա մօտ,
Ու աւելի այլ բորբոքէր ի կարօտ,
Չէր գիտեր ե՞րբ այն ցանկալին ժամ հասնէր՝
Որ սի՛րտն ի սիրտ իւր սիրելոյն բաբախէր...

— Չէ՛, Շամիրամ. խաբէ՛ քեզ յոյս քո եւ զէն,
Քո պիղծ շըրթունք՝ նորա շըրթանց համար չե՛ն.
Սէ՛ր նորա սուրբ՝ արծաթափայլ ջինջ առուակ,
Ի՞նչպէս սըրտիդ լըցվի ի խորշ սեւյատակ։

Գիտի տեսնե՛ս ըզնորա դէմք գեղեցիկ,
Բայց դալկահա՛ր՝ ինչպէս շիրմացըն ծաղիկ.
Գիտի տեսնե՛ս եւ զայն աչեր սեւ ու սեւ,
Բայց երբ մահուա՛նն յայն տարածի հոլաթեւ

Գիտի եւ սիրտն այն շօշափե՛ս, սի՛րտ զըւարթ,
Բայց ինչպէս յա՛նկարծ ի սառոյց պատեալ վարդ.
Տի չըտրոփէ նա քո սըրտին դուժ սիրով,
Ու սէր նորա պիտի չըտա՛յ սըրտիդ զով։

Այն մաքրակէզ սիրտ եւ շըրթունք եւ աչեր՝
Ուրիշ կընոջ հարըստութիւն եւ զա՛րդն էր.
Նէրա գըրկէն զայն խըլեցեր, անգո՛ւթ կին,
Ա՛ռ եւ խընդա՛... ի՞նչ է առածդ. ցո՛ւրտ մարմին։

**Ե.**

Իրիկունն էր եկել, արեւ ի մար մըտած,
Վերջին մըն ալ կը բարեւէր ըզգլուխ Մասեաց,
Որ տըխրագին կը տարածէր իւր ըստուերներ
Զերթ դագաղին ծածկոյթ ձորերն ու հովիտներ։

*Արարատայ դաշտ խընկաբոյր՝ որ յառաւօտ՝ **
*Կարմրուկ 'ւ ոսկի ծաղկօք խայտայր կանաչ յարօտ,*
*Արդ ողողած արեան գետովք էր ահաւոր,*
*Ու ծածկըված գլխուք դիօք կոտոր կոտոր։*

*Հոն որ թըռչնոց կը լըսվէր նախ հեշտ ճըռուըլնչիւն՝*
*Վիրաւորաց արդ կը հընչէր ի թառաչիւն . . .*
*Ապա եւ այն դադարեցան ճիչք, մըրմունջք, ա՜հ,*
*Ու ծայրէ ծայր թագաւորեց լըռութեամբ մա՜հ։*

*Այլ որպէս կուինչ տըխուր բուին սեւագուշակ*
*Որ ընդհատէ գիշերն ի մռունչ իւր սառնորակ,*
*Երբէք երբէք հառաչանաց լըսվէր մի ձայն,—*
*Շամիրամայ սէգ թագուհւոյն ողբումն էր այն։*

*Ցոսկի գահոյս դըրած մարմինն էր Արայի՝*
*Ու ծիրանեաւ շուրջ պարփակեալ քա՜ջն արքայի.*
*Խունկ եւ հալուէք բուրեն ծխեն հոն բարդ ի բարդ,*
*Աստուածաբար պատուել զայն վեհ երիտասարդ։*

*Ահա դիմացն իւր գեղեցի՛կն այն դիւցազուն՝*
*Որոյ սիրովն էլ չըգիտէր հանգիստ եւ քուն.*
*Եւ թէպէտ արդ՝ իբր ըզկոտրած անկեալ շուշան,*
*Բայց եւ կոտրածն իսկ այն շուշան՝ էր աննըմա՜ն։*

*Գըլխուն սըսակ նետեր գետին հէգ Շամիրամ,*
*Մազ կը փետէր, կ'անիծէր զօրն այն եւ ըզժամ*
*Ցոր վառեցաւ ի սէր անրիծն իւր Արայի,*
*Սէր՝ որ թըշուառ ըզնէ ըրաւ, որբ եւ այրի . . .։*

*—Բայց Արայի հոգին գըւարթ յամպ լուսահրատ՝*
*Երբ իւր մարմնոյն քով լըսեց ողբն այն յուսահատ,*
*Եւ ըզվաւաչ տեսաւ դըշխոյն՝ քըստմնեցաւ . . .*
*Բացաւ թեւերն ու վեր յերկինըս սըլացաւ։*

**Խորէն Արքեպիսկ. Նար-Պէյ (Ստուերք Հայկ.)**

## 18. ՃԱՇԱԿ ԱՌԱՋԻՆ. ՔԱՆԻ ՄԸ ՔԱՂՑՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Վանէն կ'սկսիմ վերստին։ Վան՝ որոյ ներքեւն ու վրան իրաւամբ ուշադրութիւն գրաւած է հնագիտաց եւ հայագիտաց, եւ որ իւր հողակոյտներու տակ եւ քարերու վրայ, բլուրներու եւ գիւղերու մէջը, պահած ունի անթիւ նիւթեր հետաքրքրական. գաւառի մը կամ գեղի մը անունը միայն, չէն մը կամ աւեր մը իւր կոչմամբ կը գերէ եւ կը գրաւէ քննողի մը ուշ. թող իւր ծովային, ծովափնեայ, ջրաշատ, վայելչագեղ դիրքեր, որ Արայի օրէն մինչեւ մեր օրերը հրապուրիչ եղած են եւ կը մնան ազգաց աչքին։

Վանայ ամենամեծ դժբախտութեանց մին, այն ահեղ սովը, բաղդ ընծայեց ինձ ասկէ իբր երեք տարի յառաջ Վանը երթալու։ Ս. Պատրիարքի հրամանը կը մղէր զիս եւ Ս. Հայրիկի կոչումն կը քաշէր զիս. իսկ իմ հոգեկան զգացմունքս հողմոց թեւերու վրայ կը թռուցանէր տանիլ Վանը, տեսնել Վանը, հասնիլ վտանգին եւ ճկոյթի մը ուժոյ չափով գոնէ օգնել այնքան մեծամեծ ու դիւցազնական զօրութեանց ու զոհողութեանց, որ կանխեր էին մարդասիրաբար փրկելու Վանայ բնիկները անողոքելի թշնամիէն, այսինքն սովու կոտորածէն ու կորստենէն։

Ելայ Ակնէն, հետս տանելով այդ փոքր հօտին, այլ մեծ հոգի կրող, Ազգայնոց սրտի ցաւերն ու սրտագին նուէրներն ի նպաստ իրենց նմանեաց, իրենց մօր զաւակաց։ Անցայ Կամախէն, Երզնկայէն, անցայ Դերջանէն, Կարինէն, մտայ Մշոյ Սուրբ Կարապետը, եւ Տարօնոյ դաշտէն՝ գիշերուան լուսնակով իջայ Դատվանը, որ նստած է Վանայ ծովու բերանը։

— Ո՛վ ծով մա՛յրենի, ծո՛վ՝ վճիտ հայելի, որ օգոստոսի պայծառ եւ անարատ երկնքին պատկերը

ի քեզ կը ցուցնես կը ցոլացնես վսեմ եւ հիանալի։

Ես շուարեցայ, շշկռուեցայ ու չեմ կրնար որոշել թէ ո՞րն է երկինքը եւ ո՞ր ծով։ Երկուքն ալ կապուտագեղ, երկոցունց մէջն եւս կը շողշողին աստուածատիպն անուշակ Լուսնակն եւ աստուածազարմ օրիորդք, կուսանք, աստեղք բիւրեղազանգ...։

Ծո՛վ, դարերով եւ յաւերժական յիշատակներով ի լին։

— Ծո՛վ, բերկրեալ մօր խնդալից աչաց նմանակ։

— Ծո՛վ, սիրոյ եւ երկիւղի, յուսոյ եւ վշտաց մէջ ծփացող կուսի մը սրտին օրինակ...։

— Ծո՛վ, որ այդքան գեղեցիկ եւ տխուր ես, արծաթավարս գլխովդ, դալկացեալ դէմքովդ... կը լսեմ ես քո հառաչ եւ հեծեծանքդ...։

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

Ծովափնեայ լեռներ ու բլուրներ, հեռատունկ ծառեր եւ անտառն ու մացառն, Թուխայ պրակն եւ անոր գերեզմանատան բարձրականգուն մահարձանք զիրենք շրջապատող նոճիներով, ընկուզենիներով, խնծորիկի խնծորենիք, Սորբայ սուրբ ուռենիք եւ թեղիք, եւ այդ լեռան ծնօտին վրայ կառուցեալ գմբեթաւոր Սորբայ սիրունիկ Սուրբ Կարապետը, ինկեր են ծովուն մէջը կը շողան, կը լողան, երկնից անտխուր եւ անստուեր լուսաւորաց հետ խառնելով իրենց սեւ ստուերն, իրենց թուխ տերեւն։ Եւ, վանքին գլխիվայր կախուած սրբազան շուքն, կորզել կ՚ուզէ բարձանց կամարին ուրախութիւնն եւ փառքը՝ հողին յատակը, որ տեսնան դառնութիւն այդ քաղցեալ բնակչաց, վշտակրին երկրին, եւ, կամ բառնան սովու եւ հարուածոց չարիքը այդ աշխարհէն։ Աշխարհ մը, որ նոյնքան իրաւունք ունի հանգիստ ապ-

րելու Արարչին արարածոց կարգին, որքան երկրագնտին միւս մասերը, եւ որքան Արուսեակն ու Երեւակն ի յերկինս։

— Ծո՛վ, ինչե՞ր կը խօսիս, ինչե՞ր կը ցուցնես, ի՞նչ խնդիրներ կը հանես ի տես։ Լռէ՛։

Միթէ կաւը բրուտին դէմ կը դառնա՞յ։

— Դատվան, պատառ մը հաց տուր քո հիւրին, եւ ժամ մը հանգիստ՝ խոնջեալ ուղեւորին։

Կը զարմանան Դատվանցիք, կը հարցնեն թէ ի՞նչպէս եկանք այս մթան գիշերով. ճամբան արիւն կը հոտի, եւ ամէն կողմը վտանգներով լի է։

— Մէլի՛ք, երբ մարդ մը սէր ունենայ, քիչ մ՚ալ առողջ մարմին, խանդավառ թեւերով կը թռի, կը կոխէ վտանգները, կ՚անցնի երկիւղներէ. անոր աչքերուն մէջը աննիւթ լոյս մը ճրագի տեղ կը լուսաւորէ։

Արդարեւ երկար եւ վտանգաւոր ուղի մը անցած էինք նոյն օրը։ Հոս կերանք սովոր հաց, կորեկի չորը, թաց մածունի հետ։

* * *

Արշալուսէն առաջ ելանք, թողլով Դատվան եւ իւր բերդն ու ծովածոցը մեծ աղմուկի մէջ, զի կալերու ժամանակ էր. եւ այս տարի Աստուած բաւական բարիք պարգեւած էր դատող մշակին։ Հոն լեցուեր էին մրջիւնի կարաւանի պէս Վանայ գաւառաց սովեալները, Աղբակէն, Նորդուզէն, Խօշապէն, Շատախէն, Հայոց ձորէն, Գաւաշէն, Մոգսէն, Հիզանէն, եւայլն, այրք, կանայք, ծերք, մանկտիք, հարսունք, աղջկունք, հայ եւ քիւրտ, եւ այս կարաւանի ողորմելի տեսարանը, գրեթէ մինչեւ ի Վան, զոր եւ գիշեր կը տեսնենք. Նուաղեալ, գունաթափ, հիւանդ... որք կը

